## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ: ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՎՈՂ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆԱԽԱԳԻԾԸ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ

**Навстречу XXV съезду КПСС. Обсуждаем проект ЦК КПСС к XXV съезду партии.**



**Знаменательные даты**



**Критика и библиография**



**Обзор печати**











**ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ «ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1976—1980 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ» ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՎՈՂ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆԱԽԱԳԻԾԸ:**

# ԳԵՐԱԶԱՆՑ ՈՐԱԿԻ ՀԱՄԱՐ


**Հ. Ս. ՍԱՂՈՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ


*ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՎ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների պատմական որոշումները և ղեկավարվելով կուսակցության տնտեսական քաղաքականության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ցուցումներով, հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, ապահովեցին իններորդ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի արտադրության պլանի կատարումը:*

*Հնգամյակում, ամբողջությամբ վերցրած, արտադրության ծավալը մեծացավ ավելի քան 45 տոկոսով: Այդ աճի շուրջ երեք հինգերորդն ապահովվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, որն աճել է 27 տոկոսով:*

*Արտադրանքի բազմաթիվ կարևորագույն տեսակների արտադրությունը հասել է հնգամյակի վերջի համար սահմանված մակարդակին: Հանրապետության ձեռնարկությունների ու արդյունաբերական միավորումների մեծ մասը ժամկետից շուտ ավարտեց հնգամյակի առաջադրանքները:*

*Հանրապետությունում առաջանցիկ տեմպերով զարգացել են այն ճյուղերը, որոնք ապահովում են ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացը: Առավել արագ են զարգացել էլեկտրոնային և ռադիոէլեկտրոնային, թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղենի, գունավոր մետալուրգիայի և այլ ճյուղերը:*

*Իններորդ հնգամյակի տարիներին շահագործման են հանձնվել 42 նոր արդյունաբերական ձեռնարկություններ և 50-ից ավելի տեղամասեր ու արտադրամասեր: Գործարկվել են Հրազդանի ՊՇԷԿ-ը, Աբովյանի կենսաքիմիական պրեպարատների, «Հայհաստոցանորոգ» գործարանները, ավտոնորոգման երեք գործարան, Նուրնուսի քարամշակման կոմբինատ, երկաթբետոնե կոնստրուկցիա-*

տոկոս), 126 կենտրոնախույս պոմպերի (0,26 տոկոս) և այլն: 1975 թ. ինն ամսում որակի պետական տեսչության հանրապետական վարչությունը դադարեցրել է 85 անուն ապրանքատեսակների ընդունումը 27 արդյունաբերական ձեռնարկություններից:

Թողարկվող արտադրանքի տեխնիկական ցածր մակարդակի ու որակի պատճառներից մեկն այն է, որ ձեռնարկությունների, միավորումների, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներն ու կուսկազմակերպությունները պատշաճ ուշադրություն չեն նվիրում արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի արմատավորման հարցերի լուծմանը և դա փոխարինում են տեղական առանձին, անջատ, ժամանակավոր միջոցառումներով, հրամաններով ու որոշումներով:

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացումը բարդ պրոբլեմ է և կախված է տեխնիկական առաջընթացի, արտադրական ու տեխնոլոգիական կարգապահության, բանվորների ու մասնագետների որակավորման բարձրացման, բարոյական ու նյութական խթանման, արտադրության տեխնիկական վերազինման, որակի պլանավորման կատարելագործման, ստանդարտացման արդյունավետ օգտագործման և մի ամբողջ շարք փոխադարձաբար կապված այլ խնդիրների պլանաչափ ու կոմպլեքսային լուծումից:

Արդյունաբերության վերջին տարիների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր արմատավորում են արտադրանքի որակի կառավարման կոմպլեքս սիստեմը, մեծ հաջողությունների են հասնում ոչ միայն արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացման, այլև ողջ արտադրության արդյունավետության, նրա տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացման գործում: Այդ մասին են վկայում Մոսկվայի, Լենինգրադի, Լվովի, Յարոսլավլի, Գորկու, Սարատովի և երկրի այլ քաղաքների շատ ձեռնարկությունների մեծ հաջողությունները, որոնք հետևողականորեն մշակում ու արմատավորում են արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմներ:

Թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացման կարևոր պայման են ձեռնարկությունների վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը, արտադրության հստակ մասնագիտացումը, հիմնական ֆոնդերի, տեղակայված նոր սարքավորումների լիարժեք օգտագործումը և, որ շատ կարևոր է, նոր տեխնիկայի, արտադրապրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման միջոցառումների ժամանակին արմատավորումը:

Գիտատեխնիկական առաջընթացի գործում գլխավոր թերությունն այն է, որ նոր տեխնիկայի պլանները ձեռնարկություններում, միավորումներում և ճյուղերում հաճախ ըստ էության առանձին միջոցառումների չարդարացված մի շարան են, որոնք իրենց ամբողջության մեջ ենթարկված չեն արտադրության արդյունավետության բարձրացման միասնական նպատակին, այդ թվում և, առաջին հերթին, թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացման խնդրին: Եվ եթե հաշվի առնենք նաև, որ նոր տեխնիկայի ներդրման տարեկան պլանները հնգամյակում միջին հաշվով կատարվում էին 81—86 տոկոսի սահմաններում, ապա ակնհայտ է կարևոր ռեզերվի թերօգտագործման փաստը թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի արմատական բարձրացման գործում:

Մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ հետևողական աշխատանք չեն տանում կազմակերպական թերությունները, տեխնոլոգիական, աշխատանքային կարգապահության խախտումները, պարապուրդներն իսպառ վերացնելու նպատակով, որոնք նույնպես ցածրորակ արտադրանքի թողարկման պատճառներ են: Դեռևս մեծ են աշխատաժամանակի կորուստները շուրջօրյա և ներհերթափոխային պարապուրդների պատճառով:

Թողարկվող արտադրանքի որակի վրա խիստ բացասաբար է ազդում բանվորական ուժի հոսունությունը: Միայն 1975 թ. առաջին կիսամյակում բանվորական կադրերի հոսունությունը հանրապետությունում կազմել է 29 տոկոս, մինչդեռ Սովետական Միությունում այն, միջին հաշվով, 20 տոկոս է:



Շատ ձեռնարկություններ ու միավորումներ անհրաժեշտ պայքար չեն մղում բանվորական ուժի հոսունության դեմ, անհրաժեշտ միջոցներ չեն կիրառում նրանց ձեռնարկություններին ամրացնելու, աշխատանքի, բնակարանային-կենցաղային հարմարավետ պայմաններ ստեղծելու, ձեռքի դժվարին աշխատանքը վերացնելու համար:

Արտադրանքի որակը մեծապես կախված է որակյալ հումքի, նյութերի, կիսաֆաբրիկատների և կոմպլեկտավորող շինվածքների մատակարարումից և կիրառումից: Մինչդեռ, քիչ չեն դեպքերը, երբ ինչպես հանրապետության ներսում, այնպես էլ նրա սահմաններից դուրս, մատակարարվում և օգտագործվում են անորակ հումք, նյութեր, կիսաֆաբրիկատներ և կոմպլեկտավորող շինվածքներ: Հաճախ դրանց օգտագործման պատճառը մուտքագրման անբավարար վերահսկողությունն է, անհրաժեշտ վերահսկիչ լաբորատորիայի և չափիչ միջոցների բացակայությունը:

Թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի արմատական բարձրացման հարցում ոչ պակաս կարևոր նշանակություն է ունենում բարոյական և նյութական խթանման սոցիալ-տնտեսական լծակների ճիշտ ու ժամանակին օգտագործումը: Արդյունաբերական շատ ձեռնարկություններում մշակված ու արմատավորված չեն հատուկ կանոններ՝ բարձրորակ արտադրանք թողարկելու համար աշխատողներին պարգևատրելու վերաբերյալ, ձեռնարկությունները հազվադեպ են խրախուսվում պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը բարձրացնելու համար, մինիստրությունների ու գերատեսչությունների կենտրոնացված ֆոնդերից այդ նպատակին քիչ միջոցներ են հատկացվում: Վերլուծությունը ցույց է տալիս, որ շատ ձեռնարկությունների ու միավորումների ղեկավարներ, կուսակցական և հասարակական կազմակերպություններ բավարար չեն օգտագործում թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար բարոյական և նյութական խրախուսման լայն հնարավորությունները:

Հանրահայտ է ստանդարտացման մեծ դերը թողարկվող արտադրանքի
տեխնիկական մակարդակի ու որակի արմատական բարձրացման գործում:
Սակայն, ինչպես ցույց են տալիս ստանդարտների ու տեխնիկական պայման-
ների արմատավորման ու պահպանման վերաբերյալ ՍՍՀՄ պետստանդարտի
և ապրանքների որակի պետտեսչության հանրապետական վարչությունների
կատարած ստուգումները, հանրապետության շատ ձեռնարկություններ ու միա-
վորումներ ո՛չ միայն չեն ապահովում դրանց ժամանակին արմատավորումը,
այլև թույլ են տալիս կոպիտ շեղումներ ստանդարտների եղած պահանջներից
ու տեխնիկական պայմաններից: ՀՍՍՀ տեղական արդյունաբերության, սննդի
արդյունաբերության, անտառային ու փայտամշակման արդյունաբերության
մինիստրությունների օբյեկտներում և մի շարք այլ ձեռնարկություններում
չկա ստանդարտացման ծառայություն և կամ դրանք կոմպլեկտավորված չեն
որակյալ կադրերով:

ԹՈՂԱՐԿՎՈՂ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ գործում կարևոր օղակ
են տեխնիկական վերահսկողության ծառայությունները ձեռնարկություննե-
րում և միավորումներում: Տեխնիկական փաստաթղթերի պահանջներից շե-
ղումներով, տեխնոլոգիայի կոպիտ խախտումներով արտադրանքի թողարկման
բազմաթիվ փաստերը վկայում են, որ տեխնիկական վերահսկողության բաժնի
ծառայությունները միշտ չէ, որ կատարում են իրենց վրա դրված ֆունկցիա-
ները: Շատ ձեռնարկություններում ՏՎԲ-ների աշխատողները հիմնականում
վերածվել են հասարակ խոտանողների, արտադրական պրոցեսում չեն կան-
խում խոտանը, իսկ դա հաճախ մեծ կորուստներ է պատճառում: Ավելին, հա-
ճախ նրանք ավելի շատ «նպաստում են» պլանների կատարմանը, քան արտա-
դրանքի որակի բարձրացմանը: Նկատվում է նաև հակառակ պատկերը, երբ
ՏՎԲ-ների ծառայության և ձեռնարկության միջև ստեղծվում են ոչ գործարար,
աննորմալ փոխհարաբերություններ այն պատճառով, որ առաջինները ներկա-
յացնում են արդարացի պահանջներ, իսկ երկրորդները, «պլանի կատարման
շահերից ելնելով», չեն ցանկանում կատարել դրանք:

Հաճախ ՏՎԲ-ների ծառայությունները կոմպլեկտավորվում են ոչ որակյալ մասնագետներով, շատ ձեռնարկություններում չկա պատշաճ հոգատարություն նրանց նկատմամբ, և դա առանձնապես նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու, խթանելու հարցերում:

ՏՎԲ-ների աշխատողները ձեռնարկություններում պետք է ստուգեն ոչ այնքան դետալների, շինվածքների որակը (հատկապես մասսայական և սերիական արտադրության մեջ), որքան սարքերի, գործիքների ու սարքավորումների որակը, աշխատանքի պայմանները, տեխնիկական փաստաթղթերի ճշտությունը, տեխնիկական կարգապահության պահպանումը, արտադրանքի, ամբողջ արտադրության տեխնիկական մակարդակը:

Թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացման հարցերում կարևոր դեր է կատարում անհրաժեշտ լաբորատոր բազայի ստեղծումը ձեռնարկություններում՝ պատրաստի արտադրանքի որակական ցուցանիշների, հումքի, նյութերի և կոմպլեկտավորող շինվածքների փորձարկումներ և ստուգումներ անցկացնելու համար: Կարևոր է ինֆորմացիայի ծառայությունների ստեղծումը՝ թողարկվող արտադրանքի շահագործական հատկությունների ուսումնասիրման ու վերլուծման, սպառողների հետ սերտ կապ պահպանելու համար և համանման արտադրատեսակների որակի, ժամանակակից տեխնոլոգիայի, վերահսկողության մեթոդների, նյութերի կիրառման մակարդակի և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման հետ անմիջականորեն կապված հարցերի մասին ժամանակին անհրաժեշտ ինֆորմացիա նախապատրաստելու համար: Եվ եթե այդպիսի ծառայություններ կան միութենական ենթակայության գրեթե բոլոր ձեռնարկություններում ու կազմակերպություններում, ապա այդ բանը չի կարելի ասել միութենական-հանրապետական և առավել ևս հանրապետական ենթակայության բոլոր ձեռնարկությունների վերաբերյալ:

Հայտնի է, որ թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացումը անբաժանելի է գիտատեխնիկական առաջընթացից, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումից: Դրա համար մենք ունենք բոլոր հնարավորությունները: Հանրապետությունում գործում են բազմաթիվ գիտահետազոտական ինստիտուտներ, կոնստրուկտորական բյուրոներ և այլ կազմակերպություններ, որոնք կարող էին անհրաժեշտ գործնական օգնություն ցույց տալ արդյունաբերական ձեռնարկություններին՝ թողարկվող արտադրանքի որակի արմատական բարձրացման, արտադրության կառավարման կազմակերպման առաջավոր մեթոդների մշակման ու արմատավորման և արտադրության արդյունավետության բարձրացման հարցերում:

Սակայն, ինչպես ցույց է տալիս վերլուծությունը, գիտահետազոտական ինստիտուտների և կոնստրուկտորական բյուրոների կատարած հետազոտությունների ու աշխատանքները հաճախ բավականաչափ արդյունավետ չեն և էական ազդեցություն չեն ունենում արտադրության և թողարկվող արտադրանքի որակական ցուցանիշների վրա: Գիտահետազոտական ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների, բուհերի ղեկավարները պետք է մեծ ենթադրում մտցնեն այդ կարևոր ու հրատապ հարցում և անհրաժեշտ գիտա-պրակտիկ օգնություն ցույց տան հանրապետության ձեռնարկություններին և միավորումներին՝ թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացման, այդ թվում և արտադրության կառավարման կոմպլեքսային սիստեմների կազմակերպական-տեխնիկական բոլոր հարցերում:

ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՈՒ ՈՐԱԿԻ բարձրացումը անխզելիորեն կապված է մասնագետ կադրերի պատրաստման ու վերապատրաստման, նրանց որակավորման ու գիտելիքների ընդհանուր մակարդակի բարձրացման հետ: Թեև վերջին տարիներին այդ ասպարեզում զգալի հաջողություններ են ձեռք բերվել, դեռևս լրիվ չափով չեն բավարարվում որակյալ կադրերի և, մասնավորապես, որակի, հուսալիության վերահսկողության կառավարման ծառայությունների մասնագետների, ստանդարտագետների, չափագետների և այլ մասնագետների արագ աճող պահանջները, մանավանդ՝ եթե նկատի ունենանք ժամանակակից բարձր պահանջները արտադրության տեխնիկական մակարդակի և թողարկվող արտադրանքի որակի արմատական բարելավման նկատմամբ:

Մինիստրությունները, գերատեսչությունները, միավորումներն ու ձեռնարկությունները դեռևս պատշաճ ուշադրություն չեն դարձնում բանվորական կադրերի, ինժեներա-տեխնիկական աշխատողների և, առաջին հերթին, վերոհիշյալ ծառայությունների որակավորումը բարձրացնելու հարցին:

«Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ընդգծվում է, որ սոցիալիստական մրցության գլխավոր ուղղությունը պետք է լինի աշխատավորների մոբիլիզացումը ո՛չ միայն աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացման, այլև թողարկվող արտադրանքի որակի բարելավման համար: Այստեղ կարևոր դեր պետք է խաղան արհմիութենական կազմակերպությունները: Սակայն նրանք ոչ ամենուրեք և ոչ միշտ անհրաժեշտ ուշադրություն են դարձնում նշված խնդիրներին, որակի հարցերը հազվադեպ են քննարկում բանվորական ժողովներում և արհմիութենական կոմիտեներում: Սոցմրցությունը կազմակերպելիս արհմիութենական կազմակերպությունները միշտ չէ, որ քանակական ցուցանիշների հետ միասին հաշվի են առնում և աշխատանքի ու թողարկվող արտադրատեսակների որակի ցուցանիշները: Ոչ բոլոր ձեռնարկություններում է երևում կոմերիտական կազմակերպությունների ակտիվ դերը թողարկվող արտադրանքի որակի արմատական բարձրացման համար մղվող պայքարում, առավել ևս, եթե նկատի ունենանք, որ հանրապետության բանվորների առնվազն 50 տոկոսը երիտասարդներ են:

Հանրապետության արդյունաբերության բոլոր ճյուղերում թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի ըստ ամենայնի բարձրացման մեծ ու պատասխանատու խնդիրը կատարելու համար անհրաժեշտ է, ամենից առաջ, հանգամանորեն ու հիմնավորապես վերլուծել այն պատճառները, որոնք խոչընդոտում են այդ պրոբլեմի լուծմանը հանրապետության յուրաքանչյուր ձեռնարկությունում, միավորումում, կազմակերպություններում, գերատեսչություններում, մինիստրություններում, մշակել և իրականացնել արդյունավետ, արմատական կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ և, առաջին հերթին, արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի արմատավորում՝ ձեռնարկությունների ստանդարտների բազայի վրա, ինչպես այդ նախատեսված է «Արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի մշակման ու արմատավորման ուղղությամբ Լվովի մարզի արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների և կոլեկտիվների աշխատանքի փորձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:

Վերջերս ՀԿԿ Կենտկոմը քննության առավ արտադրանքի որակի բարձրացման հարցը՝ Լվովի մարզի արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների կուսկազմակերպությունների ու կոլեկտիվների առաջավոր փորձը մեր հանրապետությունում արմատավորելու առնչությամբ: Կենտկոմը ընդգծեց, որ մի շարք կուսակցական կազմակերպություններ և ձեռնարկությունների կոլեկտիվներ իրենց ստեղծագործական նախաձեռնությամբ ու որոնումներով որոշակի գործ են կատարել արտադրանքի որակը բարձրացնելու և տեսականին ավելացնելու ուղղությամբ: Սակայն, ինչպես նշված է ընդունված որոշման մեջ, արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի արմատավորումը պահանջում է հանրապետության բոլոր կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, մինիստրությունների, գերատեսչությունների, գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների, ձեռնարկությունների ու միավորումների կոլեկտիվների լայն ներգրավում:

Խոսելով ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակը բարձրացնելու անհրաժեշտության մասին, Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը նշել է. «Աշխատանքի որակը շատ տարողունակ հասկացություն է, այն կազմվում է արտադրա-տնտեսական շատ գործոններից և դրա հետ մեկտեղ ընդգրկում

է բարոյական պրոբլեմների լայն շրջան: Դա նաև արտադրության հստակ կազմակերպումն է, աշխատանքային պրոցեսի կանոնավոր ռիթմը, տեխնոլոգիայի անշեղ պահպանումը: Դա նյութերի խնայողական ծախսում է, տեխնիկայի խնայողական հոգատար օգտագործումը: Եվ, իհարկե, դա ընդգրկում է նաև գիտակցական կարգապահություն, փոխադարձ պահանջկոտության իրադրություն և ընկերական օգնություն աշխատանքում:

Որակի համար մղվող պայքարի հետ անհամատեղելի են անտնտեսվարությունը, թափթփվածությունը, անփույթ վերաբերմունքը դեպի գործը»:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարին ներկայացվող՝ «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում խնդիր է դրվում արմատապես բարելավել արտադրանքի որակը, ընդլայնել տեսականին, ստեղծել այնպիսի մեքենաներ, սարքեր և սարքավորումներ, որոնք իրենց տեխնիկա-տնտեսական հատկանիշներով գերազանցեն հայրենական և համաշխարհային նվաճումներն այդ բնագավառում:

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1975 թ.) պլենումն ընդգծեց, որ արտադրանքի որակի բարձրացումը մեր էկոնոմիկայի արմատական խնդիրներից է: Տասներորդ հնգամյակը արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման հնգամյակ է: Այդ խնդրի լուծման վրա պետք է կենտրոնացնեն իրենց ուշադրությունը կուսակցական կազմակերպություններն ու գերատեսչությունների ղեկավարները:

Ինչպես ողջ սովետական ժողովուրդը, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորները լայնորեն ծավալել են սոցիալիստական մրցությունը արտադրական լավագույն ցուցանիշներով, քաղաքական բարձր ակտիվությամբ դիմավորելու հարազատ կուսակցության XXV համագումարը: Մեր խնդիրն է՝ գործի դնել բոլոր լծակները արտադրանքի որակն արմատապես բարելավելու, տասներորդ հնգամյակը, իրոք, որակի բարձրացման հնգամյակ դարձնելու համար:

# ԲԱՐԴ ԵՎ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ ԽՆԴԻՐՆԵՐ

**ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ**,
Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահի տեղակալ

ԱՎԱՐՏՎԵՑ 1975 ԹՎԱԿԱՆԸ՝ իններորդ հնգամյակի վերջին տարին: Սովետական ժողովուրդը հանրագումարի է բերում ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կենսագործման արդյունքները, համագումար, որը որպես գլխավոր խնդիր առաջադրեց ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքի ապահովումը՝ արտադրության զարգացման բարձր տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա:

«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ իններորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական հիմնական ցուցանիշները հաջողությամբ կատարվել են: Երկրի էկոնոմիկան, զարգանալով բարձր և կայուն տեմպերով, ապահովեց արտադրության մասշտաբների աճն ու տեխնիկական մակարդակի բարձրացումը, ժողովրդական տնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդումը:

Մեր զարգացման ներկա փուլի հիմնական առանձնահատկությունն այն է, որ քանակական գործոնների հետ միասին, աստիճանաբար, ավելի շատ են առաջին պլան մղվում մեր երկրի տնտեսական աճի որակական գործոնները: Հենց այդ առումով էլ իններորդ հնգամյակում հատուկ ուշադրություն է դարձվել գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության տեխնիկական հագեցվածության բարձրացման, գիտական հիմնարկների փորձնական-լաբորատորային բազայի ամրապնդման հարցերին:

1971—1975 թվականներին մեր հանրապետությունում կազմակերպվել է 17 նոր գիտահետազոտական հիմնարկ և հաշվողական կենտրոն: Դրանց թվում՝ գիտությունների ակադեմիայի մաթեմատիկայի, մեխանիկայի, քիմիական ֆիզիկայի ինստիտուտները, ռադիոֆիզիկական չափումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը, պետպլանի հաշվողական կենտրոնը, կլինիկական և փորձարարական վիրաբուժության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղը և այլն:

Հանրապետության գիտական հիմնարկներում այժմ աշխատում են ավելի քան 16 հազար գիտաշխատողներ, այդ թվում՝ գիտությունների 600 դոկտորներ ու 4.200 թեկնածուներ: Հայաստանի գիտնականները նշանակալի հաջողությունների են հասել ժամանակակից գիտության բազմաթիվ ուղղություններով կատարած իրենց հետազոտություններում, ապահովել են դրանց արմատավորումը ժողովրդական տնտեսության մեջ:

Անդրադառնալով իններորդ հնգամյակում հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման արդյունքներին, չի կարելի չխոսել այն էական թերությունների մասին, որոնք դեռևս կան աշխատանքի կազմակերպման, պետական պլանային կարգապահության խստիվ պահպանման, տնտեսական կարևորագույն խնդիրների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման բնագավառում:

Այդ թերությունները խոր ու հանգամանալի վերլուծության են ենթարկվել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումներում, որտեղ արդարացի ու լուրջ քննադատվեցին Հայկական ՍՍՀ պետպլանը, պետշինը, գիտությունների ակադեմիան, հանրապետության մինիստրությունները, գերատեսչությունները և կազմակերպությունները: Պլենումները նշեցին կուսակցական, պետական, սովետական մարմինների կազմակերպական գործունեության հիմնական խնդիրները՝ եղած թերությունների հաղթահարման և Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման ասպարեզում:

ՍՄԿԿ XXV և Հայաստանի կոմկուսի XXVI համագումարների նախաշեմին հանրապետության աշխատավորները մեծ ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» նախագիծը, որը կուսակցության ու ժողովրդի առջև դրել է տասներորդ հնգամյակում երկրի տնտեսական և կուլտուրական զարգացման նոր, վիթխարի խնդիրներ: Ինչպես նշված է նախագծում, «տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ հետևողականորեն իրականացնել հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու՝ կոմունիստական կուսակցության կուրսը»: Նախատեսվում են աճի բարձր տեմպեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր ցուցանիշներով: Ընդ որում, միութենական հանրապետությունների շարքում արդյունաբերական արտադրության աճի առավել բարձր տեմպեր են նախատեսված նաև Հայկական ՍՍՀ-ի համար՝ 43—47 տոկոս: Եթե նկատի ունենանք, որ հնգամյակից-հնգամյակ աճում է յուրաքանչյուր տոկոսի կշիռը (աճի մեկ տոկոսը 1970 թվականի՝ ութերորդ հնգամյակի վերջին տարվա ծավալների նկատմամբ կազմել է մոտ 26 մլն, իսկ 1975 թվականի ծավալների նկատմամբ՝ 38 մլն ռուբլի), ապա հասկանալի կդառնա, թե արդյունաբերական արտադրության ինչպիսի բարձր աճ պետք է ապահովվի հանրապետությունում տասներորդ հնգամյակում:

ԻՆՉՈ՞Վ Է ԲԱՑԱՏՐՎՈՒՄ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ-ում հանրային արտադրության աճի բարձր տեմպեր ընդունելու անհրաժեշտությունը:

Հայտնի է, որ մեր կուսակցությունը երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման կուրսը մշակելիս ելնում է, նախ և առաջ, ազգային եկամտի հետագա մեծացման և բնակչության բարեկեցության բարձրացման, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, բոլոր միութենական հանրապետությունների էկոնոմիկայի համակողմանի զարգացման խնդիրներից: Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության համար բնորոշ և զարգացման բարձր տեմպերի անհրաժեշտությունը թելադրող գործոնների թվին պետք է դասել արագ աճող աշխատանքային ռեսուրսների և որակյալ կադրերի առկայությունը, գիտության զարգացման բարձր մակարդակը գիտելիքների բազմաթիվ ճյուղերում, հանքային հումքի առկա պաշարները, ստեղծված բազմակողմանի տնտեսությունը՝ նրա ինֆրաստրուկտուրայով:

Երկարաժամկետ հեռանկարի համար հաշվարկական արդյունքի աճի տեմպերը, որ միջճյուղային դինամիկ հաշվեկշռի մեթոդով մի քանի տարբերակով հաշվարկել է Հայկական ՍՍՀ պետպլանին կից էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտը, ցույց են տալիս, որ 1976—1990 թվականների տարեկան միջին տեմպերը պետք է առաջվա նման լինեն բարձր՝ արդյունաբերության և նրա մեքենաշինության, գունավոր մետալուրգիայի, շինանյութերի արդյունաբերության և այլ ճյուղերի առաջանցիկ աճի պայմանով:

Վերը նշված գործոններից, որոնք որոշում են հանրապետության ժողո-



վրդական տնտեսության աճի բարձր տեմպերի անհրաժեշտությունը, առավել կարևորներից ու բնորոշներից է աշխատանքային ռեսուրսների ձևավորումն ու օգտագործումը: 1976—1990 թվականներին աշխատունակ հասակի բնակչության աճի տեմպերը գերազանցելու են նրա ընդհանուր թվաքանակի աճի տեմպերը: Այսպես, 1980 թվականին, 1970-ի համեմատությամբ, հանրապետության բնակչությունն ավելանալու է մոտավորապես 25 տոկոսով, իսկ աշխատունակ բնակչությունը՝ ավելի քան 49 տոկոսով. դա բացատրվում է դեմոգրաֆիական իրավիճակով: Հաջորդ տասնամյակում տեմպերը կհավասարվեն:

Այս ամենն էլ պայմանավորում է հանրապետության ժողովրդական տնտեսության արագ զարգացման անհրաժեշտությունը:

Նկատի ունենալով վերոհիշյալ գործոնները, խորապես վերլուծելով հանրապետությունում ստեղծված տնտեսական իրավիճակը, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1975 թվականի ապրիլի 16-ին ընդունեցին «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը, որտեղ խնդիր է դրված 1976—1980 թվականներին հասնել ժողովրդական տնտեսության զարգացման, արտադրողական ուժերի հետագա աճի ապահովման ավելի բարձր տեմպերի:

Այդ որոշումը մի նոր վառ վկայությունն է այն հսկայական հոգատարության, որ կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը ցուցաբերում են Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման նկատմամբ:

Բարդ ու պատասխանատու են այն խնդիրները, որոնք դրված են հանրապետության ժողովրդական տնտեսության առջև տասներորդ հնգամյակում: Դրանց կատարումը պահանջում է բոլոր կոլեկտիվների ջանքերի մոբիլիզացում, բարձր արտադրողականություն սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերում:

Ընդսմին, հնգամյակի հիմնական խնդիրներից մեկի՝ ժողովրդական տնտեսության մեջ հետագա գիտատեխնիկական առաջընթացի ապահովումը, առաջին հերթին գիտական հիմնարկների, հանրապետության ամբողջ գիտատեխնիկական հասարակայնության խնդիրն է:

Մինչդեռ, ժողովրդական տնտեսության զարգացման վրա գիտության ազդեցության գործում ձեռք բերված նվաճումների կողքին, դեռևս կան լուրջ թերություններ արտադրության հետ գիտության ունեցած կապի և ավարտված գիտահետազոտական մշակումների արմատավորումը կազմակերպելու բնագավառում:

Ինչպես ակադեմիական, այնպես էլ ճյուղային մի շարք գիտական հիմնարկներ կտրված են ժողովրդական տնտեսության խնդիրներից: Շատ ինստիտուտներ, չնայած արդյունաբերության և գյուղատնտեսության համար խիստ հրատապ թեմաների մշակմանը, մեծ դժվարությամբ են դրանք արմատավորում արտադրության մեջ: Դրանց թվում են գյուղատնտեսության որոշ գիտահետազոտական ինստիտուտներ, պոլիտեխնիկական ինստիտուտի, պետհամալսարանի լաբորատորիաները և այլն:

Հայաստանի գիտական կազմակերպությունների աշխատանքներում եղած մյուս, ոչ պակաս էական թերությունը հետազոտվող պրոբլեմների մեջ հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրներից բխող կոմպլեքսային, միջճյուղային մշակումների գրեթե լիակատար բացակայությունն է: Մինչդեռ ժողովրդական տնտեսության առջև ծառացած են ոչ քիչ թվով կարևորագույն խնդիրներ, որոնք պահանջում են տարբեր ոլորտների գիտնականների գիտական խոր հետազոտություններ: Նման խնդիրների թվին հարկավոր է դասել հանրապետության մթնոլորտի ու ջրերի պահպանումը արդյունաբերական աղտոտումներից, Հայաստանի բնական հումքային հարստությունների օգտագործումը, մի շարք արտադրությունների կոմպլեքսային ավտոմատացումը և այլն: Այդ խնդիրները պահանջում են միավորել գիտնականների ու ինժեներ-քիմիկոսների, կենսաբանների, էլեկտրիկների, մեքենաշինարարների, տնտեսագետների և շատ այլ մասնագետների ջանքերը:

Որպես կոմպլեքսային հետազոտությունների նախաձեռնողներ ու կազմակերպիչներ կարող էին հանդես գալ հանրապետության գիտությունների ակադեմիան, որը գիտական հիմնարկների մի բազմապրոֆիլ միավորում է, ինչպես նաև պոլիտեխնիկական ինստիտուտն ու պետհամալսարանը, որոնք նույնպես ունեն տարբեր պրոֆիլի որակյալ գիտնականների բազմանդամ կոլեկտիվներ։

Հարկավոր է ուղղակի ասել, որ հանրապետությունում չկա այնպիսի մի մարմին, որն իրականացնի կիրառական, հատկապես տեխնիկական գիտությունների ոլորտի գիտական աշխատանքների կոորդինացումը, կազմակերպի և ուղղություն տա կոմպլեքսային հետազոտությունների արդյունքների մշակմանն ու արմատավորմանը։ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի բաժանմունքները գործնականորեն այդ հարցերով չեն զբաղվում, և պետք է խոստովանել, որ դեռևս պատշաճ ուշադրություն չի նվիրվում կոմպլեքսային և միջճյուղային հետազոտությունների կազմակերպման կարևորագույն գործին։

Հայաստանի գիտական հիմնարկների աշխատանքում եղած էական թերություններից են ժամանակակից հաշվողական տեխնիկայի դեռևս ոչ միշտ արդյունավետ օգտագործումը գիտական հետազոտությունների նպատակով, տեխնոլոգիական պրոցեսների և ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի կամ ձեռնարկությունների ավտոմատ կառավարման սիստեմներում էլեկտրոնային հաշվողական մեքենաների անբավարար արմատավորումը։

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ գիտնականների և ինժեներա-տեխնիկական հասարակայնության առջև ծառացած կարևորագույն խնդիրներից մեկը տեխնոլոգիական պրոցեսների, առանձին արտադրական տեղամասերի, արտադրամասերի ու ամբողջ արտադրությունների կառավարման ավտոմատ սիստեմների ստեղծումն է։ Մի շարք ձեռնարկություններ ու գիտական հիմնարկներ արդեն կատարում են այդպիսի աշխատանք, բայց ժողովրդական տնտեսության շատ ճյուղեր դեռևս ավտոմատացված սիստեմների արմատավորման խիստ պահանջ ունեն։ Այսպես, հանրապետության քիմիական արդյունաբերության մեջ և գունավոր մետալուրգիայում անհրաժեշտ է ավտոմատացնել մի շարք տեխնոլոգիական պրոցեսներ, բարձրացնելով դրանց արտադրողականությունը և բանվորական ուժը ազատելով առողջության համար համեմատաբար վնասակար մի քանի պրոցեսներից։ Մեքենաշինական որոշ ձեռնարկություններում, հատկապես օժանդակ աշխատանքներում, դեռևս մեծ է ձեռքի աշխատանքի բաժինը, իսկ ավտոմատացումը հնարավորություն կտա խիստ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, մեքենայացնել ձեռքի ծանր աշխատանքները, բանվորական ուժն ուղղել բարձր որակավորում պահանջող տեղամասերը։

Մեծ խնդիրներ են ծառացած նաև շինարարության առանձին պրոցեսների ավտոմատացման, տրանսպորտում, գյուղատնտեսության մեջ և այլ ճյուղերում ավտոմատացված սիստեմների արմատավորման բնագավառում։

Ավտոմատացման նպատակներով կիրառվող մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային-հաշվողական տեխնիկայի զարգացման ներկա փուլում կոմպլեքսային ավտոմատացման սիստեմների ստեղծման ավելի բարձր մակարդակ հարկավոր է համարել ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի և տնտեսական շրջանների կառավարման ավտոմատացված սիստեմները։ Անկասկած, ավելի բարդ այդ խնդիրն իր մեջ միավորում է տվյալ ճյուղում կամ շրջանում արտադրության նախնական ավտոմատացված օղակների, կառավարող օրգանում անհրաժեշտ ինֆորմացիայի հավաքման ու ստացման սիստեմի և ինֆորմացիայի ու առաջադրված պլանային ցուցանիշների հիման վրա օպտիմալ կառավարման սիստեմի առկայության անհրաժեշտությունը։ Միանգամայն ակնհայտ է, որ տարբեր սիստեմների նման միավորումը միասնական կառավարվող սիստեմի մեջ պահանջում է բավական ճկուն և զորեղ մաթեմատիկական ապարատի և համապատասխան հաշվողական տեխնիկայի առկայություն։



Առկա գիտատեխնիկական միջոցներն ու մեթոդները տնտեսական սիստեմների օպտիմալ կառավարումը հնարավոր են դարձնում, նախ, ասենք, մեկ տնտեսական շրջանի, հանրապետության մասշտաբներով, իսկ ապա նաև ամբողջ երկրի մասշտաբներով։

Ժողովրդական տնտեսության ճյուղերի և տնտեսական շրջանների կառավարման ավտոմատացված սիստեմների ստեղծումը առաջնահերթ նշանակություն է ստանում և արդեն որակապես նոր փուլ է, երբ կառավարման օբյեկտ է դառնում հանրային արտադրությունը։ Բնական է, որ նման սիստեմների իրագործման համար անհրաժեշտ է կենտրոնացնել ամենատարբեր ոլորտների գիտնականների՝ տնտեսագետների, մաթեմատիկոսների, էլեկտրոնայինների, սոցիոլոգների և այլոց ջանքերը։

Տասներորդ հնգամյակում Հայկական ՍՍՀ-ում պետք է ստեղծվեն պլանային հաշվարկների ավտոմատացված համակարգերի բազմաթիվ ենթասիստեմներ, նյութատեխնիկական մատակարարման, պետական վիճակագրության կառավարման համակարգեր և այլն։ Առավել պատասխանատու խնդիրներ են առաջադրված կառավարման հանրապետական ավտոմատացված համակարգի ստեղծման բնագավառում, որը, ըստ էության, միավորելու է բոլոր ֆունկցիոնալ և ճյուղային ԿԱՀ-երը։

Ճյուղային և ֆունկցիոնալ ԿԱՀ-երի ստեղծման բնագավառում Հայկական ՍՍՀ-ում արդեն որոշ բան արված է։ Մի շարք ենթասիստեմներ գործում են հանրապետության արդյունաբերության, կապի, տրանսպորտի, պետպլանի, վիճվարչության տարբեր ճյուղերում։ Սակայն է՛լ ավելի մեծ ու պատասխանատու են այն խնդիրները, որոնք տասներորդ հնգամյակում դրվում են գիտնականների ու մասնագետների առջև ԿԱՀ-երի ստեղծման բնագավառում։ Այստեղ պահանջվում է տարբեր գիտական ստորաբաժանումների հստակ փոխգործողություն՝ նախապես մշակված կոորդինացիոն պլաններով, առանձին գիտական կոլեկտիվների գործունեության ճիշտ նպատակամղում առաջադրված խնդիրների լուծմանը՝ ԿԱՀ-երի և հաշվողական տեխնիկայի միջոցների հիման վրա ժողովրդական տնտեսության կառավարումը է՛լ ավելի կատարելագործելու նպատակով։

Մեկ հոդվածի շրջանակներում հնարավոր չէ ընդգրկել տասներորդ հնգամյակում գիտատեխնիկական առաջընթացի և հանրապետության հանրային արտադրության արդյունավետության բարձրացման ամբողջ բարդ կոմպլեքսը, որոնք որոշիչ են ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի առաջադրած խնդիրները կատարելու գործում։ Հայաստանի գիտնականները, տնտեսական ղեկավարները, ինժեներա-տեխնիկական աշխատողները պետք է ցուցաբերեն առավելագույն կազմակերպվածություն, գործադրեն բոլոր ջանքերը «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ առաջադրված վիթխարի խնդիրները կատարելու, հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացումը ավելի բարձր տեմպերով ապահովելու և ժողովրդի բարեկեցությունն է՛լ ավելի բարձրացնելու համար։

# ԿԱՐԵՎՈՐԸ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄՆ Է

**Խ. Լ. ՄԱՆԴԱԼՅԱՆ**
ՀԿԿ Երևանի կազմակերպության Լենինյան շրջկոմի առաջին քարտուղար

Սովետական Միության Կոմկուսի Կենտկոմի դեկտեմբերյան (1975 թ.) պլենումի որոշումները կուսակցական ու տնտեսական մարմինների ուշադրությունը սևեռում են տնտեսավարման մեխանիզմի կատարելագործման, արտադրական կարողությունների ու սարքավորումների ավելի արդյունավետ օգտագործման, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, թողարկվող արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի բարելավման, նյութական ու աշխատանքային ռեսուրսների ավելի ռացիոնալ օգտագործման, էկոնոմիկայի խստագույն ռեժիմի հաստատման, կորուստների և անարտադրողական ծախսերի կրճատման վրա։

Ինչպես սովետական բոլոր մարդիկ, այնպես էլ Լենինյան շրջանի աշխատավորները միահամուռ հավանություն տվեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներին և պլենումում ընկ. Բրեժնևի արտասանած ճառի դրույթներն ու հետևությունները ընկալեցին որպես պրակտիկ գործունեության ուղեցույց կուսակցության այն հանձնարարականի, որ տասներորդ հնգամյակը պետք է դառնա արդյունավետության և որակի հնգամյակ։ Շրջանի աշխատավորների ստեղծագործական ակտիվության նոր վերելք առաջացրեց «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը, որը ներկայացված է համաժողովրդական քննարկման։ Այն նախատեսում է ապահովել երկրի տնտեսական հզորության և գիտատեխնիկական պոտենցիալի հետագա աճ, ամրապնդել նրա պաշտպանունակությունը, բարձրացնել հասարակական արտադրության արդյունավետությունը, բարելավել սովետական մարդկանց բարեկեցությունը։ Բարձր ու կայուն տեմպերով պետք է զարգանա արդյունաբերական արտադրությունը, հատկապես ծանր արդյունաբերությունը, որը երկրի տնտեսական հզորության հիմքն է։ Խնդիր է դրվում գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես միացնել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ։ Իսկ դա նշանակում է բարեփոխել արտադրության տեխնիկական հիմքը, ներդնել առավել արտադրողական մեքենաներ ու տեխնոլոգիական պրոցեսներ։

«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը լայնորեն քննարկվեց նաև մեր շրջանի ձեռնարկություններում, տրանսպորտային և շինարարական կազմակերպություններում։ Քննարկումների ընթացքում աշխատավորներն անում էին գործնական առաջարկություններ, որոնք ուղղված էին ձեռնարկությունների աշխատանքի քանակական և որակական ցուցանիշների բարելավմանը։ Նրանք իրենց անձնական պլանները և սպասելիքները անմիջականորեն կապում են կոլեկտիվի պլանների, ամբողջ հասարակության առաջընթացի հետ։ Միայն Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատում հինգ հազար աշխատողներից չորս հազարը մասնակցել են ձեռնարկության պլանի քննարկմանը։ Կիրովցիները հետաքրքրությամբ և գործի խորիմացությամբ քննարկեցին տասներորդ հնգամյակի իրենց խնդիրները։ Չէ՞ որ նոր հնգամյակում նախատեսվում է վերակառուցել կոմբինատը, գործարկել նոր արտադրություններ։ Արդեն 1976 թ. կգործարկվի նոր կարողություն՝ բուտադիենից քլորոպրենի ստացման համար։ Այդ նպատակով կիրացվի ավելի քան 30 մլն ռուբլի։

Տասներորդ հնգամյակում մեր հանրապետության էկոնոմիկայի զարգացման կարևորագույն խնդիրները առաջադրվել են «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ։Պատմական նշանակություն ունեցող այդ փաստաթուղթը նախատեսում է Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման տեմպերի արագացման, հասարակական արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացման կոնկրետ միջոցառումներ։ Այն նշանավորում է որակական նոր փուլ Հայաստանի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար, նախանշում դրանց զարգացման սկզբունքորեն նոր ուղիներ՝ հանրապետության արտադրաուժերի առկա և պոտենցիալ հնարավորությունների խոր ու կոմպլեքսային հաշվառման հիման վրա։ Քննարկելով կուսակցության XXV համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը՝ շրջանի կուսկազմակերպությունները այն սերտորեն առնչում են «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշման հետ։ Եվ դա օրինաչափ է. այդ որոշմամբ նախատեսված է մեր շրջանում վերակառուցել Կիրովի անվան քիմկոմբինատը, «Պոլիվինիլացետատ» գործարանը, նոր կարողություններ գործարկել քիմիական ռեակտիվների գործարանում, «Հայկենցաղքիմ» միավորումում, Երևանի ջերմաէլեկտրակայանում, տեխնիկական վերազինման միջոցառումներ իրականացնել Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարաններում, ծխախոտի կոմբինատում։ Նոր արտադրական մասնաշենքեր կկառուցվեն էլեկտրաշարժիչների գործարանում, մահուդի ֆաբրիկայում, նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատում, «Հայգորգ» և «Մասիս» ֆիրմաներում։ Նախապատրաստելով 1976 թ. և ամբողջությամբ տասներորդ հնգամյակի պլանները՝ կուսկազմակերպությունները վերլուծում են նախորդ տարիների իրենց աշխատանքը, օբյեկտիվորեն գնահատում իրենց հաջողությունները, բացահայտում սխալներն ու բացթողումները, էկոնոմիկայի չօգտագործված հնարավորություններն ու ռեզերվները։

Կուսշրջկոմը մշտական ուշադրություն է նվիրում արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների գործունեության բարելավմանը։ Եվ դա հասկանալի է. շրջանը տալիս է Երևանի արդյունաբերական արտադրանքի 50 տոկոսը։ Համախառն արտադրանքի ծավալն անցնում է մեկ միլիարդ ռուբլուց։ Հստակ գիտակցելով շրջանի դերն ու նշանակությունը հանրապետության և մայրաքաղաքի էկոնոմիկայի զարգացման ասպարեզում, կուսշրջկոմը աշխատանքային կոլեկտիվների գործունեությունն ուղղում է պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարմանը, արտադրական կարողությունների ու սարքավորումների առավել ինտենսիվ օգտագործմանը, արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության հետագա աճին, թողարկվող արտադրանքի որակի բարելավմանն ու տեխնիկական մակարդակի բարձրացմանը։ Պլանները, որոնք կուսակցությունը առաջադրում է, ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում, կարող ենք կենսագործել այնքան հաջողությամբ, որքան մեծ պահանջներ առաջադրենք մեր և ուրիշների աշխատանքին։

Ելնելով դրանից՝ կուսշրջկոմը լուրջ ուշադրություն է նվիրում ձեռնարկու-

թյուններում կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդմանը, պետական պլանների ու առաջադրանքների կատարման նկատմամբ կադրերի պատասխանատվության բարձրացմանը։ Դրանով պետք է բացատրել, որ շրջանի արդյունաբերությունը 1975 թ. հաջողությամբ կատարեց պլանային առաջադրանքներն ու սոցպարտավորությունները։ Պլանից դուրս թողարկվել է 18,1 մլն ռուբլու արտադրանք։ Հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարեցին Կիրովի անվան քիմկոմբինատը, «Հայգորգ» ֆիրման, ռետինա-տեխնիկական իրերի գործարանը և այլ ձեռնարկություններ։ Համախառն արտադրանքի ավելի քան 87 տոկոսը ստացվել է ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման։

Արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասի գործունեության մեջ անխախտ օրենք դարձավ պլանների կատարման կայունությունը։ Եթե իններորդ հնգամյակի առաջին չորս տարում շրջանում արտադրության ծավալի տարեկան պլանը չէր կատարում շուրջ տասը ձեռնարկություն, կամ յուրաքանչյուր հինգերորդը, ապա եզրափակիչ տարում այն չկատարեց ընդամենը երեքը։ Անտարակույս, առաջխաղացում կա, սակայն մենք դեռևս չենք հասել այն բանին, որ չունենանք պլանը թերակատարող և ոչ մի ձեռնարկություն։

Ակնառու հաջողությունների են հասել շրջանի աշխատավորները գիտատեխնիկական առաջընթացի արագացման ասպարեզում։ Դա, ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած գլխավոր խնդիրներից մեկն է և համարվում է հանրային արտադրության արդյունավետության բարձրացման վճռորոշ պայման։ Միայն վերջին երկու տարում արդյունաբերական ձեռնարկություններում անցկացվել է 130 հոսքային և կոնվեյերային գիծ, տեղակայվել 730 միավոր նոր, բարձր արտադրողական սարքավորում, յուրացվել ավելի քան 400 տեսակի արդյունաբերական արտադրանքի արտադրություն։

Կենսագործելով ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զարգացման և ընդլայնման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, իրենց աշխատանքը որոշակիորեն բարելավել են թեթև արդյունաբերության ձեռնարկությունները։ Այդ ճյուղի բոլոր ձեռնարկությունները՝ Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրական միավորումը, «Հայգորգ» և «Մասիս» ֆիրմաները, նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատը, մահուդի ֆաբրիկան, արդյունավետ կերպով վերակառուցում են արտադրությունը, արմատավորում տեխնոլոգիական առաջավոր եղանակներ։ Ձեռնարկությունների տեխնիկական վերազինման նպատակային գործունեությունը այսօր տալիս է շոշափելի արդյունքներ։ Դրա բնորոշ օրինակն է նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատը։ Ինչպես հայտնի է, այն տարիներ շարունակ չէր կատարում արտադրական ծրագիրը, խիստ նվազեցրել էր արտադրության ծավալը։ Իններորդ հնգամյակի սկզբին սկսվեց կոմբինատի տեխնիկական վերազինումը։ Այժմ արդեն լրիվ վերակառուցված են գործող, մանվածքային և նախամանվածքի արտադրամասերը, շարունակվում է մյուս արտադրամասերի վերակառուցումը։ Ձեռնարկությունը անցած տարի պլանից դուրս թողարկեց ավելի քան 1,7 մլն ռուբլու արտադրանք։ Անտարակույս, այստեղ կան նաև չլուծված պրոբլեմներ, սակայն վերցրած կուրսը ճիշտ է և կասկած չկա, որ դրանք ևս կլուծվեն։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման միջոցառումների մասին» որոշման համապատասխան, շրջանում աշխատանք է տարվում նոր արտադրական միավորումներ ստեղծելու համար։ Այժմ ունենք տասնմեկ խոշոր միավորում, որոնցից երեքն ստեղծվել է 1975 թվականին։ Կյանքը ցույց է տալիս արտադրական միավորումների գործունեության արդյունավետությունը։ Այստեղ ստեղծվում են գիտատեխնիկական առաջընթացի և սոցիալիստական սիստեմի առավելությունների օրգանական միացման, գիտության և արտադրության կապի ամրապնդման ու կատարելագործման մեծ հնարավորություններ։ Դրանք, սակայն, օգտագործում են ոչ բոլոր միավորումները, նրանց ղեկավարները հասունացած պրոբլեմների լուծման գործում ցուցաբերում են երկչոտություն, շարունակում են կառչել արտադրության կազմակերպման հին ձևերից, չեն վե-



րադասավորում ծառայությունները՝ արտադրության պահանջներին համապատասխան։

Շրջանում արտադրության կենտրոնացման ու մասնագիտացման հետագա հնարավորությունները չեն սպառվել։ Նպատակահարմար է ստեղծել արտադրական և գիտա-արտադրական նոր միավորումներ, հատկապես քիմիական արդյունաբերության ճյուղում։

Կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում թողարկվող արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի բարձրացմանը։ Ներկայումս շրջանում պետական որականիշով թողարկվում է 113 արտադրատեսակ, որոնց մեծ մասին այն շնորհվել է վերջին երկու տարում։ Արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի բարձրացման համար հետևողական աշխատանք է տարվում էլեկտրասարքերի գործարանում։ Այստեղ տարվում է արտադրական գործողությունների ավտոմատացման ու մեքենայացման կուրս։ Եթե 1970 թ. պետական որականիշով թողարկվում էր ընդամենը մեկ արտադրատեսակ, ապա այժմ թողարկվում է 22 արտադրատեսակ կամ ամբողջ արտադրանքի 60 տոկոսը (շրջանի 7 տոկոսի դիմաց)։ Արտադրանքի 95 տոկոսը տեխնիկական վերահսկողության բաժին է տրվում առաջին ներկայացմամբ։ Յուրաքանչյուր յոթերորդ բանվոր իրավունք է ստացել աշխատել անհատական դրոշմանիշով։ Բնական է, որ վերջին երկու տարում սպառողներից բողոքներ չեն ստացվել։ Այդ ամենի հետ միասին իններորդ հնգամյակում ձեռնարկությունում արտադրության ծավալը մեծացել է 2,5 անգամ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել 68,3 տոկոսով, լրիվ բարեփոխվել է արտադրանքի նոմենկլատուրան։

Գնահատելով շրջանի արդյունաբերության հաջողությունները, միաժամանակ անհրաժեշտ է ինքնաքննադատաբար ասել, որ մեր աշխատանքում դեռևս կան շատ թերություններ և բացթողումներ։ Կենտկոմի նախագծի առնչությամբ մեր հետևությունն այն է, որ գիտատեխնիկական հեղափոխության արդի պայմաններում հարկ է արմատախիլ անել մի շարք հին պատկերացումներ ու սովորույթներ, ձևավորել այլ, նախկինից սկզբունքորեն տարբերվող վերաբերմունք առանձին տնտեսական կատեգորիաների, պլանների կատարման որակական կողմերի նկատմամբ, կադրերին դաստիարակել կուսակցական ու պետական կարգապահության ավելի խոր իմացությամբ, կատարելագործել էկոնոմիկայի կառավարման մեթոդները։ Այս առումով մեր հաջողությունները բավական համեստ են։ Հաճախ մենք ուշադրություն չենք դարձնում այն բանին, թե ի՛նչ գնով ենք հասել պլանների կատարմանը։ Կուսշրջկոմը ոչ միշտ է անհրաժեշտ գնահատական տալիս արտադրության ռեզերվների նկատմամբ ոչ ճիշտ, անտնտեսվար վերաբերմունքին, չմտածված կամ ուշացած որոշումներին, պասսիվությանը, անտարբերությանն ու պահպանողականությանը։

Մի շարք ձեռնարկություններում դանդաղել են արտադրության աճի տեմպերը։ Դրա պատճառներից մեկը պլանների իջեցման կամ փոխանցման պրակտիկան է։ Այսպես, 1975 թ. տասնմեկ ամիսներին համախառն արտադրանքի թողարկման տարեկան նախնական պլանը շրջանում, ամբողջությամբ վերցրած, նվազեցված էր 8,5 մլն ռուբլով։ Նկատվում են նաև արտադրության ծավալի սխալ պլանավորման փաստեր։

Վերլուծելով արդյունաբերական արտադրանքի վիճակը որակական ցուցանիշներով, հստակ երևում են մեր աշխատանքի թերությունները։ Կարևորագույն խնդիրը եղել և մնում է աշխատանքի արտադրողականությունը։ 1974 թ. այն բարձրացել 4,7, 1975 թ. տասնմեկ ամսում՝ 4,9 տոկոսով։ Ընդ որում, անցած տարվա հունվար—նոյեմբեր ամիսներին աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը չէր կատարել 12 ձեռնարկություն։ Այդ ձեռնարկություններում միջին աշխատավարձի աճը գերազանցում էր աշխատանքի արտադրողականության աճին։ Դրանք հիմնականում միութենական-հանրապետական և հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների ենթակայության են։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ մինիստրությունների և գերատեսչությունների ձեռնարկությունների աշխատանքի արտադրո-

ղականության աճը միջին շրջանային մասշտաբով չի պլանավորվել։ Մեկ աշխատողի հաշվով արտադրանքի ավելացման գլխավոր աղբյուրը տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործումը և նոր տեխնիկայի ներդրումն են։ Մինչդեռ անցած հնգամյակի ոչ մի տարում շրջանի մասշտաբով չի կատարվել նոր տեխնիկայի ներդրման պլանը։ Քիչ չեն դեպքերը, երբ ներդրված նոր տեխնիկան չի գործում։ Այսպես, մետաղյա իրերի գործարանում դեռևս 1970 թ. տեղադրվել է ցանցային վեց ավտոմատ՝ 90 հազար ռուբլու արժողությամբ։ Սակայն դրանցից օգտագործվում է միայն երկուսը։ Եվ դա այն դեպքում, երբ մետաղային ցանցը պատրաստվում է կիսատնայնագործական եղանակով, տարեկան պակաս է արտադրվում 220 հազար քմ ցանց։ Այս նույն ձեռնարկությունում 1974 թ. մոնտաժվել են 25 չեխոսլովակյան սառը նստեցման ավտոմատներ՝ 650 հազար ռուբլու արժողությամբ։ Սակայն դրանք մինչև այժմ չեն գործում, որովհետև ձեռնարկության ղեկավարները ժամանակին չեն պատվիրել տեխնիկական սարքավորումը։ Դրա հետևանքով չի օգտագործվում տարեկան 1.100 տոննա պտուտակամերի արտադրության հզորությունը։

Միանգամայն անբավարար են օգտագործվում արտադրողականության բարձրացման այնպիսի կարևոր ռեզերվներ, ինչպիսին օժանդակ գործողությունների մեքենայացումն է։ Առաջին հերթին դա վերաբերում է տրանսպորտային և պահեստային աշխատանքներին։ Այդ գործողությունների ավելի քան 60—80 տոկոսը կատարվում է ձեռքով։ Միջոցներ չեն ձեռնարկվում, ի հաշիվ մեքենայացման, առանց որակին վնասելու, կրճատելու տեխնիկական վերահսկողության բաժնի աշխատողների թիվը։ Ի դեպ, տեխնիկական վերահսկողության բաժնի ապարատը կազմում է բոլոր աշխատողների 10 տոկոսը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր ռեզերվ են բանվորական ժամանակի կորուստների կրճատումը և կադրերի հոսունության նվազեցումը։ Բանվորական ժամանակի ֆոնդը, սակայն, շրջանում օգտագործվում է 91 տոկոսով, որի պատճառով ամեն տարի պակաս է թողարկվում 15 մլն ռուբլու արտադրանք։ Շրջանում կադրերի հոսունությունը կազմում է 27 տոկոս, որը ամենաբարձրն է Երևանում։

Մեքենաշինության մեջ սարքավորումների տեխնոլոգիական հնարավորությունն օգտագործվում է 60—70 տոկոսի չափով, ցածր է հերթափոխայնության գործակիցը, մետաղահատ հաստոցների միջհերթափոխային ֆոնդի ժամանակի օգտագործման գործակիցը ընդամենը 0,8 է։

Շատ սկզբնական կուսկազմակերպություններ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում թողարկվող արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի բարձրացմանը։ Օրինակ, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում տասնութ տարի շարունակ թողարկվում են 1Մ61 և 1Մ61Պ մոդելի հաստոցներ, որոնք վաղուց են բարոյապես հնացել և իրենց տեխնիկական մակարդակով զիջում են համաշխարհային լավագույն նմուշներին։ Ձեռնարկության ղեկավարները, ինժեներական ծառայությունը միջոցներ ձեռք չեն առնում նոր մոդելի հաստոցներ թողարկելու համար։ Գործարանն ունի բարձրարտադրողական նույնընթաց հաստոցի փորձնական նմուշներ, որոնց նմանը չկա ոչ մեր երկրում և ոչ էլ արտասահմանում։ Հաստոցների նախագծման համար ծախսվել է զգալի գումար, սակայն ձեռնարկության ղեկավարությունը քայլեր չի անում այդ հաստոցների արտադրությունը սկզբնական շրջանում թեկուզ և փոքր չափերով կազմակերպելու համար։

Մեր թողարկած արտադրանքի որակը դանդաղ է բարձրանում։ Ստանդարտների և նորմատիվային տեխնիկական փաստաթղթերի խախտումները կրում են մասսայական բնույթ։ 1974 թ. շրջանի ձեռնարկությունների նկատմամբ կիրառվել են 950 հազար, իսկ 1975 թ. ինն ամսում՝ 400 հազար ռուբլու տնտեսական սանկցիաներ։ ՍՍՀՄ պետական ստանդարտի Հայաստանի վարչությունը արգելել է ավտոպահեստամասերի, «Հայկենցաղքիմ» ֆիրմայի, «Հայքիմմաշ» միավորման և այլ ձեռնարկությունների ստուգված արտադրանքի առաքումը։ Մասսայական սպառման ապրանքներ թողարկող ձեռնարկություններում որակական ցուցանիշները ետ են մնում սպառողների աճող



պահանջներից։ Դրանցում թույլ է գործում տեխնիկական վերահսկողության ծառայությունը, թողարկվող արտադրանքի որակը կայուն չէ։ Հսկողություն չկա տեխնոլոգիական պրոցեսների կարգավորման, որոշակի որակի ապրանքների թողարկման մշտականության նկատմամբ։

Լուրջ թերություններ կան նաև շրջանի շինարարական կազմակերպությունների, տրանսպորտի, կապի ձեռնարկություններում, սպասարկման ոլորտում։ Դա հիմնականում բացատրվում է նրանով, որ ոչ բոլոր կուսկազմակերպություններն են իրենց գործունեությունը վերակառուցել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան և հուլիսյան պլենումների պահանջների ոգով։

Տասներորդ հնգամյակում շրջանի էկոնոմիկայի առջև ծառացած բարդ ու բազմաբնույթ խնդիրների իրականացման համար հարկավոր է շուտափույթ լուծել մի շարք պրոբլեմներ։ Հնգամյակում նախատեսվում է կառուցել, վերակառուցել և տեխնիկապես վերազինել շրջանի շատ արդյունաբերական օբյեկտները, որոնք ունեն ժողովրդատնտեսական առանձնակի կարևորություն։ Միայն քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումները կկազմեն 240 մլն ռուբլի, այդ թվում շինմոնտաժային աշխատանքներինը՝ 140 մլն ռուբլի։

Շրջանի արդյունաբերական շինարարությունը, սակավ բացառությամբ, կատարում է «Երքիմշին» տրեստը։ Անցած տարի այն աշխատեց իր հնարավորությունների առավելագույն չափով, գերազանցեց նախագծային հզորությունը, հասավ ամենաբարձր աշխատանքի արտադրողականությանը մեր հանրապետությունում։ Քիմիկան և նավթաքիմիական օբյեկտներից բացի, տրեստն զբաղված է նաև ուրիշ ձեռնարկությունների մեծաքանակ կառույցների շինարարությամբ։ Տասներորդ հնգամյակում է՛լ ավելի մեծ ծավալի շինարարական աշխատանքներ են կատարվելու մեր շրջանում։ Սակայն տրեստը, առանց արտադրական բազայի էական ընդլայնման, ի վիճակի չէ կատարել այդ ծավալի աշխատանքը։ Հավանաբար, հասունացել է մեր շրջանում նոր մասնագիտացված շինարարական տրեստի ստեղծման հարցը, որի լուծմամբ կարելի է «Երքիմշին» տրեստի օբյեկտների մի մասը հանձնել շինարարական այդ նոր կազմակերպությանը։ Կուսշրջկոմն այդ հարցը դրել է իրավասու մարմինների առջև և, ամենայն հավանականությամբ, այն կլուծվի։

«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի քննարկմանը նվիրված ժողովները շրջանի կուսկազմակերպություններում անցան նախահամագումարյան սոցմրցության ծավալման, բարձր պահանջկոտության մթնոլորտում և ցույց տվեցին, որ ավելի է զարգանում կոմունիստների նախաձեռնությունը, բարձրանում է նրանց պատասխանատվության զգացումը աշխատանքային կոլեկտիվների ընդհանուր գործի համար։ Շրջանային կուսկազմակերպության կոնֆերանսը մշակեց գործնական միջոցառումներ՝ սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, նրանց աշխատանքի ոճն ու մեթոդները բարելավելու, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումի որոշումների անվերապահ կատարումն ապահովելու համար։

Յուրաքանչյուր օր մեզ մոտեցնում է ՍՄԿԿ XXV համագումարին։ Մեր շրջանի աշխատավորները մեծ խանդավառությամբ են կանգնել նախահամագումարյան հերթափոխի։ Տասներորդ հնգամյակի հեռանկարները նրանց ոգևորում և մղում են նոր խիզախումների՝ հանուն նոր, մեծ գործի։

Անտարակույս, շրջանի կուսկազմակերպությունների և կոլեկտիվների ժողովներում ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թ. դեկտեմբերյան պլենումի որոշումների և «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի լայն քննարկումը կնպաստի բոլոր աշխատանքային կոլեկտիվների ստեղծագործական նախաձեռնության հետագա զարգացմանը, ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելուն։ Մեր շրջանի կուսկազմակերպությունները ամեն ինչ կանեն տասներորդ հնգամյակը արդյունավետության և որակի բարձրացման արգասավոր ժամանակաշրջան դարձնելու համար։

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ՎԵՐԸՆԹԱՑԸ

**Ս. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ**
Հայկական ՍՍՀ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի
գլխավոր արտադրական վարչության պետ

*Մ*ԵՐ ԵՐԿՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ, ղեկավարվելով ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումներով, հաջողությամբ իրագործեցին իններորդ հնգամյակի պլանային առաջադրանքները:

Համաժողովրդական այդ մեծ գործում պատվավոր տեղ ունի երկրի էներգետիկների երկու միլիոնանոց բանակը: Դեռ 1974 թ. Սովետական Միության էլեկտրակայանների հզորությունն անցավ 200 մլն կիլովատի սահմանագիծը: Սովետական Միության էներգետիկ սիստեմները, արդյունաբերության էներգետիկ ճյուղերի ձեռնարկությունները փայլուն հաջողության հասան հնգամյակի ավարտական տարում՝ նվաճելով ավելի քան մեկ տրիլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրության բնագիծը:

Մեր երկրում ամեն տարի միջին հաշվով գործարկվում են ավելի քան 10 մլն կվտ նոր կարողություններ: Այժմ Սովետական Միությունում կան 20 ջերմաէլեկտրակայաններ, որոնցից յուրաքանչյուրն ունի ավելի քան երկու մլն կվտ կարողություն, և 43 էլեկտրակայաններ, այդ թվում նաև Հրազդանինը՝ յուրաքանչյուրն ավելի քան մեկ մլն կվտ կարողությամբ: Ջերմաէլեկտրակայանների էլեկտրաէներգիայի արտադրանքը 1974 թ. կազմում էր ընդհանուր արտադրանքի 87 տոկոսը:

Իններորդ հնգամյակում մեր երկրում ջերմաէլեկտրաէներգետիկայի զարգացումը կատարելագործվում էր ջերմային և ատոմային էլեկտրակայաններում նոր, բարձրարդյունավետ էներգետիկ սարքավորում տեղծելու, արմատավորելու և յուրացնելու միջոցով: Լուրջ հաջողությունների հասան նաև մեր հանրապետության էներգետիկները: Հնգամյակի ընթացքում այդ ճյուղում կապիտալ ներդրումները կազմել են 393 մլն ռուբլի: Իններորդ հնգամյակում (ութերորդի համեմատությամբ) այդ ներդրումների աճը կազմել է 57, իսկ շինմոնտաժային աշխատանքներում՝ 60 տոկոս:

Եթե յոթերորդ հնգամյակում գործարկվել են 374 հազար, իսկ ութերորդում՝ 682 հազար կվտ նոր կարողություններ, ապա իններորդ հնգամյակում միայն Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանում գործարկվեցին չորս էներգաբլոկ՝ յուրաքանչյուրը 200 հազար կվտ կարողությամբ: Ընդ որում, առաջին երկուսը՝ հնգամյակի առաջին տարում, որոնք լուրջ դեր խաղացին հանրապետության էներգետիկական բալանսի բարելավման գործում:

Իններորդ հնգամյակում մեծ մասշտաբի շինարարական աշխատանքներ են կատարվել ատոմային էլեկտրակայանում: Սակայն տեխնիկական սարքավորման մատակարարումը ձգձգվելու պատճառով փոքր-ինչ ուշացումով կգործարկվի առաջին ռեակտորը, որն ունի երկու էներգաբլոկ՝ յուրաքանչյուրը 220 հազար կվտ կարողությամբ: Այդ ժամանակամիջոցում շարունակվում էր հիդրոկայանների կառուցումը Որոտան գետի վրա, որի առաջին կայանը՝ Տաթևինը, գործարկվեց 1970 թվականին:



Արփա—Սևան թունելի շինարարության ավարտին երկու կիլոմետր է մնում (48,8 կմ ընդհանուր երկարությունից): Այժմ արդեն հեռու չէ այն ժամանակը, երբ Արփայի ջրերը կհոսեն Սևան, և կդադարի լճի մակարդակի իջեցումը:

Հանրապետությունում մեծ աշխատանքներ են կատարվել էլեկտրահաղորդման գծերի և ենթակայանների շինարարության ոլորտում: Անցկացվել են ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցող Կիրովական—Ալավերդի, Ալավերդի—Թբիլիսի ՊՇԷԿ 220 կվտ հզորության էլեկտրահաղորդման գծերը: Վերջինս, որպես միջսիստեմային կապի էլեկտրահաղորդման գիծ, կարևոր դեր կխաղա, որովհետև այն կմիացնի Հայաստանի և Վրաստանի ավելի քան մեկ միլիոնանոց հզորություն ունեցող Հրազդանի ու Թբիլիսիի պետական շրջանային էլեկտրակայանները: Ալավերդում կառուցված 220 կվտ կարողությամբ ենթակայանը զգալիորեն կբարձրացնի Ալավերդու էներգահանգույցի հիմնական սպառողների էներգամատակարարման հուսալիությունը: Կառուցված է Նոր-Հյուսիսային հզոր ենթակայանը (220 կվտ կարողությամբ), որը կոչված է բարելավելու մայրաքաղաքի էլեկտրամատակարարումը: Արարատի ոսկեհանքային կոմբինատը նույնպես ունի այդպիսի ենթակայան: Ընդ որում, վերջինս 220 կվտ էլեկտրահաղորդման գծերով կապված է ատոմային էլեկտրակայանից, Երևանի ՋԷԿ-ից և Եղեգնաձորի ենթակայանից հաղորդվող էլեկտրաաղբյուրների հետ: 220 կվտ էլեկտրահաղորդման նոր գիծը հայկական ատոմայինը կկապի Շահումյան—2 ենթակայանին:

Եթե մինչև իններորդ հնգամյակը էներգասիստեմում ունեինք ընդամենը 612 կիլոմետր երկարությամբ 220 կվտ էլեկտրահաղորդման գիծ, ապա միայն իններորդ հնգամյակում անցկացվել են 392 կմ երկարությամբ այդպիսի նոր գծեր, կառուցվել են 106 ենթակայաններ՝ տեղակայված տրանսֆորմատորների 1.299 հազար կվա գումարային կարողությամբ, ավելի քան 3.000 կմ երկարությամբ այլ կարողության էլեկտրահաղորդման գծեր:

Շատ միջոցներ են ներդրված էներգետիկների բնակարանային, կոմունալ-կենցաղային և կուլտուրական սպասարկման օբյեկտների շինարարության համար: Շահագործման են հանձնվել 94 հազար քմ բնակտարածություն, երկու մանկապարտեզ, գործարկվում են երկու պրոֆիլակտորիում: Նոր Հրազդանում կառուցվում է էներգետիկների ակումբի արդիական շենք:

Էլեկտրաէներգիայի և ջերմաէներգիայի սպառումը նվազեցնելու նպատակով մեծ աշխատանք են կատարել էներգաիրացման, պետական էներգահսկողության և արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները: Արդյունաբերական արտադրանքի թողարկման համար հաստատված տեսակարար նորմաների դիմաց 2—2,4 տոկոսով տնտեսվել է էլեկտրաէներգիա, 3—4,2 տոկոս՝ վառելիք: Իններորդ հնգամյակում էլեկտրաէներգիայի տնտեսումը կազմեց 450 մլն կվտ-ժամ, իսկ վառելիքինը՝ 830 հազար հեկակալորիա: Հատկապես պետք է նշել գյուղատնտեսության ոլորտի էլեկտրաէներգիա սպառողների էներգաօգտագործման մասին:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷՆԵՐԳԵՏԻԿՆԵՐԸ, ԱՌԱՋԻՆԸ Սովետական Միությունում, դեռևս 1964 թ. վերջերին ավարտեցին գյուղատնտեսական բոլոր օբյեկտների փոխադրումը էներգասնուցման ցանցերին: Դրա համար անհրաժեշտ եղավ կառուցել մի քանի հազար կիլոմետր՝ 0,4 և 6—10 կվտ, ինչպես նաև 35 կվտ լարվածության էլեկտրահաղորդման գծեր ու բազմաթիվ ենթակայաններ: Կոլտնտեսություններն ու սովխոզներն ազատվեցին ոչ ձեռնտու և դրա հետ մեկտեղ ընդհատումներով բանող մանր էլեկտրակայանները հաճախակի վերանորոգելու հոգսից:

Արդեն 10 տարուց ավելի է գյուղատնտեսական սպառողները շատ էժան էլեկտրաէներգիա են ստանում (0,71 կոպ. մեկ կվտ-ժամի համար), իսկ մեքենայական ոռոգման համար է՛լ ավելի էժան (0,6 կոպ. մեկ կվտ-ժամի համար),

երբ էլեկտրաէներգիայի ինքնարժեքը էներգասիստեմում մեկ կվտ-ժամի համար 1,2—1,3 կոպեկ է։ Իններորդ հնգամյակում գյուղատնտեսության կարիքներին հատկացվող էլեկտրաէներգիայի ծախսը, ութերորդ հնգամյակի վերջին տարվա համեմատությամբ, աճել է 75 տոկոսով։

Էլեկտրաէներգիայի գումարային արտադրանքը իններորդ հնգամյակում 40,2 մլրդ կվտ-ժամ է, ութերորդ հնգամյակի 24,7 մլրդի դիմաց կամ աճել է 64 տոկոսով, իսկ ջերմային թողարկումը՝ 22,6 մլն հեկակալորիա, ութերորդ հնգամյակի 14,7 մլն հեկակալորիայի փոխարեն։

Բնորոշ է, որ իններորդ հնգամյակում հանրապետության էլեկտրակայանների արտադրած էլեկտրաէներգիայի 40,2 մլրդ կվտ-ժամից 33,5 մլրդ կվտ-ժամը (83 տոկոս) արտադրել են ջերմաէլեկտրակայանները և սոսկ 6,7 մլրդ կվտ-ժամը կամ 17 տոկոսը՝ հիդրոկայանները։

Հայտնի է, որ երբ 1960 թ. ավարտվեց Աղստաֆա—Ախթաբեկյան էլեկտրահաղորդման միջսիստեմային գծի շինարարությունը և միավորվեցին Անդրկովկասյան երեք եղբայրական հանրապետությունների էներգետիկ սիստեմները, հայկական էներգասիստեմը դեռևս հնարավորություն չուներ էլեկտրաէներգիայով ապահովել հանրապետության ժողովրդական տնտեսությունը, ուստի էլեկտրաէներգիայի պահանջմունքի մեջ եղած ճեղքվածքը փակելու համար հանրապետությունն սկսեց էլեկտրաէներգիա ստանալ եղբայրական Ադրբեջանի էներգասիստեմից։ Սակայն այդպես շարունակվել չէր կարող։ Հանրապետությունը պետք է ունենար սեփական հաստատուն էներգետիկ բազա։

Հարկավոր է նշել, որ ցանցային շինարարության նկատմամբ եղած կողմնորոշումը հակասում էր նաև այն հետևություններին, որոնց հանգել էին նախագծային և գիտահետազոտական կազմակերպությունները, որոնք ապացուցում էին, թե տնտեսապես ավելի նպատակահարմար է էլեկտրակայաններ կառուցել փոխադրվող բարձր կալորիական վառելանյութի (գազ, մազութ, նավթ, Դոնի քարածուխ) օգտագործումով, էլեկտրաէներգիայի սպառման վայրից ոչ հեռու։

Այդ հետևությունները հաստատեցին ՍՍՀՄ Պետպլանի պետական փորձագետները։ 1963—1965 թթ. Երևանի ջերմաէլեկտրակայանում գործադրվեցին չորս տուրբոգեներատորներ և մեկ բլոկ՝ 350 հազար կվտ գումարային կարողությամբ և Կիրովականի ջերմաէլեկտրակայանում՝ երկու տուրբոգեներատոր՝ 24 հազար կվտ ընդհանուր կարողությամբ։

1972 թ., երբ գործարկվեցին Հրազդանի ՊՇԷԿ-ի առաջին երկու բլոկները, վերահուսքն սկսեց միջսիստեմային բնույթ կրել, և ավելի հաճախ Հայաստանի էներգասիստեմից էներգիան հոսում էր Անդրկովկասի միացյալ դիսպետչերական վարչության (ՄԴՎ), ընդ որում, որպես կանոն, դա լինում էր ձմռան ամիսներին՝ երեկոյան առավելագույն ծանրաբեռնվածության պատճառով։

ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԿԵՍԵՐԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷՆԵՐԳԱՍԻՍՏԵՄԸ առաջին անգամ ամբողջ Անդրկովկասի համար դարձավ մեծ ռեզերվով հաղվադեպ հավելուրդային սիստեմ։ Վրացական և ադրբեջանական էներգասիստեմներն աշխատում են առանց ռեզերվների և օգտվում հայկական էներգասիստեմում կենտրոնացած ռեզերվներից։ Այդ հանգամանքը նրանց հնարավորություն է ընձեռում ավելի լրիվ օգտագործել առկա կարողությունները, մեծացնել իրենց էլեկտրակայանների օգտագործման գործակիցները։

Իններորդ հնգամյակի վերջին տարում, սովետական կառավարության թույլտվությամբ, ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի մինիստրությունը պլանավորում է միայն երկու կարևորագույն ցուցանիշ՝ պայմանական վառելիքի տեսակարար ծախսը և շահույթը։ Մնացած ցուցանիշները, ինչպիսիք են էլեկտրաէներգիայի արտադրությունը, վառելիքի բացթողումը, աշխատանքի արտադրողականությունը, էլեկտրաէներգիայի ծախսը սեփական կարիքների համար, կորուստները ցանցերում և այլն դարձել են հաշվարկային ցուցանիշներ։

Հանրապետության ջերմաէլեկտրակայանների բանվորների և ինժեներա-



տեխնիկական աշխատողների կոլեկտիվները, տարեցտարի ծավալելով սոցիալիստական մրցությունը, մեծ գործ են կատարել ջերմամեխանիկական սարքավորումների սպասարկման կուլտուրայի, վերանորոգումների որակի բարձրացման, աշխատանքի ռեժիմի բարելավման նպատակով։ Հրազդանի ՊՇԷԿ-ում և Երևանի ջերմաէլեկտրակայանում, ապահովելով կաթսաների, տուրբոգեներատորների և այլ սարքավորումների վերակառուցման մեծածավալ աշխատանքների կատարումը, նրանք լուրջ հաջողություններ են ձեռք բերել վառելանյութը նպատակահարմար օգտագործելու և տեսակարար ծախսերն իջեցնելու գործում։ Տեսակարար ծախսերի իջեցման հնգամյա պլանը կատարվել է չորս տարուց էլ պակաս ժամկետում։

Պայմանական վառելանյութի փաստական ծախսը 1974 թ. կազմեց 362 գրամ, 1975 թ. համար նախատեսվածից 7 գրամ պակաս։ Ջերմաէլեկտրակայաններում վառելանյութի խնայողությունը 1975 թ. կազմեց 285 հազար տոննա պայմանական վառելիք։

Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետության էներգասիստեմը գերակատարել է սահմանված շահույթի պլանները. եզրափակիչ տարում այն հասավ 201,7 մլն ռուբլու, կամ ութերորդ հնգամյակի համեմատությամբ աճել է 91,6 տոկոսով։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում էլեկտրաէներգիայի աճը տասներորդ հնգամյակում սահմանված է 30—32 տոկոս. 1980 թ. արտադրվելու է 1.340—1.380 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա։ Դրա համար պետք է գործարկվեն 67—70 մլն կվտ նոր կարողություններ։

Իսկ ինչպիսի՞ն են էներգետիկայի զարգացման հեռանկարները մեր հանրապետությունում նոր՝ տասներորդ, հնգամյակում։ Այդ հեռանկարներին հատուկ տեղ է հատկացված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1975 թ. ապրիլի 16-ի «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշման մեջ, որն ընդունվել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ։ Որոշմամբ նախատեսվում է 1977 թվականին ավարտել Հայաստանի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթը՝ 880 հազար կվտ ընդհանուր կարողությամբ։ Որոտան գետի վրա շարունակվելու է 171 հազար կվտ կարողությամբ Տաթևի հիդրոկայանի շինարարությունը։ Այն շահագործման կհանձնվի 1977 թ., իսկ գլխամասային Սպանդարյան գէսը՝ 1979 թվականին։ Որոտան գետի հիդրոկայանների գումարային հզորությունը, ներառյալ նաև 1970 թ. վերջին գործարկված Տաթևգէսը, կկազմի 404 հազար կվտ, տարեկան 1,1 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրությամբ։ Չնայած այդ կասկադի համեմատաբար ոչ մեծ կարողությանը, նրա ավարտումը նկատելիորեն կհամալրի Սևան—Հրազդան կասկադի հիդրոկայանների կարգավորիչ նշանակությունը։

Կիրովական քաղաքում ջերմավորման աշխատանքներ են տարվում։ Նախատեսվում է 1976 թվականին քաղաքի մեծ մասում ավարտել այդ աշխատանքները։ Բացի այդ, արհեստական մետաքսաթելի գործարանի երկրորդ հերթի, ինչպես նաև Մյասնիկյանի անվան քիմկոմբինատի նոր արտադրամասերի գործարկման կապակցությամբ խիստ անհրաժեշտություն է առաջացել ընդլայնելու Կիրովականի ջերմաէլեկտրակայանը։ Այդ նպատակով շինարարական աշխատանքները սկսվել են դեռ 1974 թվականին։ Տասներորդ հնգամյակի առաջին տարում գործարկվելու է մեկ կաթսա՝ ժամում 160 տոննա շոգու արտադրողականությամբ, այդպիսի երկրորդ կաթսան կգործարկվի 1977 թվականին։

Այսպիսով, տասներորդ հնգամյակում հանրապետությունում նոր գեներացնող կարողություններ կգործարկվեն ատոմային էլեկտրակայանում՝ 880 հազար կվտ, Որոտան գետի հիդրոկայաններում՝ 247 հազար կվտ և Կիրովականի ջերմաէլեկտրակայանում՝ 60 հազար կվտ։

Հանրապետության էլեկտրակայանների հզորությունը կհասնի 3.659 հա-

պար կվտ-ի։ Էլեկտրասիստեմը կշարունակի մնալ հավելուրդային և հնարավորություն կունենա բարձր մակարդակի հուսալիությամբ ապահովել հանրապետության ժողովրդական տնտեսության կարիքները, ինչպես նաև էլեկտրաէներգիա մատակարարելու Անդրկովկասի միավորված էներգասիստեմին՝ Ադրբեջանի և Վրաստանի էներգասիստեմներում առաջացած դեֆիցիտը ծածկելու համար այնքան ժամանակ, մինչև այդ հանրապետություններում կգործադրվեն նոր գեներացնող կարողություններ՝ Ինգուրիի հիդրոկայանը՝ Վրաստանում, և նոր ՊՇԷԿ-ը՝ Ադրբեջանում։ Տասներորդ հնգամյակում Հայկական ՍՍՀ-ում նշանակալի չափով կաճի էլեկտրաէներգիայի արտադրությունը. հնգամյակի տարիներին այն կկազմի համապատասխանաբար՝ 10,2, 14,1, 14,7, 15,7 և 16 մլրդ կվտ-ժամ։ Կենսագործվելու է մեծ էլեկտրացանցային շինարարություն։ Կառուցվելու են նոր մագիստրալային էլեկտրահաղորդման գծեր՝ 220 կվտ լարվածությամբ, 110 կվտ բաշխիչ և գյուղատնտեսության էլեկտրամատակարարման հետագա բարելավման համար 35 կվտ գծեր։

Զգալի միջոցներ են ծախսվելու նաև բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության նպատակով։ Ըստ տասներորդ հնգամյակի նախագծի, էներգետիկայում կապիտալ ներդրումները կկազմեն 406 մլն ռուբլի, որից 204 միլիոնը հատկացվում է շինմոնտաժային աշխատանքներին։

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅՈՒՄ ՉԼՈՒԾՎԱԾ Է ՄՆՈՒՄ մի շատ կարևոր խնդիր։ 1975 թ. Հայգլխէներգոն և Հիդրոնախագիծ ինստիտուտի հայկական բաժանմունքը մինիստրության առջև բարձրացրին Հայաստանի պոմպային-ակումուլյացիոն էլեկտրակայանի (ՊԱԷԿ) շինարարության տեխնիկատնտեսական հիմնավորումը պատրաստելու հարցը։ 800 հազար կվտ հզորությամբ այդ կայանի կառուցման անհրաժեշտությունը բխում է հետևյալ հանգամանքներից։

Էլեկտրաէներգիայի սպառմանը բնորոշ է անհամաչափությունը ինչպես եռամսյակների, այնպես էլ մեկ օրվա ընթացքում։ Էներգիայի օգտագործումը չորրորդ եռամսյակում տարեկան սպառման 28—30 տոկոսն է, երբեմն դրանից էլ ավելի։ Էլեկտրաէներգիան ավելի շատ է սպառվում աշխատանքային օրերին, քան շաբաթ, առավել ևս՝ կիրակի օրերին։ Նկատենք նաև, որ ձմռանը նույն աշխատանքային օրերը տարբերվում են միմյանցից, սպառումն աճում է ցուրտ օրերին։ Այդ անհամաչափությունն է՛լ ավելի ցայտուն է արտահայտվում օրվա տարբեր ժամերին։ Գիշերը սպառումը զգալիորեն նվազում է, իսկ երեկոյան՝ աճում։ Յուրաքանչյուր էներգամիավորում ու էներգասիստեմ պետք պատրաստ լինի իր սպառողների պահանջմունքը բավարարել, այսպես կոչված, առավելագույն օրվա գրաֆիկով, ընդսմին՝ ունենալով անհրաժեշտ բոլոր ռեզերվները։

Այդ անհամաչափությունը բնութագրվում է մի գործակցով, որը հավասար է օրվա նվազագույն և առավելագույն ծանրաբեռնվածության հարաբերակցությանը։ Ակներև է, որ այդ գործակիցը մեծ է այնքանով, որքանով փոքր է երեկոյան ծանրաբեռնվածությունը և նվազ գիշերային բեռնվածության անկումը։ Օրինակ, Հայաստանի էներգասիստեմում 1953 թ. անհամաչափության գործակիցը հավասար էր 0,94-ի։ Գիշերային բեռնվածությունը ընդամենը 4 տոկոսով էր ցածր միջին օրականից, իսկ երեկոյան գերծանրաբեռնումը՝ 4 տոկոսով բարձր միջին օրականից։ Բեռնվածության օրվա գրաֆիկի այդպիսի «խաղաղ» բնույթը բխում էր նրանից, որ էլեկտրասիստեմի տված օգտակար էլեկտրաէներգիայի 74 տոկոսը սպառում էին էներգատար արտադրությունները, որոնք օրվա ընթացքում սպառում էին միևնույն քանակի էլեկտրաէներգիա։ Բեռնվածության այդպիսի գրաֆիկ ծածկելը ոչ մի դժվարություն չէր ներկայացնում։

Էներգակլանող արդյունաբերության տեսակարար կշռի իջեցման, կոմունալ-կենցաղային կարիքների համար էլեկտրաէներգիայի սպառումն ավելացնելուն զուգընթաց, բեռնվածության օրական գրաֆիկի անհամաչափության գործակիցը 1966 թ. 0,75 տոկոսից 1969 թ. իջել է 0,71 տոկոսի։

Տասներորդ հնգամյակի վերջին տարում Հայաստանի էներգասիստեմի բեռնվածության օրական հեռանկարային գրաֆիկները, որ կազմել էին տարբեր հաստատություններ, գործնականում համընկան և ցույց տվեցին, որ անհավասարաչափության գործակիցը հետագայում ևս կիջնի։



Գիշերային կորուստը հավասար կլինի միջին օրական բեռնվածության 28 տոկոսին, իսկ երեկոյան գերծանրաբեռնվածությունը 30 տոկոսով կգերազանցի միջին ծանրաբեռնվածությանը։

Էներգասիստեմն իր կողմից պետք է ունենա անհրաժեշտ կարողության մանևրող էլեկտրակայաններ։ Դրանցից են, առաջին հերթին, հիդրոկայանները, որոնք կարգավորում են հոսքը, և հիդրոակումուլյացիոն էլեկտրակայանները։

Էներգաբլոկներ ունեցող ջերմաէլեկտրակայաններում հուսալի, կայուն տնտեսապես ամենանպատակահարմար աշխատանք ապահովելու համար առաջին կարևորագույն պայմանը մշտական բեռնվածությամբ կատարվող աշխատանքն է։ Երեկոյան գերծանրաբեռնվածության պահերին հզոր բլոկների գործարկումը՝ այն հաշվով, որպեսզի 4—5 ժամ հետո նորից կանգնեցվեն, գործնականում հսկայական դժվարություններ են առաջացնում։

Տարրական հաշվումները ցույց են տալիս, որ Հայաստանի էներգասիստեմում 800 հազար կվտ հզորությամբ ՊԱԷԿ-ի առկայությունը կվերացներ բոլոր ռեժիմային դժվարությունները, նշանակալի չափով կբարելավեր ջերմաէլեկտրակայանների աշխատանքի ռեժիմը, կիջեցներ վառելանյութի տեսակարար ծախսերը, կպակասեցներ ջերմաէլեկտրակայանների կապիտալ վերանորոգման ծախսերը, կնվազեցներ ջերմամեխանիկական սարքավորման աշխատանքի խոտանը։ ՊԱԷԿ-ի այդպիսի հզորության պայմաններում Հայաստանի էներգասիստեմը առաջին 5—6 տարում կարող էր օգնել հարևան էներգասիստեմներին։

Նախագծային կազմակերպությունների հաշվումներով ջերմաէլեկտրակայանների օգտագործման ժամերը 6.000—5.000 ժամի իջնելու դեպքում էլեկտրաէներգիայի արժեքը թանկանում է 12—15, մինչև 4.000-ի դեպքում՝ 30—35 տոկոսով։

Եթե ջերմակայանները գիշերային ժամերին չկանոնավորվեն, չբեռնաթափվեն, ապա կապիտալ վերանորոգումների արդի պարբերականության պայմաններում ջերմաէլեկտրակայանների օգտագործման ժամերը վերջին տարիների 5.400 ժամից կարող է բարձրանալ մինչև 6.400—6.500 ժամի։

ՊԱԷԿ-ները մեծ առավելություն ունեն գազատուրբինային տեղակայանքների համեմատությամբ. դրանք ջերմային և ատոմային էլեկտրակայաններին օգնում են բարձրացնելու իրենց բեռնվածությունը՝ գրաֆիկի գիշերային ձախողումների ժամերին, այդ էներգիան ծախսելով նրա համար, որպեսզի այն կուտակվի իրենց վերին ջրամբարներում և դա այն հաշվով, որ երեկոյան գերծանրաբեռնվածության ժամերին կամ այլ անհրաժեշտության դեպքում վերադարձվեն սիստեմներին։

Հայաստանի ՊԱԷԿ-ի շինարարության պայմանները շատ նպաստավոր են։ Այն կկառուցվի Հրազդանի հիդրոէլեկտրակայանի մոտ։ Շինհրապարակի կողքին երկաթգիծն է, այնտեղով անցնում է մագիստրալային ճանապարհը։ Պարզ և էժան են լուծվում ջրամատակարարման ու էլեկտրամատակարարման հարցերը։

Եթե ՊԱԷԿ-ը ի սպաս դրվի հարևան էներգասիստեմի գերծանրաբեռնվածությունը ծածկելու նպատակին, ապա դրա համար էլեկտրահաղորդման գծեր կառուցելու անհրաժեշտություն չի լինի. գոյություն ունեցող գծերը կարող են օգտագործվել 600—700 հազար կվտ հաղորդման համար։

Տասներորդ հնգամյակում Հայգլխէներգոյի հիմնական ֆոնդերը կհասնեն 1,1 մլրդ ռուբլու։ Պետք է լուծել ՊԱԷԿ-ի կառուցման համար պահանջվող գումարը 90 մլն-ով ավելացնելու հարցը, և Հայաստանի էներգասիստեմն է՛լ ավելի լիարժեք կդառնա։ Էլեկտրաէներգիայի տարեկան հնարավոր արտադրությունը կարող է հասնել 21—22 մլրդ կվտ-ժամի, իսկ Հրազդանի ՊՇԷԿ-ի К—200 երկու բլոկների գործարկման դեպքում՝ 25 մլրդ կվտ-ժամի։ Այդ ամենի շնորհիվ էապես կբարելավվեն Հայաստանի էներգասիստեմի տեխնիկատնտեսական ցուցանիշները։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ

Մ. Ս. ՇԱՀԲԱԶՅԱՆ
Տնտեսագիտության թեկնածու

ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ ՄԵՐ ԵՐԿՐԻ ժողովրդական տնտեսությունը նոր առաջընթաց ապրեց կոմունիստական շինարարության բոլոր ոլորտներում: Շատ բան է արվել և գյուղատնտեսության բնագավառում: Հնգամյակի ընթացքում տնտեսապես է՛լ ավելի ամրացան կոլտնտեսություններն ու սովխոզները, բարձրացավ նրանց աշխատանքի արտադրողականությունը, ավելացան կոլտնտեսությունների եկամուտները և կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների աշխատանքի վարձատրությունը: Այդ ամենն իր արտահայտությունը գտավ գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի, սննդամթերքներով երկրի բնակչության մատակարարումը բարելավելու, ինչպես նաև գյուղական կյանքի սոցիալական վերափոխման և քաղաքի ու գյուղի աշխատանքի պայմանների ու կենսամակարդակի մերձեցման մեջ: Գյուղատնտեսության առաջընթացի ասպարեզում հաջողությունները որոշակի են նաև մեր հանրապետությունում:

1975 թ. դեկտեմբերի 14-ին մամուլում հրապարակվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը: Այդ խորապես գիտական, համակողմանիորեն մշակված փաստաթղթում, որ ներկայացվելու է կուսակցության XXV համագումարի քննարկմանը, ասված է. տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ հետևողականորեն իրականացնել կոմունիստական կուսակցության կուրսը՝ բարձրացնելու ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման ու նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա:

Նոր հնգամյակի գլխավոր խնդիրը հաջողությամբ լուծելու գործում վճռական նշանակություն ունի գյուղատնտեսական արտադրության անշեղ աճը, քանի որ ժողովրդական տնտեսության այդ ճյուղի հումքով արտադրվող սննդամթերքներին և ժողովրդական սպառման մյուս ապրանքներին բաժին է ընկնում երկրի մանրածախ ապրանքաշրջանառության 70 տոկոսից ավելին, իսկ ապրանքաշրջանառությունը, ինչպես հայտնի է, ժողովրդի բարեկեցության մակարդակի առավել որոշիչ ցուցանիշներից մեկն է:

Արդի պայմաններում գյուղատնտեսության հեռանկարային զարգացման հարցերի լուծման գործում մեծ դեր ունի պրոգնոզավորումը: Այն թույլ է տալիս կանխանշելու այդ ճյուղի պլանային լուծումների ռեալ հնարավորություններն ու դրա արտադրաուժերի զարգացման վրա ակտիվորեն ներգործելու ուղիները: Ընդսմին, հարկավոր է նկատի ունենալ, որ գյուղատնտեսության զարգացման ճիշտ, առավել արդյունավետ ուղիների ընտրությունը կապված է որոշ դժվա-



րությունների հետ, որոնք պայմանավորված են գյուղատնտեսության վրա բնական գործոնների ազդեցությամբ և գյուղատնտեսական արտադրանքի տեսակների մեծ բազմազանությամբ:

Գյուղատնտեսության զարգացման պրոգնոզավորումն առանձնապես բարդ է Հայաստանում, քանի որ հանրապետության համեմատաբար ոչ մեծ տարածքում խիստ արտահայտված ուղղահայաց զոնայականության հետևանքով ստեղծվել են կլիմայական, հողային և այլ պայմանների հազվագյուտ բազմազանություն ու բարդ զուգակցություն: Բնական պայմանները, հասկանալի է, չէին կարող էականորեն չազդել հանրապետության գյուղատնտեսական արտադրության զարգացման ու պրոֆիլի ձևավորման վրա:

Հայաստանի գյուղատնտեսության կարևոր առանձնահատկություններից մեկն էլ նրա սակավահողությունն է: Բարձրադիր, լեռնային ռելիեֆի կտրտվածության և սակավաջրության պատճառով հանրապետության տարածքի 18,5 տոկոսն է միայն օգտագործվում վարելահողի ու բազմամյա տնկարկների համար: Գյուղատնտեսության մեջ օգտագործվող բոլոր հողատեսքերից բնակչության մեկ շնչին միջին հաշվով ընկնում է 0,47 հեկտար, որից 0,16-ը՝ վարելահող, մինչդեռ Սովետական Միությունում դրանք հավասար են համապատասխանաբար 2,5 և 0,92 հեկտարի: Հանրապետության բնակչության բավական բարձր աճի և հողային բալանսից տարբեր նպատակների համար հողատարածություններ դուրս գրելու հետևանքով վերջին 20 տարում մեզ մոտ առանձնապես կրճատվել է բնակչության մեկ շնչին ընկնող ամենակարևոր հողատեսքը՝ վարելահողը: Եթե 1953 թ. այն կազմում էր 0,43 հեկտար, 1958-ին՝ 0,31, 1971-ին՝ 0,18, ապա 1973 թ. այն կրճատվեց ու իջավ մինչև 0,16 հեկտարի: Եթե միջոցներ չձեռնարկվեն, ապա այդ ցուցանիշի անկման տեմպերը ավելի կարագանան:

Գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման համար առանձնապես լուրջ խոչընդոտ է Հայաստանի չափազանց չորային կլիման, որի հետևանքով գոտիների մեծ մասում բավական դժվար է անջրդի պայմաններում վարել քիչ թե շատ շահութաբեր գյուղատնտեսական արտադրություն:

Ուստի սակավահողության և չորայնության հետ կապված դժվարությունների հաղթահարումը ըստ էության այն հիմնականն է, որով պայմանավորվում է մեր գյուղատնտեսության ապագան:

Ուրեմն, ի՞նչ չափանիշ պետք է վերցնել որպես հիմք՝ Հայաստանում ոռոգելի հողագործության մասշտաբներն ու զարգացման տեմպերը ճիշտ որոշելու և նոր հողերը գյուղատնտեսական ակտիվ շրջանառության մեջ ներգրավելու համար: Այս հարցին պատասխանելուց առաջ հարկավոր է, թեկուզ ամենաընդհանուր գծերով, անդրադառնալ հանրապետության ջրային տնտեսության արդի վիճակին: 1973 թ. Հայաստանում կար ոռոգման ցանց ունեցող 309 հազար հեկտար հողատարածություն, բայց իրականում հնարավոր էր ոռոգել միայն մոտ 270 հազար հեկտարը, քանի որ մնացած 39 հազար հեկտարը ջրազուրկ է: Նկատի ունենալով 1973—1975 թթ. համար նախատեսված ոռոգվող հողատարածության աճը, կարելի է սպասել, որ ընթացիկ տարում հանրապետությունը կունենա մոտ 300 հազար հեկտար ոռոգելի հողատարածություն: Դրանից 105 հազարը կզբաղեցվեն բազմամյա տնկարկներով, իսկ 195 հազարը՝ վարելահողերով: Այսպիսով, տասներորդ հնգամյակի սկզբին 275 հազար հեկտար վարելահող դեռևս մնալու է անջրդի: Հայտնի է, որ նման հողերում հնարավոր է ցանել գլխավորապես միայն հացահատիկային և կերային կուլտուրաներ, որոնք հանրապետության նախալեռնային ու լեռնային չոր պայմաններում, մնացած բոլոր հավասար գործոնների առկայության դեպքում, տալիս են միջին հաշվով 2—3 անգամ ավելի ցածր բերք, քան ոռոգելի հողերում: Այդ հողերի վրա երկրագործության իսկական ինտենսիվացումը հնարավոր է միայն դրանց, թեկուզ մի մասի, ոռոգման դեպքում: Ջրատնտեսական աշխատանքների ծավալը որոշելիս՝ այս հանգամանքը կարևոր չափանիշ պետք է հանդիսանա: Բացի այդ, ոռոգման միջոցով մոտակա 15—20 տարում, ակտիվ շրջանառության մեջ պետք է ներգրավել շուրջ 50 հազար հեկտար նոր

մեկ աշխատողի հաշվով, կոլտնտեսություններում և սովխոզներում առաջիկա հնգամյակում զգալիորեն կավելանա, որի շնորհիվ կկրճատվի գյուղատնտեսության աշխատողների թիվը։ Բնական է, որ դրա հետ մեկտեղ նկատելիորեն կավելանան նաև կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների եկամուտները։

Համակողմանի ինտենսիվացման կապակցությամբ, Հայաստանի գյուղատնտեսության մեջ ընդլայնված վերարտադրությունը կարող է իրականացվել գլխավորապես որակական ցուցանիշների բարձրացման՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, անասունների մթերատվության և արտադրության կառուցվածքի կատարելագործման հաշվին։ Բայց դա, իհարկե, չի բացառում նաև էքստենսիվ կարգի միջոցառումները, որոնց նպատակն է գյուղատնտեսական ակտիվ շրջանառության մեջ ներգրավել նոր հողատարածություններ, որի անհրաժեշտության մասին խոսվեց վերևում։

Արդեն նշվեց խաղողի ու պտղատու այգիների տարածություններն ընդարձակելու ցանկալի մասշտաբների մասին։ Կարծում ենք, որ դաշտային կուլտուրաներից զգալիորեն պետք է ընդլայնվեն բանջարա-բոստանային, կարտոֆիլի, կերի և խորդենու ցանքսերը։ Այդ կուլտուրաների ցանքսերի ընդլայնումը և բերքատվության բարձրացումը պետք է իրականացվեն այն հաշվով, որ առաջիկա տարիներին հանրապետությունում ապահովվի բանջարա-բոստանային կուլտուրաների և կարտոֆիլի սպառումն ամենաօպտիմալ նորմաներով՝ բանջարեղենի արդյունաբերական վերամշակման ծավալի շեշտակի բարձրացմանը զուգընթաց։ Միաժամանակ այդ միջոցառումը պետք է անասնապահությունն ապահովի կոշտ և հյութալի կերով։

Անասնապահության բնագավառում կերային բազան ամեն կերպ ամրապնդելու հետ միաժամանակ պետք է լուրջ ուշադրություն նվիրել հոտի կառուցվածքի, ցեղային կազմի բարելավմանը, արդյունաբերական եղանակով անասնապահական արտադրանք տվող տնտեսությունների ցանցի ընդլայնմանը։

Նկատի ունենալով հանրապետությունում մեկ հեկտար հողատարածության վրա խոշոր եղջերավոր անասունների և ոչխարների գլխաքանակի բարձր խտությունը, որը մի քանի անգամ գերազանցում է Միության միջին ցուցանիշերը, դրանց գլխաքանակի աճը պետք է նախատեսել խիստ չափավոր սահմաններում, դիֆերենցված ըստ շրջանների ու տնտեսությունների։ Զգալի աճ պետք է նախատեսել կովերի համար, այն հաշվով, որ դրանց տեսակարար կշիռը նախիրում, առաջիկա տարիներին հասնի մինչև 55—60, իսկ մերձքաղաքային գոտիներում՝ 80 տոկոսի։

Տասներորդ հնգամյակում խիստ անհրաժեշտ է կառուցել խոշոր եղջերավոր անասունների մատղաշն աճեցնող, կաթ արտադրող և ցեղային երինջներ բազմացնող պետական ու միջտնտեսային համալիրներ, առանց որի հնարավոր չէ ապահովել տավարի մսի և կաթի արտադրության ինտենսիվացումը։

Այսուհետև ևս անհրաժեշտ է մեծ ուշադրություն հատկացնել թռչնաբուծության ու խոզաբուծությանը։ Հարկավոր է ամենաարագ տեմպերով ինդուստրացնել այդ ճյուղերը, հասնել այն բանին, որ տարեցտարի մսի ընդհանուր արտադրության աճի մեջ մեծանա դրանց տեսակարար կշիռը։

---

# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ՝ ԲՈԼՈՐ ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

Թ.՝ Ց. ՍԱՐՈՅԱՆ
ՀԿԿ Արթիկի շրջկոմի առաջին քարտուղար

ԱՎԱՐՏՎԵՑ ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԸ, հրապարակի վրա է «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» կուսակցության XXV համագումարին ներկայացվող ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը, որը գործողության ուղեցույց է մեզ համար նոր՝ տասներորդ հնգամյակում։ Ուսումնասիրելով ու քննարկելով այդ փաստաթուղթը, այժմ մենք հետադարձ հայացք ենք ձգում շրջանի կուսակցական ու տնտեսական կազմակերպությունների՝ անցած հնգամյակում ծավալած գործունեության վրա, արժեքավորում մեր հաջողությունները, անում անհրաժեշտ հետևություններ, որոշում նոր՝ տասներորդ հնգամյակի խնդիրները։ Կուզեի լուծված ու լուծման կարոտ խնդիրների, նոր պրոբլեմների առնչությամբ շոշափել մի շատ կենսական հարց՝ ամուր, գիտակցական կարգապահության հարցը, որը հույժ անհրաժեշտություն է տնտեսական ծրագրի իրականացման, մարդկանց ստեղծագործական ունակությունների զարգացման, անհոգության և անտարբերության դեմ պայքարելու համար։

Քննարկվող հարցի առումով արդյունավետ գործունեության լավ օրինակ կարող է ծառայել Տուֆաշենի սովխոզը։ Հնգամյակի տարիներին այս տնտեսությունը մեծ վերելք ապրեց, հաջողությամբ կատարեց պետական պլանները, հնգամյա պլանից դուրս պետությանը հանձնեց մեծ քանակությամբ կաթ, միս, բուրդ և հացահատիկ։ Ընդ որում, տուֆաշենցիները հնգամյակի բնագծերը մի քանի ցուցանիշներով նվաճեցին ժամկետից շուտ և, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ապահովեցին ինչպես գյուղատնտեսական մթերքների արտադրության, այնպես էլ անասունների գլխաքանակի մեծ աճ։

Ինչո՞վ բացատրել Տուֆաշենի սովխոզի հաջողությունները։ Ես կասեի, առաջին հերթին, այնտեղ հաստատված ամուր, գիտակցական կարգապահությամբ։ Կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Գ. Մելքոնյան) և տնտեսության ղեկավարները մշտապես զբաղվում են կուսակցական և պետական կարգապահության ամրապնդմամբ։ Կուսբյուրոն հասել է նրան, որ արտադրության յուրաքանչյուր ճյուղի ղեկավար, յուրաքանչյուր կոմունիստ ամենայն պատասխանատվությամբ է վերաբերվում իր պարտականությունների կատարմանը։ Կուսբյուրոյի նիստերում և կուսժողովներում պարբերաբար քննարկվում են տնտեսության վերելքին նպաստող բազմաբնույթ հարցեր։ Ընդ որում, շեշտը դրվում է գիտության նորագույն նվաճումները և առաջավոր փորձը ինչպես դաշտավարության, այնպես էլ անասնապահության մեջ արմատավորելու, սոցմրցության արդյունավետությունն ապահովելու վրա։

Մեծ է կոմունիստի անձնական օրինակի դերը արտադրության այս կամ այն բնագավառում ամուր կարգապահություն ստեղծելու առումով։ Եթե նա, ինչպես և ընդհանրապես յուրաքանչյուր ղեկավար աշխատող, պահանջկոտ է իր նկատմամբ, պատասխանատվությամբ է վերաբերվում իր գործին, ապա դրանով իսկ գիտակցական կարգապահության լավ օրինակ է տալիս։ Հենց այդպի-

սին է սովխոզի դիրեկտոր Նահապետ Մխիթարյանը։ Ութ տարի է, ինչ նա ղեկավարում է այս տնտեսությունը և այդ ողջ ժամանակամիջոցում կազմակերպական աշխատանքի իր ամբողջ եռանդը, գիտելիքներն ու հմտությունը ի սպաս է դրել արտադրության մարդկանց դաստիարակության, սովխոզի առջև ծառացած խնդիրների իրականացման գործին։

Տուֆաշենի սովխոզի օրինակը եզակի չէ։ Արտադրության բոլոր օղակներում պատշաճ կարգ ու կանոն սահմանելու, մարդկանց պատասխանատվության բարձր զգացումով տոգորելու շնորհիվ անցած հնգամյակում լուրջ հաջողություններ են ձեռք բերել նաև Հայրենյաց, Անուշավան, Փանիկ, Լուսակերտ, Հոռոմ, Սարատակ գյուղերի կոլտնտեսությունները, Արթիկի ու Մանթաշի սովխոզները։ Դրանով պետք է բացատրել, որ շրջանը շատ ցուցանիշներով կատարեց իններորդ հնգամյակի պետական առաջադրանքները։ Մեր տնտեսությունները հնգամյա պլանից ավելի են մթերել մոտ 4.000 տոննա հացահատիկ, 2.517 ցենտներ կաթ, 3.000 ցենտներ միս, 19 ցենտներ բուրդ։ Իններորդ հնգամյակի պլանները, ամբողջությամբ վերցրած, կատարեցին արդյունաբերության աշխատողները։

Սակայն պետք է խոստովանել, որ հաջողություններն ավելին կլինեին, եթե բոլոր կուսկազմակերպությունները ծավալեին արդյունավետ գործունեություն, հետևողականորեն կատարեին կարգապահության ամրապնդման և արտադրության զարգացման վերաբերյալ կուսակցության XXIV համագումարի պահանջները։ Այս առումով, անցած հնգամյակի տարիներին ունեցել ենք լուրջ թերություններ և թերացումներ։

Կարգապահությունը լայն հասկացություն է, մի բարդ շղթա, որը ներառնում է հանրային արտադրության բոլոր ոլորտները, կազմակերպական, տնտեսական ու քաղաքական գործունեության բոլոր կողմերը։ Այդ համակարգում որոշակի տեղ ունի պլանային և կատարողական կարգապահությունը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումը արդյունաբերության բնագավառում գլխավոր թերություններից մեկը համարեց կուսակցական, պետական և պլանային ցածր կարգապահությունը և դատապարտեց այն միտումը, երբ «...առանձին մինիստրություններ, գերատեսչություններ և տնտեսական ղեկավարներ, փոխանակ կազմակերպչական անհրաժեշտ աշխատանքով ապահովելու պլանային առաջադրանքների կատարումը, բռնում են պլանները նվազեցնելու նպատակով դրանց մեջ անհիմն ճշգրտումներ մտցնելու արատավոր ուղին, որով ստեղծում են խաբուսիկ բարեհաջողության պատրանք»։ Նման փաստեր կան նաև մեր շրջանում։ Իններորդ հնգամյակում մեր մի շարք ձեռնարկություններ, համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների համաձայնությամբ, ընդունել են այնպիսի առաջադրանքներ, որոնք չեն բխել ռեալ հնարավորություններից և չեն համապատասխանել արդյունաբերության զարգացման հնգամյա պլանի խնդիրներին։ Եվ ահա հետևանքը. իններորդ հնգամյակի դիրեկտիվների համաձայն, 1975 թ. արդյունաբերության համախառն արտադրանքի աճը, 1970 թ. համեմատությամբ, պետք է կազմեր 62,4 տոկոս, մինչդեռ փաստացի աճը պլանային առաջադրանքից ետ էր մնում 42,4 տոկոսով։ Դրա պատճառներից մեկն այն էր, որ առանձին մինիստրություններ և գերատեսչություններ, փոխանակ լուծելու տեխնիկական վերազինման, նյութատեխնիկական մատակարարման, արտադրական հզորությունների ընդլայնման, կապիտալ ներդրումների իրացման խնդիրները, զբաղվել են պլանների, այսպես կոչված, ճշգրտումներով և նվազեցրել են դրանք, քանի որ, ըստ նրանց, իջեցված պլանների կատարումը ավելի հեշտ գործ է, քան տեխնիկատնտեսական միջոցառումների իրականացումը։ Հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը, օրինակ, 1971—1975 թթ. սիստեմատիկաբար նվազեցրել էր իր ենթակայության ձեռնարկությունների պլանները, որի հետևանքով շրջանի շինանյութեր արտադրող երեք ձեռնարկությունների («Արթիկտուֆ» կոմբինատ, Պեմզաշենի հանքավարչություն, տուֆաբլոկների գործարան) համախառն արտադրանքի պլանը հնգամյակի եզրափակիչ տարում կազմեց 9 միլիոն 175 հազար ռուբլի՝ 11 միլիոն 330 հազար ռուբլու փոխարեն։ «Արթիկտուֆ» կոմբինատը, տուֆաբլոկների գործարանը, արտադրատեսակների փոփոխության և արտադրության աճին համապատասխան, չեն հագեցել նոր մեքենասարքավորումներով, իսկ եղածն էլ հասել է ինչպես ֆիզիկական, այնպես էլ բարոյական մաշվածության աստիճանի, դարձել ցածր արտադրողական։ Աննշան գործ է արվել նաև աշխատատար պրոցեսների մեքենայացման նպատակով, անմխիթար են բանվորների աշխատանքային պայմանները, արտադրական սանիտարիայի վիճակը։ Տուֆաբլոկների գործարանում սկզբնական շրջանում նախատեսվել էր արտադրել այնպիսի բլոկներ, որոնք երաշխավորվել էին նախագծային ինստիտուտների կողմից։ Մինչդեռ հետագայում հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը հանձնարարեց նոր արտադրատեսակներ, տարբեր տիպի պանելներ՝ դրանք չհամաձայնեցնելով նախագծային ինստիտուտների հետ։ Այսպիսով, ձեռնարկությունը արտադրանքի իրացման հարցում կանգնել էր լուրջ դժվարությունների առջև։ Գործարանի կարողությունը հիմնական արտադրատեսակի՝ բլոկների արտադրությամբ տարեկան կազմում է 109 հազար խմ, մինչդեռ առավելագույն պլանը 1975 թ. 60 հազար խմ էր։ Ընդ որում, արտադրանքի միայն 50 տոկոսի չափով էր լուծված իրացման հարցը, իսկ մնացածի համար որոշակիորեն չէր պարզված, թե ո՛ր կազմակերպությունները պետք է իրացնեն, որքա՛ն է նրանց պահանջարկը այդ արտադրանքի նկատմամբ։ Եվ միանգամայն օրինաչափ էր, որ տուֆաբլոկների գործարանի կոլեկտիվում ակտիվ մթնոլորտում անցավ «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի քննարկումը։ Ջերմորեն հավանություն տալով այդ պատմական փաստաթղթին՝ արտադրության մարդիկ արեցին ձեռնարկության առաջընթացի շահերից բխող մի շարք հետաքրքրական առաջարկություններ։ Նրանք մասնավորապես առաջարկեցին ներդնել տեխնոլոգիական ժամանակակից եղանակներ և գործարանն աշխատեցնել լրիվ կարողությամբ։ Հարց բարձրացվեց շինանյութերի արդյունաբերության մինիստրության առջև՝ թողարկվող արտադրատեսակները պլանավորել ըստ նախագծային ինստիտուտների երաշխավորությունների։

Արդյունաբերության ասպարեզի թերություններից մեկն էլ այն է, որ առանձին ձեռնարկություններում, օրինակ, վակուումային էլեկտրավառարանների գործարանում, հաճախ, նյութատեխնիկական անբավարար մատակարարման հետևանքով, արտադրության կազմակերպումը կրում է գրոհային բնույթ։ «Գլավէլեկտրապեչ» վարչությունը չի լուծում գործարանի արտադրական կարիքների համար սահմանված քանակությամբ պողպատաթերթ հատկացնելու հարցը։ Օրինակ, 1975 թ. առաջին եռամսյակում, 150 տոննայի փոխարեն, հատկացրել էր 80 տոննա, որից 63-ը ստացվել էր մարտի վերջերին։

Այս ամենը, անշուշտ, բացասաբար են անդրադառնում արտադրական ծրագրի կատարման, աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի վրա։

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1975 Թ.. ՀՈՒՆՎԱՐՅԱՆ ԵՎ ՀՈՒԼԻՍՅԱՆ պլենումները կուսակազմակերպություններից և տնտեսական ղեկավարներից պահանջեցին պլանային և կատարողական կարգապահությունը դնել ամուր հիմքերի վրա, հանայն և կատարողական կարգապահությունը դնել ամուր հիմքերի վրա, համամասնություն սահմանել պլանավորման, մատակարարման ու իրացման միջև, պլանային առաջադրանքներին համապատասխան, արտադրությունը հագեցնել անհրաժեշտ մեքենասարքավորումներով, ապահովել ձեռնարկությունների համաչափ, հստակ աշխատանքը։ Սրանք ընդհանուր առմամբ մեր ժողտնտեսության զարգացման շահերից բխող խնդիրներ են, որոնց առանձնակի ուշադրություն է նվիրել ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը և որոնք արծարծվել են «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում։

ցության XXV համագումարին ներկայացվող նախագիծը խնդիր է դնում ավելացնել հանրային անասունների գլխաքանակը, ապահովել անասնապահական մթերքների զգալի աճ, և մեր գլխավոր հոգսը պետք է լինեն նոր հնարավորությունների ու ռեզերվների հայտաբերումն ու արդյունավետ օգտագործումը ինչպես անասնապահության, այնպես էլ բուսաբուծության ասպարեզում: Մեզ համար պետք է գործողության ուղեցույց լինի նախագծի հետևյալ ծրագրային դրույթը. «Գյուղատնտեսության հիմնական խնդիրն է՝ ապահովել գյուղատնտեսական արտադրության հետագա աճն ու մեծ կայունությունը, ըստ ամենայնի բարձրացնել հողագործության և անասնապահության արդյունավետությունը՝ սննդամթերքների նկատմամբ արդյունաբերության պահանջմունքները ավելի լրիվ բավարարելու, գյուղատնտեսական արտադրանքի պետական անհրաժեշտ ռեզերվներ ստեղծելու համար»:

Գաղտնիք չէ, որ գյուղատնտեսության արդյունավետության բարձրացումը իր մեջ ամփոփում է միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս, այդ թվում՝ դաշտավարության և անասնապահության աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում, ոռոգելի ցանքատարածությունների ընդարձակում, ջրարբիացում, նոր հողերի յուրացում, կուլտուր-տեխնիկական աշխատանքների ընդարձակում, բարձր բերքատու նոր սորտերի ներդրում, հողի մշակության կուլտուրայի բարձրացում, ռացիոնալ և գիտականորեն հիմնավորված պարարտացում, անասունների ցեղի բարելավում: Հսկայական կարևորություն է ստանում արդյունաբերական եղանակով գյուղատնտեսության վարումը՝ միջտնտեսային ձեռնարկությունների կազմակերպմամբ և այլ ուղիներով: Պլանավորվում է, ելնելով մեր շրջանի հնարավորություններից, նոր հնգամյակում տնտեսությունների բազայի վրա կազմակերպել տոհմային երինջների աճեցման, ինչպես նաև մատղաշների ինտենսիվ բտման միջտնտեսային ձեռնարկություններ: Անասնապահության զարգացման նպատակով կընդարձակենք կերային կուլտուրաների ցանքատարածությունը, կավելացնենք նոր կերատեսակների արտադրությունը, մեր ուշադրության կենտրոնում կլինի բուսաբուծության վերելքը:

Նոր հնգամյակում նշված և այլ միջոցառումների, ինչպես և գյուղատնտեսության հետագա կենտրոնացման ու մասնագիտացման ճանապարհով զգալիորեն կաճի անասնապահական և բուսաբուծական մթերքների արտադրությունը: Պլանավորող կազմակերպությունների հետ միասին լուրջ ուշադրություն կնվիրենք արտադրության գիտականորեն հիմնավորված պլանավորմանը: Գյուղատնտեսության գլխավոր կամ հիմնական ճյուղերի (բուսաբուծության, անասնապահության) արտադրությունը պլանավորելիս՝ ելակետը կլինի եղած ռեզերվների ու հնարավորությունների առավելագույն օգտագործումը գիտատեխնիկական առաջընթացի ժամանակակից պահանջներին համապատասխան: Մենք հաշվի կառնենք «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի քննարկման ընթացքում աշխատավորների արած արժեքավոր առաջարկությունները: Ուշադրության արժանի են, օրինակ, Փանիկի կոլտնտեսականների նկատառումները: Նրանք առաջարկեցին մասնագիտացնել գյուղատնտեսական արտադրությունը, լուծել տնտեսությունը Կառնուտի ջրամբարի ջրով ապահովելու հարցը, համամասնություն մտցնել անասունների գլխաքանակի և կերարտադրության հնարավորությունների միջև:

ՆՈՐ, ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ զարգացման լայն հեռանկարներ են բացվում նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի առջև: Վճռական քայլեր կարվեն արդյունաբերության առաջընթացի ճանապարհին: Նախատեսվում է կառուցել վակուումային էլեկտրավառարանների գործարանի նոր կարողությունները՝ 8.000 քմ արտադրական տարածությամբ, գործարկել Երևանի «Հիդրոհաղորդակ» գործարանի Պեմզաշենի մասնաճյուղը, 1977 թ. սկսել երեսպատման սալիկների արտադրության կոմբինատի շինարարությունը՝ տարեկան 1,5 միլիոն քառակուսի մետր կարողությամբ: Կընդլայնվեն Լենինականի տեքստիլ կոմբինատի Արթիկի մասնաճյուղի արտադրական կարողությունները: Նոր հնգամյակի տարիներին արդյունաբերական ձեռնարկություններում կիրականացվեն տեխնիկա-տնտեսական բազմաթիվ միջոցառումներ՝ մեքենայացման ու ավտոմատացման մակարդակը բարձրացնելու, նյութատեխնիկական մատակարարումները կարգավորելու, բանվորների աշխատանքային պայմանները բարելավելու, արտադրության հստակությունն ու համաչափությունն ապահովելու համար:



Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, հանգամանորեն ուսումնասիրելով «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը, ամեն կերպ ձգտում են չկրկնել անցյալի այն սխալը, երբ տնտեսական միջոցառումների իրականացմանը հաճախ չէին նախորդում գործիմաց, գիտական խոր վերլուծությունն ու տնտեսական հիմնավորումը: Մեզ համար հասկանալի է, որ նոր հնգամյակի խնդիրները կարելի է լուծել իրենց պարտականությունների կատարման նկատմամբ մարդկանց պատասխանատվությունն ըստ ամենայնի բարձրացնելու, կուսակցական-կազմակերպական ու քաղաքական աշխատանքը արմատապես բարելավելու միջոցով: Դրանով իսկ հնարավոր կլինի արտադրության, մեր գործունեության բոլոր բնագավառներում ստեղծել գիտակցական, ամուր կարգապահություն, որն ամեն մի հաջողության լավագույն նախապայման է: Մեր առջև ծառացած խնդիրների լուծման գործում մեզ համար ուղեցույց է Արթիկի կուսշրջկոմի գործունեության վերաբերյալ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի 1974 թ. մայիսի 28-ի որոշումը: Այդ որոշմամբ նշված են շրջանի կուսկազմակերպության աշխատանքի թերությունները, դրանց վերացման գործնական ուղիները:

Կուսակցության XXV համագումարին ներկայացվող ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի քննարկման ժամանակ սկզբնական կուսկազմակերպությունները արծարծում են հանրային արտադրության արդյունավետության բարձրացման հարցերը, ունեցած հնարավորությունների և ռեզերվների հիման վրա վերանայում տասներորդ հնգամյակի իրենց խնդիրները, որոշում դրանց լուծման կոնկրետ ուղիները: Քննարկումների ժամանակ հույժ կարևորվում է արտադրական ծրագրի կատարման գործում բոլոր օղակներում կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման դերը: Մեր պարտքն է՝ մշտապես հիշել «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի այն պահանջը, որ հարկավոր է տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում հաստատել աշխատանքի իսկական կուսակցական ոճը, բարձրացնել բոլոր աշխատողների պատասխանատվությունը պլանային առաջադրանքների կատարման համար, ամրապնդել կարգապահությունը, բարելավել կատարման ստուգումը: Կուսակցության նոր պահանջների հետևողական և բարեխիղճ իրականացմամբ միայն մենք կարող ենք տասներորդ հնգամյակը դարձնել իրոք արդյունավետության, որակի և ժողովրդի բարեկեցության հետագա աճի հնգամյակ:

# ՌԵԳԻՈՆԻ (ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ) ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՐՑԵՐԻ ՇՈՒՐՋ

**Ա. Ս. ԳՅՈՒՐՋՅԱՆ**

ՌԵԳԻՈՆԻ ՇՐՋԱՆԱԿՆԵՐՈՒՄ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ առաջընթացի (ԳՏԱ) կառավարման հարցերն արծարծելիս անհրաժեշտ է, ամենից առաջ, վերլուծել դրան ներհատուկ առանձնահատկությունները: Կարելի է մեկից նշել, որ դրա հիմնական տարբերությունն ավելի բարձր մակարդակով՝ համապետական մասշտաբով, անցկացվող համանման միջոցառումներից, ոչ այնքան կենսագործվելիք խնդիրների չափերն են, որքան ամեն մի ռեգիոնին բնորոշ որակապես նոր պայմանները, խնդիրները, հնարավորություններն ու պահանջմունքները:

Գիտատեխնիկական զարգացման ռեգիոնալ ուղղության անհրաժեշտության մասին նշված է Վ. Ի. Լենինի Հեգելի «Տրամաբանության գիտություն» գրքի կոնսպեկտը աշխատությունում. «Մեխանիկական և քիմիական տեխնիկան,— գրել է Վ. Ի. Լենինը,— հենց այն պատճառով էլ ծառայում է մարդու նպատակներին, որ նրա բնույթը (էությունը) որոշվում է արտաքին պայմաններով (բնության օրենքներով)»[1]:

Ներկայումս, երբ հատուկ ուշադրություն է նվիրվում ԳՏԱ-ի արագացմանը և դրա հիման վրա հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը, երբ անընդհատ մեծանում են ներդրումները գիտության և գիտական հետազոտությունների ու մշակումների (ԳՀՄ) ոլորտում, առանձնահատուկ նշանակություն են ստանում ԳՏԱ-ի կառավարման գիտականորեն հիմնավորված մեթոդներ ստեղծելու հարցերը: «Արդի աշխարհում գիտությունն ու տեխնիկան դարձել են երկու հակադիր սոցիալ-տնտեսական սիստեմների մրցակցության կարևորագույն պլացդարմ: Այստեղ երկարատև և համառ պայքար է սպասվում: Գիտության ներդրումը հասարակական կյանքի տարբեր բնագավառներում, գիտատեխնիկական առաջընթացի հետևողական լիակատար օգտագործումը տնտեսության արագընթաց զարգացման ու հասարակության բոլոր անդամների պահանջմունքների բավարարման համար՝ կարևորագույն տնտեսական ու քաղաքական խնդիր է»[2]: Ռեգիոնալ առանձնահատկությունների հաշվառումը ԳՏԱ-ի կառավարման կարևորագույն բաղադրամասերից մեկն է: Հենց ռեգիոնն է այն տնտեսական միավորը, երկրի ժողովրդական տնտեսության որոշակի բովանդակալից ամբողջականություն ունեցող մասը, որը և կազմում է ժողտնտեսության տարբեր բնագավառների և մակարդակների գործունեության ոլորտը: Ուստի, հատուկ սրությամբ ծառանում է այդ մարդկանց պահանջմունքների ավելի լիակատար հաշվառման և բավարարման հնարավորության հարցը:

1857—1859 թթ. տնտեսագիտական ձեռագրեր-ում Կ. Մարքսը գրել է՝ «Վերարտադրության բուն ակտում փոփոխվում են ո՛չ միայն օբյեկտիվ պայմանները, ինչպես օրինակ, գյուղը դառնում է քաղաք, մացառուտները՝ մա-



քրրված դաշտ և այլն, այլև փոփոխվում են իրենք՝ վերարտադրողները, իրենց մեջ նոր հատկություններ մշակելով... ստեղծելով նոր ուժեր և նոր պատկերացումներ, շփումների նոր եղանակներ, նոր պահանջմունքներ և նոր լեզու»[3]: Վ. Ի. Պավլյուչենկոն այդ առթիվ գրում է՝ «Գիտատեխնիկական առաջընթացը մյուս բոլոր տնտեսական ռեսուրսներից արմատապես տարբերվում է նրանով, որ միայն գիտության ու տեխնիկայի առաջընթացն է ստեղծում նոր հասարակական պահանջմունքներ: Պահանջմունքների էվոլյուցիան տեղի է ունենում մարդկային գիտելիքների և արտադրության մեջ դրանց նյութականացման աճի հետևանքով: Գիտատեխնիկական առաջընթացը փոփոխում է հասարակական պահանջմունքների առկա կառուցվածքը, նորություններ մտցնում, վերափոխում, երբեմն էլ վերացնում է հին, ավանդույթային պահանջմունքները: Ոչ մի այլ տնտեսական ռեսուրս ի վիճակի չէ նոր պահանջներ կյանքի կոչել: Այդ իմաստով գիտատեխնիկական առաջընթացը եզակի ժողովրդատնտեսական ռեսուրս է»[4]: Այդ գրույթը ուշադրություն է հրավիրում, առնվազն, երկու հանգամանքի վրա՝ նոր պահանջմունքների առաջացման հաշվառում այլ պահանջմունքների բավարարման պրոցեսում և, երկրորդ, որը կարելի է դիտել որպես առաջինի հետևանք, բարձր շարժունակ պահանջմունքների հաշվառում, հատկապես գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում: Այդ հանգամանքները հրատապ են դարձնում ժողովրդատնտեսական պահանջմունքների սահմանումը, կանխատեսումը, պահանջմունքներ, որոնք պետք է բավարարվեն գիտատեխնիկական զարգացման ողջ ընթացքում:

Կազմակերպական համակարգերի կառավարման, այդ թվում՝ նաև ԳՏԱ-ի կառավարման նկատմամբ սիստեմային մոտեցման հիմնական սկզբունքներին համապատասխան, կարևոր պահանջներից մեկը պետք է համարել կառավարման պրոցեսի լրիվ ցիկլի նկարագրությունը՝ գիտատեխնիկական պրոբլեմի նախատեսումից մինչև դրա լիակատար լուծումը: «ԳՏԱ-ի լրիվ ցիկլ» ասելով պետք է նկատի ունենանք այն միջոցառումների ամբողջությունը, որոնք ապահովում են ինչ-որ մեքենաներ, նյութեր, տեխնոլոգիական պրոցեսներ, համակարգեր (ՄՆՏՀ) ստեղծելու վերաբերյալ մտահղացման ընթացքը՝ սկսած վերջինի գոյավորման փուլից, մի շարք միջակա փուլերի անցումներով, մինչև վերջնականը՝ իրական ՄՆՏՀ-ի ստեղծումն ու մարմնավորումը: Սակայն շատ դեպքերում հարկ է լինում քննարկել նաև շահագործման փուլը, որը, իրեն նախորդող փուլերի հետ մի ամբողջության մեջ, կազմում է ՄՆՏՀ-ի լրիվ կենսական ցիկլը (ԼԿՑ): Շահագործման փուլի քննարկումն անհրաժեշտ է, մանավանդ եթե նկատի ունենանք այդ փուլի առանձնահատուկ դերը ԳՏԱ-ում պահանջմունքները ձևավորելիս. այն կողմնորոշիչ է ժողովրդատնտեսական կարիքների համար գիտատեխնիկական զարգացման ուղղությունը որոշելու հարցում:

Ժողովրդատնտեսական հեռանկարները, խնդիրները, ծրագրերը, որոնց մշակմամբ և լուծմամբ հասնում ենք հասարակության զարգացման նպատակներին, կազմում են պրոբլեմների այն համալիրը, որը կարող է կողմնորոշիչ լինել ԳՏԱ-ի հիմնական տենդենցներն ու ուղղությունները որոշելիս: Այդ տենդենցների կանխորոշման հորիզոնները պայմանավորված են նպատակադրումների մասշտաբներով և մակարդակով: Հեղինակների ճնշող մեծամասնությունն այն միահամուռ կարծիքին է, թե գաղափարի ծագման պահից մինչև դրա գործնական մարմնավորման ժամանակահատվածը, խոշոր, առավել լուրջ հետազոտությունների կատարման դեպքում, կտևի մոտավորապես 12—15 տարի: Մատնանշված ժամանակավոր ձգձգումը ստիպում է փութաջանորեն մոտենալ ԳՏԱ-ի կանխատեսմանն ու պլանավորմանը և այդ կանխատեսումը փոխադարձաբար շաղկապել մի ամբողջ շարք էական՝ ժողովրդագրական, աշխատանքային, էներգետիկ, հանքա-հումքային և այլն ռեսուրսների կանխատեսումների հետ:

Ռեգիոնում գիտատեխնիկական զարգացման կառավարումը պետք է ենթարկված լինի հետևյալ հիմնական պահանջներին, որոնք կարելի է ստորաբաժանել արտաքինի և ներքինի (ռեգիոնի նկատմամբ): Նախ՝ քննարկենք արտաքին պահանջները:

օբյեկտները։ Չափազանց կարևոր է նաև լրջագույն հետազոտությունների կիրառական մշակումների և փորձնական-կոնստրուկտորական աշխատանքների վրա կատարվող ծախքերի առավել համապատասխան համամասնությունների որոշումը, մի հանգամանք, որը հնարավորություն է ընձեռում ռեգիոնի գիտատեխնիկական զարգացման պլանները նախապատրաստելիս իրականացնել ԳՀՄ-ի ֆինանսավորման աղբյուրների անհրաժեշտ համաձայնեցում։

ԳՏԱ-ի կառավարման ժամանակ հարկավոր է հաշվի առնել, որ տվյալ պրոցեսը կարող է զուգակցել ինչպես ինտենսիվ, այնպես էլ էքստենսիվ գործոններ։ Հանրահայտ է, որ ժողովրդական տնտեսության զարգացման որոշ ցուցանիշների նվաճումը ապահովվել կարող է պարզապես ի հաշիվ արտադրանքի թողարկման ծավալի մեծացման, արտադրության ընդլայնման և այլն, այն ժամանակ, երբ մյուս դիրեկտիվ ցուցանիշների նվաճումը կարող է ձեռք բերվել միայն որակապես նոր, ԳՀՄ հետագա զարգացում պահանջող ՄՏՆՀ-ներ ստեղծելու դեպքում։

Կառավարման սիստեմի կառուցման մյուս կարևոր սկզբունքը պետք է լինի զարգացման պահանջվող նպատակների հստակ առանձնացումը, դրանց նվաճման ուղիների ու փուլերի որոշումը և անհրաժեշտ միջոցների առանձնացումը՝ ձգտելով գիտական կադրերով, աշխատանքային ռեսուրսներով, անհրաժեշտ կապիտալ ներդրումներով դրանց կոմպլեքսային ապահովմանը։

Այսպիսով, հակիրճ ամփոփելով, կարելի է նկարագրել ԳՀՄ զարգացման ռեգիոնալ նպատակների ձևավորման հետևյալ ուղիները։

Առաջին՝ ժողովրդատնտեսական նպատակների, այսինքն՝ ընդհանուր-պետական, ճյուղային գիտատեխնիկական, ինչպես նաև եղած միջճյուղային ծրագրերի հաշվառում, որոնք մշակում են ռեգիոնի տերիտորիայում գտնվող գիտա-արտադրական միավորումները (ԳԱՄ). երկրորդ՝ բնակլիմայական պայմանների, նրա սոցիալ-տնտեսական ելակետային մակարդակի, ինֆրակառուցվածքի զարգացածության աստիճանի, առկա տեխնիկական միջոցների ու սիստեմների մակարդակի, ինչպես նաև տվյալ շրջանի ռեսուրսապահովվածության հաշվառումը, երրորդ՝ սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական հեռանկարային կանխատեսումների իրականացումը, մի բան, որ հնարավորություն է ընձեռում ձևավորելու ռեգիոնի արտադրաուժերի զարգացման սկզբունքը։

Այդ միջոցառումների կոմպլեքսային կիրառումը հնարավորություն կտա բավականաչափ լիովին հաշվի առնելու ողջ ժողովրդական տնտեսության շահերը և ռեգիոնին բնորոշ առանձնահատկությունները՝ ռեգիոնի գիտատեխնիկական կառավարման նպատակներն ու սիստեմները սահմանելիս։


ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

1. Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 229։
2. К 100-летию со дня рождения В. И. Ленина. Тезисы ЦК КПСС. Политиздат, 1970 г. стр. 56.
3. К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 46, ч: 1, стр: 483—484:
4. В. И. Павлюченко — Экономические проблемы управления научно-техническим прогрессом. М., «Наука», 1973 г., стр. 19.
5. ՍՄԿԿ XXIV համագումարի նյութեր, էջ 88—89։
6. Ю. М. Догаев — Экономика и научно-технический прогресс. М., «Наука», 1975. стр. 7.
7. А. С. Гюрджян, Н. И. Конков — Построение системы математических моделей управления научно-техническим прогрессом в рамках региона (союзой республики). Материалы Всесоюзного семинара «Проблемы построения АСУНТ». Душанбе, 1975, стр. 69—75.


# ՍԱՐՔԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ


Ի. Վ. ՂԱԶԱՐՅԱՆ


«Նախատեսել մեքենաշինության ոչ մետաղատար ճյուղերի՝ էլեկտրոնային, ռադիոտեխնիկական... արդյունաբերության և սարքաշինության զարգացումը»։ (Կուսակցության XXV համագումարին ներկայացվող ՍՄԿԿ Կենտկոմի նախագծից)։

Ներկայումս սարքաշինության մեջ ինտենսապես ձևավորվել է նոր ճյուղ՝ էլեկտրոնա-հաշվողական մեքենաշինությունը, որի արտադրանքն են հանդիսանում հաշվողական տեխնիկայի միջոցներն ու դրանց պահեստամասերը։ Այս ճյուղի նոմենկլատուրան լայն է և ունի արտադրանքի ինը խոշոր խումբ։ Իրենց հերթին այդ խմբերից յուրաքանչյուրը ստորաբաժանվում է ենթախմբերի։

Անջատվող արտադրություններից յուրաքանչյուրը կառավարման օբյեկտ է՝ նրանց համակենտրոնացման ու մասնագիտացման մակարդակը բարձրացնելու, գիտատեխնիկական առաջընթացի ազդեցության տակ նոր սերնդի արտադրանքի թողարկման անցնելու և նրա որակը բարձրացնելու նպատակով։ Սարքաշինության արտադրություններն իրենց հետագա զարգացման համար կարիք ունեն պլանավորման հետագա կատարելագործման միջոցների՝ ինչպես համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների մակարդակով, այնպես էլ հանրապետության պլանային մարմինների մակարդակով, որոնց տերիտորիայում նրանք գործում են։ XXV համագումարին ներկայացվող ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում նշվում է. «Պլաններում ավելի լրիվ հաշվի առնել հասարակական պահանջմունքները և նախատեսել դրանց բավարարումը աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների նվազագույն ծախսումներով»։

Հայկական ՍՍՀ սարքաշինությանը հատուկ են ՍՍՀՄ-ի սարքաշինության բոլոր հիմնական պրոբլեմները։ 1975 թվականին սարքաշինական արտադրանք թողարկող ձեռնարկությունների համախառն արտադրանքը կազմել է մեքենաշինության ավելի քան 25 տոկոսը, իսկ արդյունաբերական-արտադրական անձնակազմի թվաքանակով՝ ավելի քան 35 տոկոսը։ Իսկ մեքենաշինությունն արդեն 1971 թվականին դուրս էր եկել առաջին տեղը հանրապետության արդյունաբերության մեջ։ Հետևաբար, անհրաժեշտ է հանրապետության սարքաշինության արտադրանքի կարևորագույն տեսակների խոր ու համակողմանի վերլուծություն՝ որոշելու համար դրանց արտադրության զարգացման հեռանկարային ուղիներն ու վերացնելու այն պատճառները, որոնք խանգարում են տեխնիկա-տնտեսական ցուցանիշների մակարդակի բարձրացմանը։ Հայկական ՍՍՀ ԿՎՎ-ի տվյալների վերլուծությունը ցույց է տվել, որ հանրապետության սարքաշինության ձեռնարկությունները մասնագիտանում են արտադրանքի հետևյալ կարևորագույն տեսակների թողարկման համար. 1. սարքեր, ավ-

տոմատացման միջոցներ և դրանց պահեստամասեր. 2. Հաշվողական տեխնիկայի միջոցներ և դրանց պահեստամասեր. 3. Ժամանակի սարքեր:

Հանրապետության սարքաշինության ձեռնարկությունների պրոֆիլացումը արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության ուղղությամբ

| | 1971 թ. | 1972 թ. | 1973 թ. | 1974 թ. |
|---|---|---|---|---|
| 1. Սարքեր, ավտոմատացման միջոցներ և դրանց պահեստամասեր (մլն ռուբ.) | 52,03 | 61,4 | 69,2 | 81,7 |
| Արտադրանքի աճի տարեկան միջին տեմպերը (տոկոս.) | 18 | 18 | 12,7 | 18 |
| 2. Հաշվողական տեխնիկայի միջոցներ և դրանց պահեստամասեր (մլն ռուբ.) | — | — | 19,7 | 21,5 |
| Արտադրանքի աճի տարեկան միջին երկրաշափական տեմպերը (տոկոս.) | — | — | — | 11 |
| 3. Ժամանակի սարքեր (ժամացույցներ) (հազար հատ) | 3176,0 | 3364,0 | 3603,1 | 3989,6 |

Այսպիսով, կարելի է ասել, որ հանրապետության սարքաշինության մեջ ձևավորվել ու զարգանում է հաշվողական տեխնիկայի միջոցների նոր, խոշոր արտադրություն, որի արտադրանքի աճի տարեկան միջին տեմպերը զգալիորեն ավելի ցածր է միութենականից (1966—1975 թթ. կազմել են 32 տոկոս): Սակայն հաշվողական տեխնիկայի միջոցների մշակումն ու արտադրությունը Հայաստանում կազմակերպված են եղել արդեն 1956 թվականին, երբ ստեղծվել էր մաթեմատիկական մեքենաների Երևանի գիտահետազոտական ինստիտուտը (ԵրՄՄԳՀԻ) և նրա փորձնական արտադրությունը: Անցած ժամանակաշրջանում ԵրՄՄԳՀԻ-ի կոլեկտիվը նշանակալի ավանդ է ներդրել հայրենական էլեկտրոնային-հաշվողական մեքենաշինության զարգացման գործում, պարբերաբար մշակելով և արտադրության մեջ արմատավորելով տարբեր մակնիշների ու ընտանիքների ԷԹՀՄ-ներ, սկսած առաջին սերնդի «Արագած», երկրորդ սերնդի «Նաիրի» և «Արագած» ընտանիքների ԷԹՀՄ-ներից մինչև ՄՍ—1030-ը, ինչպես նաև բլոկներ, կառուցվածքներ ու կոմպլեկտավորող սարքեր, ստենդային սարքավորումներ և տեխնոլոգիական պրոցեսներ, որոնք անհրաժեշտ են մեքենաներ ու հավաքովի միավորներ արտադրելու համար:

Ընդլայնվում և արդիականացվում է «Էլեկտրոնիկա» սերիայի սեղանիստեղնային մեքենաների (ՍՍԷՄ) արտադրությունը: Շարք են մտել արտադրական նոր կարողություններ, որոնք թողարկում են ԷՀՄ-ներ և կոմպլեկտավորող սարքեր: Այսպիսով, Հայաստանում կան անհրաժեշտ բոլոր նախադրյալները էլեկտրոնային-հաշվողական մեքենաշինության արտադրանքի աճի ավելի բարձր տեմպերի համար: Այդ արտադրություններից բացի, իններորդ հնգամյակում հետագա զարգացում է ստացել տարբեր բաղադրամասերի, հավաքովի միավորների, ԻՍ-երի և պլաստմասսայի իրերի արտադրությունը՝ հաշվողական սիստեմների տարբեր կառուցվածքների կոմպլեկտավորման համար:

Տասներորդ հնգամյակում հետագա զարգացում կստանա հաշվողական տեխնիկայի միջոցների կոմպլեքսային արտադրության կարողությունների ընդլայնման և նոր կարողությունների գործարկման տենդենցը: Այդ արտադրության արտադրանքը արժանի տեղ կգրավի սարքաշինության արտադրանքի մեջ: Պետք է սպասել, որ սարքաշինության ձեռնարկությունները դուրս կգան առաջին տեղը հանրապետության մեքենաշինության մեջ:

Սակայն, հարկավոր է նշել, որ սարքաշինական արտադրության զարգացման դրական երևույթների հետ միասին ծագում են տեխնիկա-տնտեսական մի շարք պրոբլեմներ՝ կապված հիմնական արտադրանքի թողարկման համար



մասնագիտացված արտադրական կոմպլեքսների պլանավորման հետ: Այսպես, ՍՍՀՄ սարքաշինության արտադրությունների դասակարգման մեջ արդեն հաշվի է առնվում ուրիշ մինիստրությունների ու գերատեսչությունների արտադրանքը, որը բացասաբար է անդրադառնում մեկ ռեգիոնում գտնվող ձեռնարկությունների գործունեության վրա: Հայաստանի սարքաշինության ձեռնարկությունները բացառություն չեն: Օրինակ, հաշվողական տեխնիկայի միջոցներ մշակող և արտադրող գիտական և արտադրական ստորաբաժանումները ենթարկվում են վեց մինիստրությունների և յոթ գերատեսչությունների: Այդ ձեռնարկություններն ունեն արտադրության ներփակ ցիկլ և հիմնական արտադրությունների փոխադարձ թույլ կոոպերացում:

Յուրաքանչյուր ձեռնարկության ունիվերսալացումը հանգեցնում է մի շարք հիմնական և օժանդակ արտադրությունների կրկնորդման, թողարկվող արտադրանքի սերիականության իջեցման: Առարկայորեն ներփակ արտադրական պրոցեսները յուրաքանչյուր առանձին ձեռնարկությունում հանգեցնում են սարքավորումների ցածր արտադրողականության կոմպլեկտների օգտագործման, սարքավորումների բեռնվածության գործակցի իջեցման, աշխատանքային տեղերի և հավաքման-մոնտաժային, կարգավորման տեղամասերի աշխատանքի գիտական կազմակերպման բացակայության, որի հետևանքով ընկնում է հիմնական աշխատողների աշխատանքի արտադրողականությունն ու ձեռնարկությունների ֆոնդահատուցումը: ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների վերաբերյալ նախագծում հատուկ ուշադրություն է նվիրվում այդ պրոբլեմների լուծմանը՝ նպատակ ունենալով ապահովել հասարակական արտադրության արդյունավետության և ինտենսիվացման համակողմանի աճը, ուժեղացնել խնայողության ռեժիմը ժողովրդական տնտեսության մեջ:

Իններորդ հնգամյակում հանրապետության սարքաշինության մեջ ձևավորվել են բոլոր անհրաժեշտ հիմնական ու օժանդակ արտադրությունները՝ կոմպլեքսային ձևով բարդ արտադրանք թողարկելու համար: Աճել է ընդհանուր սարքաշինական արտադրանքի պահանջը, որի արտադրության համար անհրաժեշտ են հատուկ պայմաններ: Օրինակ, պլաստմասսայի առարկաների, պլատաների և գալվանական արտադրության արտադրանքի հարաճուն պահանջը ստիպում է լուծել դրանց համակենտրոնացման ու մասնագիտացման, համապատասխան արտածծող և մաքրիչ կառուցվածքներով ապահովելու հարցերը:

Հանրապետության սարքաշինական ձեռնարկությունների զարգացման փորձը ցույց է տալիս, որ արտադրական կարողությունների հիմնական մասը տեղաբաշխված է մայրաքաղաքում և արբանյակ քաղաքներում, ինչպես, օրինակ, Աբովյանում, Էջմիածնում, Ջրվեժում և այլն: Այստեղից հետևում է, որ հիմնական արտադրությունների կոմպլեքսային զարգացման հարցերը պետք է քննարկվեն համեմատաբար ավելի ձևավորված գիտա-արտադրական կոմպլեքսի շրջանակներում, որն իր կազմում ունի մի ամբողջ շարք հարակից արտադրություններ, որոնց համակենտրոնացման ու մասնագիտացման մակարդակը կարիք է զգում հետագա բարձրացման: Այս պրոբլեմների լուծման հետ միասին, անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել փոքր քաղաքներում և քաղաքատիպ ավաններում մասնաճյուղեր կազմակերպելու միջոցով սարքաշինական արտադրությունների հետագա զարգացմանը, ինչպես նաև տրանսպորտային խնդիրների լուծմանը: Կարևոր է նաև երկհերթ աշխատանքի կազմակերպումը:

Միջոցառումների այս ամբողջ կոմպլեքսը, որն իրականացվելու է տասներորդ հնգամյակում, իր լրիվ ու համակողմանի արտացոլումն է գտել XXV համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում:

Այսպիսով, կարելի է արձանագրել, որ իններորդ ու նախորդ հնգամյակներում հանրապետության սարքաշինության ձեռնարկություններն ստացել են

հատուկ պրոֆիլացում արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության բնագավառում: Դա նպաստում է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը և գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների արմատավորմանը:

Տասներորդ հնգամյակում անհրաժեշտ է զարգացնել ձեռք բերված հաջողությունը և գործադրել բոլոր ջանքերը՝ դիրեկտիվ մարմինների առաջադրած խնդիրների հաջող կատարման համար:

Անհրաժեշտ է նախ, որ հանրապետական պլանավորող մարմինները և սարքաշինական ձեռնարկությունները լարված ջանքեր գործադրեն՝ անպայման բարձրացնելու կարևորագույն արտադրանքների տեսակների տարեկան միջին արտադրատեմպերը: Դա առանձնապես կարևոր է հաշվողական տեխնիկայի միջոցների ու դրանց պահեստամասերի նորմալ վերարտադրությունն ապահովելու համար:

Տվյալ դեպքում անհրաժեշտ է ապահովել հաշվողական տեխնիկայի միջոցների կոմպլեքսային անխափան զարգացումը, խստորեն հաշվի առնելով այդ կոմպլեքսի հիմնական ու օժանդակ արտադրությունների կենտրոնացման ու մասնագիտացման տեխնիկա-տնտեսական վերլուծության արդյունքները:

Հարցի նման լուծումը հնարավորություն է ընձեռում՝ հասնելու արտադրության ողջ կոմպլեքսի արտադրա-տեխնոլոգիական կառուցվածքի օպտիմալացմանը, արտադրասարքերի լրիվ բեռնվածությանը, արտադրանքի որակի բարձրացմանը, նյութատեխնիկական, ֆինանսական, աշխատուժի և այլ միջոցների ռացիոնալ օգտագործմանը:

Բացի այդ, կարևոր է սահմանել, թե որչափով հնարավոր է միևնույն ձեռնարկությունում զուգակցել ընդհանուր սարքաշինական նպատակին ծառայող մեկ կամ մի քանի արտադրություններ: Երբ դա իրոք հաջող է արված, ստացվող արտադրանքը կապահովի ոչ միայն տվյալ ձեռնարկության կարիքները, այլև մի խումբ այլ ձեռնարկությունների պահանջների բավարարումը: Այսպիսով, հնարավոր կլինի ոչ միայն կենտրոնացնել, այլև առավել մասնագիտացնել դրանք և բարձրացնել ոչ միայն տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, այլև առավելապես ճշգրտել արտադրանքների ու հավաքական հանգույցների անվանացանկն ու պլանավորումը: Ինչ խոսք, որ դա թելադրում է բազմակողմանի ու խոր վերլուծել և համակցել սարքաշինական արտադրությունների ողջ կոմպլեքսի տեխնոլոգիական պրոցեսները:

Այնուհետև. կարծում ենք, որ ժամանակն է հետազոտել ու ճշտորեն սահմանել անհրաժեշտ այն կիսաֆաբրիկատների ու հումքի զանգվածները, որոնց արտադրությունը պահանջում է միակերպ (միատարր) տեխնոլոգիական պրոցեսներ: Իհարկե, դրա հետ մեկտեղ պետք է ավարտել նյութատեխնիկական մատակարարման գործի կենտրոնացումը սարքաշինության բնագավառի ծավալով:

Այս նկատառումով կատարած մեր ուսումնասիրությունից պարզվեց, որ հանրապետության էկոնոմիկայի մի քանի այլ ճյուղերում առկա են միավորներ, որոնց արտադրանքներն անհրաժեշտ են թե այսօրվա և թե վաղվա սարքաշինության համար: Օրինակ, պղնձե ու արծաթե լարերի, ալյումինի, պղնձե և այլ շերտիկների,պլաստմասսաների փոշիների, ֆերիտային նյութի, զանազան թթուների, բյուրեղների և այլ նյութերի արտադրությունը: Առանձին ջանքեր չեն պահանջվում, որպեսզի այս բնագավառում կիրառվի կոոպերացում հանրապետական մասշտաբով:

Այս և մի քանի այլ պրոբլեմների առավել խոր ու արդյունավետ լուծման համար, վերջապես, հարկավոր է կազմակերպել գիտա-արտադրական և տեխնիկա-արտադրական միավորումներ ու կոմպլեքսներ, որոնք օժտված լինեն իրենց պրոֆիլով (մասնագիտացված) պետք եղած բարդ տեխնիկա ստեղծելու և արտադրելու համար:

Համոզված ենք, որ վերոհիշյալ միջոցառումների կիրառմամբ հանրապետության սարքաշինական, ավտոմատիկ սարքերի ու հաշվողական տեխնիկայի միջոցների արտադրությունը տասներորդ հնգամյակում կավելանա 1,6—1,8 անգամ, ինչպես դա սահմանված է ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում:

# ՀԿԿ-Ն՝ ԹՎԵՐՈՒՄ

## ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

հաշվետու-ընտրական ժողովները 1975 թ. անցան նախահամագումարյան սոցիալիստական մրցության լայնորեն ծավալելու, աշխատավորական կոլեկտիվների առջև դրված խնդիրներն անթերի կատարելու, հնգամյակի եզրափակիչ տարվա բնագծերը հաջողությամբ նվաճելու նշանաբանով: Ամենուրեք հաշվետու զեկուցումներում, կոմունիստների ելույթներում, ընդունված որոշումներում ընդգծվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումների նշանակությունը, խոր ու բարերար ազդեցությունը հանրապետության հասարակական-քաղաքական ու տնտեսական կյանքի բոլոր կողմերի վրա, բոլոր օղակներում կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդման, ամենուրեք վստահված գործի նկատմամբ կադրերի պատասխանատվության բարձրացման, մեր հասարակարգին խորթ երևույթների հաղթահարման վրա:

Հայաստանի կոմկուսի XXV համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում կուսակցական փաստաթղթերի փոխանակման և անցկացման մի շարք միջոցառումների շնորհիվ հանրապետության կոմկուսի կազմը բոլոր ցուցանիշներով ենթարկվել է լուրջ փոփոխությունների, որոնք բնութագրվում են քանակական և որակական աճով, նրա շարքերի միասնության ամրապնդումով: Զգալիորեն բարձրացել է մասսաների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը, աճել է առաջավոր բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի բուռն ձգտումը՝ լինել կոմկուսի անդամ:

## ՀԿԿ ՔԱՆԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԸ

Հայաստանի կոմկուսի քանակական կազմը XXV համագումարից հետո ավելացել է 12.606, իսկ կուսակցության անդամության թեկնածուներ ընդունելու հաշվին՝ 15.893 մարդով: Կուսակցության քանակական աճը վերջին տարիներին ունեցել է հետևյալ պատկերը.

| | ՍՄԿԿ անդամներ | ՍՄԿԿ անդամության թեկնածուներ | Ընդամենը կուսակցականներ |
|---|---|---|---|
| Առ 1-ը հունվարի 1971 թ. | 126.500 | 3.853 | 130.353 |
| » 1972 թ. | 129.587 | 3.251 | 132.838 |
| » 1973 թ. | 141.442 | 3.027 | 134.469 |
| » 1974 թ. | 132.943 | 3.649 | 136.592 |
| » 1975 թ. | 135.066 | 4.381 | 139.447 |
| » 1976 թ. | 137.957 | 5.002 | 142.959 |

ՀԿԿ XXV համագումարից հետո լուրջ փոփոխություններ են կրել նաև հանրապետության քաղաքային և առանձին շրջանային կուսկազմակերպությունները:

Անշեղորեն կիրառելով կուսակցության մեջ նոր ընդունվողների խոր և բազմակողմանի ուսումնասիրման և անհատական ընտրության լենինյան սկզբունքը՝ հանրապետության կուսկազմակերպությունները ՀԿԿ XXV համագումարից հետո ընկած ժամանակամիջոցում 17.811 հոգու ընդունել են ՍՄԿԿ շարքերը որպես անդամ, իսկ 15.893-ին՝ անդամության թեկնածու: Կուսակցության շարքերն ընդունվածների մեջ են արդյունաբերության ու գյուղատնտեսության անվանի մարդիկ, արտադրության նորարարներ ու առաջավորներ, մտավորականության լավագույն ներկայացուցիչներ, որոնք բազմիցս ստուգվել են աշխատանքում և ակտիվորեն մասնակցում են կուսակցության առաջադրած խնդիրների լուծմանը: Կուսկազմակերպությունները հիմնականում աճել են ժողովրդական տնտեսության կարևորագույն տեղամասերում աշխատող առաջավոր բանվորների, գյուղացիների և սովետական մտավորականության լավագույն ներկայացուցիչների հաշվին, որոնք ակտիվորեն մասնակցում են կուսակցության առաջա-

գրած խնդիրների իրականացմանը և անմիջականորեն զբաղվում են նյութական բարիքների արտադրությամբ:

Ընդհանուր ընդունելության մեջ զգալիորեն ավելացել է բանվորների տեսակարար կշիռը, որը պարզ երևում է ստորև բերված ընդունելության տվյալներից՝ տոկոսային արտահայտությամբ.

| | ՀԿԿ XXV համագումարի նախօրյակին | ՀԿԿ XXVI համագումարի նախօրյակին |
|---|---|---|
| Ընդամենը ընդունված է ՍՄԿԿ անդամության թեկնածու | 100 | 100 |
| որից՝ բանվորներ | 46,3 | 57,7 |
| կոլտնտեսականներ | 11,1 | 8,2 |
| ծառայողներ | 40,1 | 32,0 |
| այդ թվում՝ | | |
| ինժեներա-տեխնիկական աշխատողներ | 74,7 | 79,7 |
| սովորողներ և մնացած բոլորը | 2,5 | 2,1 |

Ինչպես տեսնում ենք, ՀԿԿ XXV համագումարից հետո ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների գերակշռող մասը (65,9 տոկոս) կազմում են բանվորները և կոլտնտեսականները, մինչդեռ նախորդ հաշվետու ժամանակաշրջանում կազմել են 57,4 տոկոսը:

Կուսակցության շարքերի աճի բնորոշ գծերից է նաև այն, որ վերջին տարիներին կուսակցության շարքերն ընդունված բանվորների մեծամասնությունն աշխատում է ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերում՝ մեքենաշինության, սարքաշինության, գունավոր մետալուրգիայի, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ:

Գյուղական շրջանների կուսկազմակերպություններում ՍՄԿԿ շարքերն ընդունվածներից շատերն անմիջականորեն աշխատում են անասնապահական ֆերմաներում, դաշտավարության, այգեգործության, բանջարաբուծության մեջ, իսկ որոշ մասը մեխանիզատորներ և գյուղատնտեսության մասնագետներ են:

Դրական երևույթ է նաև այն, որ ՀԿԿ վերջին՝ XXV համագումարին նախորդած ժամանակաշրջանում հանրապետության կուսկազմակերպությունները, ընդունելություն կատարելիս, մեծ առավելություն են տվել գիտության տարբեր ճյուղերի ինժեներատեխնիկական անձնակազմին: Այսպես, եթե ՀԿԿ XXIV համագումարից հետո կուսակցության շարքերն ընդունված ծառայողների թվում ինժեներների, գյուղատնտեսների, զոոտեխնիկների, ուսուցիչների, բժիշկների և այլ մասնագետների թիվը կազմում էր 74,7, ապա ՀԿԿ XXV համագումարից հետո կազմեց 79,7 տոկոս:

ՀԿԿ XXV համագումարին հաջորդած տարիներին կուսակցության շարքերը համալրվել են մեծ թվով կանանց և առաջավոր կոմերիտականների հաշվին. 1971—1975 թվականներին ՍՄԿԿ շարքերն են ընդունվել 4.824 կին կամ բոլոր ընդունվածների 30,4 տոկոսը և 10.161 կոմերիտականներ (ընդհանուր ընդունելության 63,9 տոկոսը):

Հայաստանի կոմկուսակցությունը, իր շարքը լավագույն մարդկանցով համալրելու հետ միասին, իր շարքերը մաքրել ու մաքրում է կոմունիստի բարձր կոչումը չարդարացնողներից:

## ՀԿԿ ԿԱԶՄԸ ԸՍՏ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԶԲԱՂՄՈՒՆՔԻ

Ինչպես ասացինք, կուսակցության քանակական աճի հետ մեկտեղ, հետևողականորեն բարելավվում է նաև նրա որակական կազմը: Այդ առումով հետաքրքրական են նաև կոմունիստների տեղաբաշխման փոփոխություններն ըստ սոցիալական խմբերի: Դրանք կատարվել են նյութական արտադրության ոլորտում աշխատողներին կուսակցության մեջ ընդունելու նախապատվություն տալու շնորհիվ և նախորդ երկու համագումարների ընթացքում բնութագրվում են հետևյալ կերպ՝ արտահայտված տոկոսներով՝ կոմունիստների ընդհանուր թվի նկատմամբ:

| | Առ 1-ը հունվարի 1971 թ. | Առ 1-ը հունվարի 1976 թ. |
|---|---|---|
| Ընդամենը՝ կոմունիստներ | 100 | 100 |
| այդ թվում՝ բանվորներ | 32,7 | 36,0 |
| գյուղացիներ (կոլտնտեսականներ) | 22,8 | 20,6 |
| ծառայողներ և մնացած բոլորը | 44,5 | 43,4 |



Այսպիսով, կոմունիստների մեծ մասը (56.6 տոկոսը) բանվորներ և կոլտնտեսականներ են: Վերջին հինգ տարիներին բանվորների թիվը կոմունիստների ընդհանուր կազմում ավելացել է 8.823-ով կամ 3,3 տոկոսով:

Ծառայողների կազմում գերակշռում են մտավոր աշխատանքի մարդիկ, գիտության տարբեր ճյուղերի մասնագետներ, ինժեներներ, տեխնիկներ, գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, բժիշկներ, մանկավարժներ և ժողովրդական տնտեսության այլ մասնագետներ:

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԿԱԶՄԸ ԸՍՏ ԿՐԹՈՒԹՅԱՆ

Հայաստանի բնակչության կրթական մակարդակը ամեն տարի զգալիորեն բարձրանում է, որը և բնականաբար իր արտահայտությունն է գտնում կուսակցության անդամ-թեկնածուների կազմում:

Կոմունիստների մասնագիտական և հանրակրթական մակարդակի փոփոխություններն ունեն հետևյալ պատկերը.

| | Առ 1/1-1971 թ. | | Առ 1/1-1976 թ. | |
|---|---|---|---|---|
| | բացարձակ թվերով | տոկոսներով | բացարձակ թվերով | տոկոսներով |
| Ընդամենը՝ ՍՄԿԿ անդամներ և թեկնածուներ | 110.357 | — | 142.959 | — |
| որից ունեն՝ | | | | |
| բարձրագույն կրթություն | 33.515 | 25,7 | 44.552 | 31,2 |
| թերի բարձրագույն կրթություն | 4.262 | 3,3 | 4.289 | 3,0 |
| միջնակարգ կրթություն | 44.169 | 33,9 | 52.491 | 36,7 |
| այդ թվում՝ | | | | |
| միջնակարգ մասնագիտական | 18.268 | 14 | 25.024 | 17,5 |
| ոչ լրիվ միջնակարգ | 28.351 | 21,8 | 24.207 | 16,9 |
| տարրական | 20.056 | 15,3 | 17.420 | 12,2 |

Բարձրագույն-մասնագիտական կրթությամբ կոմունիստների թիվը վերջին հինգ տարիներին ավելացել է 11.037, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցողներինը՝ 8.349 մարդով: Ներկայումս Հայաստանի կոմունիստների կեսն ունի մասնագիտական կրթություն (71.634 մարդ կամ 50,1 տոկոսը):

Զգալի փոփոխություններ են տեղի ունեցել նաև կուսակցության անդամ և անդամության թեկնածու գիտական աշխատողների և գիտական աստիճան ունեցողների կազմում:

Առ 1-ը հունվարի 1976 թ. տվյալներով 494 կոմունիստներ ունեն գիտությունների դոկտորի և 2.812-ը գիտությունների թեկնածուի կոչում:

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԿԱԶՄՆ ԸՍՏ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՍՏԱԺԻ, ՏԱՐԻՔԻ ԵՎ ԱԶԳՈՒԹՅԱՆ

Հայաստանի կոմկուսակցության XXV համագումարից հետո նրա կազմում զգալի փոփոխություններ են տեղի ունեցել նաև ըստ կուսակցական ստաժի: Առ 1-ը հունվարի 1976 թ. մինչև 10 տարվա կուսակցական ստաժ ունեցող ՍՄԿԿ անդամների թիվը կազմում է 41.183 մարդ կամ ընդհանուրի 29,9 տոկոսը, 10—20 տարվա ստաժ ունեցողներինը՝ 39.191 կամ 28,4 տոկոս, 20—30 տարվա ստաժ ունեցողներինը՝ 25.942 կամ 18,8 տոկոս և 30-ից ավելի տարվա ստաժ ունեցողներինը՝ 31.641 մարդ կամ 22,9 տոկոս:

ՀԿԿ կազմն ըստ տարիքի ունի հետևյալ պատկերը.

| | Առ 1-ը հունվարի 1976 թ. դրությամբ | Տոկոսներով |
|---|---|---|
| Մինչև 20 տարեկան հասակ ունեցողներ | 732 | 0,6 |
| 21—25 » » » | 6.735 | 4,7 |
| 26—30 » » » | 11.029 | 7,7 |
| 31—40 » » » | 33.375 | 23,3 |
| 41—50 » » » | 40.920 | 28,6 |
| 51—60 » » » | 26.074 | 18,2 |
| 60 տարեկանից բարձր » » | 24.094 | 16,9 |

Մեր երկիրը բազմազգ սոցիալիստական պետություն է: Կյանքի բոլոր բնագավառներում, արտադրության բոլոր ոլորտներում ուս-ուսի տված աշխատում ու ստեղծագործում են եղբայրական ազգերի ներկայացուցիչները: Այդ դրական հատկանիշը բնորոշ է նաև կոմունիստական

կուսակցությանը։ Այսպես, Հայաստանի կոմկուսակցությունն առ 1-ը հունվարի 1976 թ. իր կազմում ընդգրկում է 39 ազգությունների ներկայացուցիչներ, նրանցից ռուսներ են 2.737-ը, հայեր՝ 132.627-ը, ուկրաինացիներ՝ 463-ը, բելոռուսներ՝ 73-ը, ադրբեջանցիներ՝ 5.448-ը, վրացիներ՝ 63-ը, քրդեր՝ 681-ը, հույներ՝ 336-ը, ասորիներ՝ 219-ը, հրեաներ՝ 159-ը և այլ ազգություններ՝ 153-ը։

### ԿԱՆԱՅՔ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԱԶՄՈՒՄ

Սովետական կանայք կոմունիստական հասարակարգի ակտիվ կառուցողներ են։ Նրանցից ամենաառաջավորներն ընդունվում են ՍՄԿԿ շարքերը և բեղմնավոր գործունեություն ծավալում ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։

Կանանց թիվը ՀԿԿ կազմում օրըստօրե աճում է։ Այսպես, XXV համագումարի նախօրյակին եղած 24.173-ից կոմունիստ կանանց թիվը այժմ հասել է 28.474-ի, որը հավասար է կոմունիստների ընդհանուր թվի մոտ մեկ հինգերորդին։ Այդ աճի վկայությունն է նաև այն, որ, եթե ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների մեջ 1971 թ. կար ընդամենը 777 կին կամ 26,6 տոկոսը, ապա 1975 թ. նրանց թիվը հասավ 1.240 մարդու կամ կազմեց 30,5 տոկոսը։ Մի շարք շրջանների ու քաղաքների կուսկազմակերպություններում կանանց տեսակարար կշիռը կոմունիստների ընդհանուր թվում ավելին է, քան միջին հանրապետականը։ Այսպես, օրինակ, առ 1-ը հունվարի 1976 թ. Լենինականում կանայք կազմում են 26 տոկոսը, Սպանդարյանի շրջանում՝ 28, Մեղրիում՝ 26, Մյասնիկյանի շրջանում՝ 24 տոկոսը և այլն։

### ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ժողովրդական տնտեսության մեջ կուսակցական ուժերի ճիշտ տեղաբաշխումը կուսակցական-կազմակերպական աշխատանքի կարևոր բնագավառ է և հաջողությունների լավագույն գրավական։

Բավական է ասել, որ 1976 թ. հունվարի 1-ի դրությամբ նյութական արտադրության ոլորտում աշխատող կոմունիստների տեսակարար կշիռը կազմում է ընդհանուրի 66,1 տոկոսը։

Քանակական և որակական զգալի փոփոխություններ են տեղի ունեցել նաև գյուղատնտեսության մեջ աշխատող կոմունիստների կազմում։

### ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՑԱՆՑԸ

Սկզբնական կուսկազմակերպությունները կուսակցության հիմքն են։ Նրանք բանվորներին, կոլտնտեսականներին և մտավորականությանը կապում են կուսակցության ղեկավար մարմինների հետ, կուսակցության մարտական, մոբիլիզացնող խոսքով կազմակերպում աշխատավորներին՝ երկրի առջև ծառացած բարդ խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Ուստի և Հայաստանի կոմկուսակցությունը իր XXV համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում մեծ ուշադրություն նվիրեց նաև կուսկազմակերպությունների կառուցվածքային հարցերին, որի շնորհիվ լուրջ փոփոխություններ կատարվեցին նաև այս ասպարեզում։ 1971 թ. մինչև 1976 թ. հունվարի 1-ը հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների քանակն ավելացել է 388-ով, ընդ որում, արդյունաբերական, կապի, տրանսպորտի և շինարարական կուսկազմակերպություններն ավելացել են 114-ով, իսկ սովխոզներինը՝ 103-ով։

ՀԿԿ XXV համագումարից հետո կուսակցության քաղկոմ-շրջկոմները մեծ աշխատանք են կատարել սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվությունը, մարտունակությունը բարձրացնելու և դրանք կազմակերպչորեն ամրապնդելու համար, նրանցում ավելացել են ստորին օղակները։ Այսպես, արտադրամասային կուսկազմակերպությունները, 1971 թ. համեմատությամբ, ավելացել են 376-ով, իսկ կուսակցական խմբերը՝ 1.517-ով, և առ 1/1-1976 թ. համապատասխանաբար կազմում են 2.200 և 4.606։

Սկզբնական, արտադրամասային կուսկազմակերպությունների, կուսակցական խմբերի ստեղծումը մեծ չափով նպաստում է կուսակցական ակտիվի աճին, նոր կադրերի դաստիարակմանն ու առաջքաշմանը։ Դրա վկայությունն է և այն, որ վերջին հաշվետու-ընտրական ժողովներում մոտ 26.337 կոմունիստներ ընդգրկվեցին կուսկազմակերպությունների ղեկավար կազմում. 4.980-ը կուսկազմակերպության քարտուղարներ են (որոնցից 1.373-ը՝ կին), 18.443-ը՝ կուսկոմիտեների և կուսբյուրոների անդամներ (որից 5.559-ը՝ կին)։

Հանրապետության կուսկազմակերպությունները հիմնականում ճիշտ են ընկալել ու իրագործել ՍՄԿԿ XXIV և ՀԿԿ XXV համագումարների որոշումները և ներկուսակցական հարցերը կապել գործարանների, ֆաբրիկաների, կոլտնտեսությունների, սովխոզների ու հիմնարկությունների ներքին կյանքի հետ։

Ա. Գ. ՋԱԼԻՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի կուսակցական միասնական տոմսի և վիճակագրության սեկտորի վարիչ

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՄԱՐՏԻԿՆԵՐԸ

Մ. ՆԵՉԿԻՆԱ
Ակադեմիկոս

Սովետական ժողովուրդը նշում է դեկաբրիստների ապստամբության 150-ամյակը և դրանով մեծարում ռուսական հեղափոխական շարժման սկիզբը։ Հանձինս դեկաբրիստների՝ պատմական ասպարեզ իջավ Ռուսաստանի հեղափոխականների առաջին սերունդը, հեղափոխականներ, որոնք խիզախորեն հանդես եկան ճորտատիրության և ինքնակալության դեմ։ Տալով դեկաբրիստների շարժման խոր վերլուծությունը, Վ. Ի. Լենինը ասում էր. «1825 թվականին Ռուսաստանն առաջին անգամ տեսավ հեղափոխական շարժում ցարիզմի դեմ...» (Երկեր, հ. 23, էջ 320)։

Լենինն իր աշխատություններում քանիցս գրել է դեկաբրիստների մասին։ Նրան է պատկանում շարժման դասակարգային բնութագիրը. նա հստակորեն որոշեց դեկաբրիստների տեղը այն սերունդների շարքում, որոնք փոխարինեցին միմյանց մեր երկրի հեղափոխական պայքարում, բացահայտեց նրանց պատմական նշանակությունը։

Պատահական չէ, որ Վ. Ի. Լենինը «Իսկրա» թերթի համար որպես բնաբան է ընտրել դեկաբրիստ Ա. Ի. Օդոևսկու բանաստեղծության մի տողը՝ Սիբիր՝ դեկաբրիստներին հղած Ա. Ս. Պուշկինի ձոնի նրա պատասխանից. «Կայծից բոց կբռնկի»։ Լենինը ոչ միայն շեշտեց առաջին ռուսական մարտիկների շարժման հեղափոխական բնույթը, այլև հաստատեց Ռուսաստանի հեղափոխականների սերունդների խոր կապի վերաբերյալ միտքը։ Բնաբանի տակ նա դրեց ոչ թե հեղինակի անունը, այլ մի ընդհանրացված ստորագրություն՝ «Դեկաբրիստների պատասխանը Պուշկինին», դրանով իսկ ընդգծելով ընտրված բանատողի հասարակական իմաստը։

1895 թ. դեկտեմբերին ցարական կառավարության կողմից ձերբակալված Լենինն ու նրա ընկերները կատակով իրենց «դեկաբրիստներ» էին անվանում։ Այդ բառը նրանք ընկալում էին որպես հեղափոխական ավանդույթով պսակված անուն։

1901 թ., խոսելով հեղափոխականների նկատմամբ հաշվեհարդարի փորձ կատարած ցարական բարձրաստիճան պաշտոնյաների և ազնվազարմների «ոստիկանական վարժեցման» մասին, Վ. Ի. Լենինը գրել է. «... Նրանք հիշում էին 1825 թվականի դեկտեմբերի 14-ը...»։ Հաջորդ՝ 1902 թվականին, «Ռուսական սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագրի մասին» հոդվածում նա հիշեց դեկաբրիստների մոռացված հանրապետական գաղափարների մասին։ «Մենք պետք է լայն տարածենք այն գաղափարը, որ միայն հանրապետությունում

կարող է տեղի ունենալ վճռական ճակատամարտ պրոլետարիատի և բուրժուազիայի միջև, մենք պետք է ստեղծենք և ամրացնենք հանրապետական ավանդույթը ռուսական բոլոր հեղափոխականների և ռուսական բանվորների հնարավորին չափ ավելի լայն մասսաների մեջ...»: Ընդգծելով «ստեղծել» բառը, Լենինը վկայակոչում է. «Մենք ասում ենք «ստեղծել», որովհետև ռուսական հին հեղափոխականները երբեք լուրջ ուշադրություն չէին դարձնում հանրապետության հարցին, այն երբեք «գործնական» հարց չէին համարում,— նարոդնիկները, բունտարները և ուրիշներ, այն պատճառով, որ անարխիստները արհամարհանքով էին վերաբերվում դեպի քաղաքականությունը, նարոդովոլեցները՝ այն պատճառով, որ ցանկանում էին ինքնակալությունից ուղղակի ցատկել դեպի սոցիալիստական հեղափոխությունը: Մեզ վիճակվել է (եթե չխոսենք դեկաբրիստների վաղուց մոռացված հանրապետական գաղափարների մասին), սոցիալ-դեմոկրատներին վիճակվել է մասսայի մեջ տարածել հանրապետության պահանջը և հանրապետական ավանդույթ ստեղծել ռուսական հեղափոխականների մեջ» (Հ. 6, էջ 142—143):

1906 թվականին Վ. Ի. Լենինը կրկին անդրադառնում է Ռուսաստանի ազատության առաջամարտիկներին: «Քաղաքական ճգնաժամը և օպորտունիստական տակտիկայի տապալումը» աշխատության մեջ նա տալիս է դասակարգային ճիշտ բնորոշում, խոսելով դեկաբրիստների «ազնվականական հեղափոխականության» մասին, շրջանառության մեջ մտցնելով այդ տերմինը, որը չափազանց կարևոր է ռուսական առաջին հեղափոխական շարժումը հասկանալու համար: Այստեղ էլ Լենինը նշում է ռուսական հեղափոխական շարժման հայտնի պարբերացումը, այն դիտելով որպես երեք սերունդների հերթափոխ, որոնք իրենց դասակարգային կնիքն են թողել շարժման վրա. նա մատնանշում է սկզբունքային այն տարբերությունը, որ կա «...դեկաբրիստների ազնվականական հեղափոխականության,— նարոդովոլեց սպաների ռազնոչին— ինտելիգենտական հեղափոխականության,— և զինվորների ու նավաստիների խորապես դեմոկրատական, պրոլետարական ու գյուղացիական հեղափոխականության միջև քսաներորդ դարի Ռուսաստանում» (Հ.. 11, էջ 184):

Անցնում է մոտ վեց տարի, և Վ. Ի. Լենինը դարձյալ է գրում դեկաբրիստների մասին: Հավանաբար, նրա միտքը անընդհատ աշխատում էր առաջադրված պրոբլեմի վրա՝ ռուսական հեղափոխական շարժման անցած աստիճանների, ժամանակաշրջանների, հեղափոխական սերունդների փոխադարձ կապի մասին: Եվ ահա մենք ունենք այդ թեմայի լայն բացահայտումը «Գերցենի հիշատակին» աշխատության մեջ: Մենք մոտենում ենք լենինյան մտքի հանգամանալից շարադրանքը պարունակող հույժ տեքստին, և բոլորին ծանոթ տողերը կարծես ավելի խորն են ընկալվում նրա ավելի վաղ շրջանի հիշատակումները ուսումնասիրելուց հետո, մեր առջև ցայտուն կերպով ներկայանում է լենինյան տեքստի ստեղծագործական պատմությունը: Սերունդների կապը նրա խորհրդածությունների կենտրոնում է: Ռուսական առաջին հեղափոխականների հարցը վերածվում է ավելի լայն պրոբլեմի՝ հեղափոխական պայքարի ընթացքն ու զարգացումն ամբողջապես: Եվ ահա այդ խորամիտ աշխատանքի արդյունքը. «...մենք պարզ տեսնում ենք երեք սերունդ, երեք դասակարգ, որոնք գործել են ռուսական հեղափոխության մեջ: Սկզբում՝ ազնվականներն ու կալվածատերերը, դեկաբրիստներն ու Գերցենը: Նեղ է այդ հեղափոխականների շրջանը: Շատ հեռու են նրանք ժողովրդից: Բայց նրանց գործն ապարդյուն չանցավ: Դեկաբրիստներն արթնացրին Գերցենին: Գերցենը հեղափոխական ագիտացիա ծավալեց:

Այդ ագիտացիան ընկալեցին, ընդլայնեցին, ամրապնդեցին, կոփեցին հեղափոխական ռազնոչինեցները, սկսած Չերնիշևսկուց և վերջացրած «Նարոդնայա վոլյա»-ի հերոսներով: Ավելի լայնացավ մարտիկների շրջանը, ավելի մոտ դարձավ նրանց կապը ժողովրդի հետ: «Ապագա փոթորկի երիտասարդ շտուրմաններ»— կոչում էր նրանց Գերցենը: Սակայն այդ դեռևս բուն փոթորիկը չէր:

Փոթորիկը, դա բուն մասսաների շարժումն է: Պրոլետարիատը, միակ մին-



չև վերջը հեղափոխական դասակարգը, ոտքի ելավ՝ նրանց գլուխն անցած և առաջին անգամ միլիոնավոր գյուղացիների ոտքի հանեց բացահայտ, հեղափոխական պայքարի համար: Փոթորկի առաջին գրոհը եղավ 1905 թվականին: Հաջորդը սկսում է աճել մեր աչքի առաջ» (Հ. 18, էջ 20):

Հուզական մեծ շնչով գրված հոդվածում Վ. Ի. Լենինը խոսում է և ազնվական հեղափոխականների մի ուշագրավ առանձնահատկության մասին՝ նրանք պայքարել են իրենց իսկ ունեցած արտոնությունների դեմ: Նրանք իրավունք ունեին գյուղացիներ պահելու, անվճար օգտվելու նրանց աշխատանքից, անհոգ կյանք վարելու ազնվականական կալվածքներում: Եթե ցանկություն ունենային, նրանք կարող էին ծառայել ցարին, հասնել բարձր աստիճանների, զինվորական և քաղաքացիական ծառայության ամենաբարձր գագաթներին, վայելել իշխանություն, հարստություն: Բայց նրանք իրենց դրոշներին գրել էին ճորտատիրությունն ու ինքնակալությունը վերացնելու պահանջը, այսինքն՝ այն, ինչը ապահովում էր նրանց արտոնյալ բարեկեցությունը: Գործի այդ արտասովոր կողմը բնութագրելու համար Լենինը «Գերցենի հիշատակին» հոդվածում օգտագործում է իր իսկ՝ Գերցենի խոսքերը նրա «Վերջեր և սկիզբներ» երկից, որը հրապարակվել է «Կոլոկոլ»-ում՝ 1862 թվականի հոկտեմբերի 22-ին (№ 148): Նա պետք է պատկերեր պատմական մի էական պրոցես՝ ազնվականության գաղափարական շերտավորումը XIX դարի սկզբին. «Ազնվականները Ռուսաստանին տվել են Բիրոններ և Արակչեևներ, անթիվ քանակությամբ «հարբեցող սպաներ, կռիվ հորդորողներ, թուղթ խաղացողներ, տոնավաճառների հերոսներ, շնապաններ, կովարարներ, մտրակահարողներ, մեղկ պալատականներ և բարեհոգի Մանիլովներ: «Եվ նրանց մեջ,— գրում է Գերցենը,— զարգացան դեկտեմբերի 14-ի մարդիկ, այն հերոսների ֆալանգան, որոնք, ինչպես Հռոմուլոսը և Ռեմոսը, սնվել-մեծացել էին վայրի գազանի կաթով... Դրանք ինչ-որ դյուցազուններ էին, որոնք ոտքից մինչև գլուխ կռված ու կոփված էին զուտ պողպատից, սխրակից-ռազմիկներ, որոնք գիտակցաբար դիմում էին դեպի ակնհայտ մահ, որպեսզի նոր կյանքի համար արթնացնեն երիտասարդ սերունդը և մաքրեն դահճության ու ստորաքարշության միջավայրում ծնված երեխաներին» (Հ. 18, էջ 12—13): Ջակերտների մեջ առնված Գերցենի խոսքերով Լենինը բարձր է գնահատում դեկաբրիստների սխրանքը, դնում է դասակարգային բարդ իրադրության մեջ նրանց աշխարհայացքի ձևավորման դժվարությունների հարցը:

Նույն այդ հոդվածում ընդգծվում է ճորտատիրությունը ոչնչացնելու լոզունգի նշանակությունը. «Գերցենը արտասահմանում ստեղծեց ռուսական ազատ մամուլ— սա նրա մեծ ծառայությունն է: «Պոլյարնայա զվեզդան» բարձրացրեց դեկաբրիստների ավանդույթը: «Կոլոկոլը» (1857—1867) սարիպես կանգնեց գյուղացիների ազատագրման համար: Ստրկական լռությունը խախտվեց» (Նույն տեղը, էջ 16—17):

Իսկ հաջորդ՝ 1913 թվականին Դասերի և դասակարգերի դերը ազատագրական շարժման մեջ աշխատությունում Վ. Ի. Լենինը նորից է բարձրացնում դեկաբրիստների թեման, առանձնացնելով և վերլուծելով ժողովրդի նկատմամբ առաջին հեղափոխականների ունեցած վերաբերմունքի հարցը: «...պարզ երևում է,— գրում է նա,— թե ինչպես արագ կերպով դեմոկրատացել է ազատագրական շարժումը XIX դարում, և թե ինչպես խիստ կերպով փոփոխվել է նրա դասակարգային կազմը: Ճորտատիրական դարաշրջանը (1827—1846 թթ.) ազնվականության լիակատար գերակշռություն է: Դա դեկաբրիստներից մինչև Գերցենն ընկած դարաշրջանն է: Ճորտատիրական Ռուսաստանը ընկճված ու անշարժ է: Բողոքում է ազնվականների չնչին փոքրամասնությունը, որոնք անզոր են առանց ժողովրդի աջակցության: Բայց ազնվականներից լավագույն մարդիկ օգնեցին արթնացնելու ժողովրդին» (Հ. 19, էջ 403):

Դեկաբրիստներին որակելով «ազնվականներից լավագույն մարդիկ» բնորոշմամբ, Լենինը, ընդգծելով նրանց դասային ծագումը, դրա հետ մեկտեղ բարձր է գնահատում նրանց գործը՝ «Օգնեցին արթնացնելու ժողովրդին»: Եվ այստեղ նա դեկաբրիստներին վերցնում է ոչ թե առանձին, ոչ թե ինքնին իրենց,

այլ նրանց ներառնում է ռուսական հեղափոխական շարժման ընդհանուր կոնցեպցիայի մեջ:

1914 թվականին Վ. Ի. Լենինը նորից է վերադառնում դեկաբրիստների հարցին՝ «Ռուսաստանի բանվորական մամուլի անցյալից» հոդվածում: Այստեղ ևս վերլուծվում է կարևորագույն թեման՝ հեղափոխական սերունդների կապը: Նա ամենից առաջ տալիս է հարցի իր բազմամյա ուսումնասիրության համառոտ և հստակ արդյունքը. «Ռուսաստանում ազատագրական շարժումն անցել է երեք գլխավոր էտապներ՝ համապատասխան ռուսական հասարակության այն երեք գլխավոր դասակարգերի, որոնք իրենց կնիքն են դրել շարժման վրա. 1) ազնվականական ժամանակաշրջան, մոտավորապես 1825-ից մինչև 1861 թվականը, 2) ռազնոչինական կամ բուրժուա-դեմոկրատական, մոտավորապես 1861-ից մինչև 1895 թվականը, 3) պրոլետարականը՝ 1895 թվականից մինչև ներկա ժամանակը» (հ. 20, էջ 297):

«Ազնվականական ժամանակաշրջանի ամենաականավոր գործիչները,— գրում է Լենինը,— դեկաբրիստներն ու Գերցենն էին»: Այնուհետև Վ. Ի. Լենինը պարզաբանում է ընթերցողի համար կարևոր այն միտքը, որի մասին տվյալ թեմայի կապակցությամբ մինչ այդ մանրամասն չի խոսվել. «Այն ժամանակ՝ ճորտատիրական իրավունքի պայմաններում, խոսք անգամ չէր կարող լինել ճորտ, իրավազուրկ, «ստորին», «սև» դասի ընդհանուր մասսայից բանվոր դասակարգի առանձնացման մասին»: Այնուհետև ընդգծվում է գերցենյան ազատ մամուլի՝ արդեն նախկինում մատնանշված կապը ժամանակակից մամուլի հետ. «Բանվորական (պրոլետարական-դեմոկրատական կամ սոցիալ-դեմոկրատական) մամուլի նախորդն այդ ժամանակ ընդհանուր-դեմոկրատական անցենզուրային մամուլն էր՝ Գերցենի «Կոլոկոլի» գլխավորությամբ:

Ինչպես դեկաբրիստներն արթնացրին Գերցենին, այնպես էլ Գերցենն ու իր «Կոլոկոլն» օգնեցին արթնացնելու ռազնոչինեցներին՝ լիբերալ և դեմոկրատական բուրժուազիայի կրթված ներկայացուցիչներին, որոնք պատկանում էին ոչ թե ազնվականությանը, այլ չինովնիկությանը, քաղքենիությանը, վաճառականությանը, գյուղացիությանը» (հ. 20, էջ, 297—298):

Նույն 1914 թ. վերջին «Վելիկոռուսների ազգային հպարտության մասին» հոդվածում Վ. Ի. Լենինը դնում է այն հարցը, թե վելիկոռուսական գիտակից պրոլետարիատի համար խո՞րթ է արդյոք ազգային հպարտության զգացումը, և պատասխանում է. «Իհարկե, ո՛չ: Մենք սիրում ենք մեր լեզուն ու մեր հայրենիքը, մենք ամենից ավելի աշխատում ենք այն բանի վրա, որ նրա աշխատավոր մասսաներին (այսինքն՝ նրա բնակչության $^9/_{10}$) բարձրացնենք մինչև դեմոկրատների ու սոցիալիստների գիտակից կյանքը: Մեզ համար ամենից ավելի ցավալի է տեսնել ու զգալ, թե ցարական դահիճները, ազնվականներն ու կապիտալիստները մեր գեղեցիկ հայրենիքն ինչպիսի բռնությունների, ճնշման և ծաղր ու ծանակի են ենթարկում: Մենք հպարտանում ենք նրանով, որ այդ բռնությունները մեր միջավայրից, վելիկոռուսների միջավայրից, հակահարված են առաջ բերել, որ այդ միջավայրն առաջ է քաշել Ռադիշչևին, դեկաբրիստներին, 70-ական թվականների ռազնոչին-հեղափոխականներին...» (հ. 21, էջ 118—119):

Այստեղ Վ. Ի. Լենինը ամբողջ հասակով մեկ դրել է դեկաբրիստների հեղափոխական հայրենասիրությունը՝ նրանց էական գիծը ուսումնասիրելու խնդիրը: Մի անգամ ևս ընդգծված է դեկաբրիստների տեղը ռուսական հեղափոխական շարժման մեջ: Հիշատակված է նաև Ռադիշչևը՝ որպես նրանց նախորդը:

Դեկաբրիստների մասին ժամանակի տեսակետից վերջին լենինյան միտքը վերաբերում է 1917 թվականին: 1905 թ. հունվարի 9-ի հիշատակի օրը Լենինը, գտնվելով արտասահմանում, Ցյուրիխի ժողովրդական տանը շվեյցարական բանվոր երիտասարդության ժողովում դեկուցում կարդաց 1905 թ. հեղափոխության մասին: Այստեղ նա նորից բացահայտեց ռուսական հեղափոխական շարժման պարբերացումը և վերստին հիշեց նրանց, ովքեր Ռուսաստանում սկիզբ դրեցին հեղափոխական պայքարին:



Հարկավոր է խորամուխ լինել «առաջին անգամ» բառերի մեջ, որ Վ. Ի. Լենինը օգտագործում է դեկաբրիստների նկատմամբ: Ուշադիր կարդալով ռուսաստանյան ազատության առաջամարտիկներին նվիրված նրա տողերը, կարելի է պատասխանել նաև այն հարցին, թե ինչու ռուսական հեղափոխական շարժման լենինյան պարբերացումը սկսվում է ոչ թե Ռադիշչևից, կամ նույնիսկ ոչ թե Բոլոտնիկովից, Ռազինից, Պուգաչովից: Հեղափոխական պայքարի վճռական չափանիշը գիտակցական հեղափոխական գաղափարախոսության, քաղաքական ծրագրի և հեղափոխական կազմակերպության առկայությունն է, կազմակերպություն, որը նպատակ է դնում կենսագործել այդ ծրագիրը, թեև, իհարկե, հեղափոխական գաղափարախոսության տարրերը առկա են եղել նաև գյուղացիական պատերազմներում: Բոլոր երեք հատկանիշներն էլ անհրաժեշտ են իրենց ամբողջության և փոխադարձ սերտ կապի մեջ: Գյուղացիության դասակարգային պայքարը կեղեքիչ կալվածատերերի դեմ կարող է վիթխարի ձևեր ընդունել և պատմական մեծ նշանակություն ունենալ, որի օրինակը կարող են ծառայել Ռազինի, Պուգաչովի ապստամբությունները: Բայց դրանք զուրկ են նշված հատկանիշներից: Իսկ եթե խոսենք Ռադիշչևի մասին, ապա մեր առջև մենք ունենք հեղափոխական մի մեծ մտածող, որը, գուցե, ժամանակ չունեցավ ստեղծելու կազմակերպություն՝ քաղաքական հստակ ծրագրով: Նրա Ճանապարհորդություն Պետերբուրգից Մոսկվա գիրքը նրան դարձնում է ռուսական առաջին հեղափոխականների նախորդը, բայց դեռևս չի կազմում բուն հեղափոխական շարժման անմիջական էտապ:

ԴԵԿԱԲՐԻՍՏՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ԳԱՂՏՆԻ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆԸ՝ Փրկության միությունը, ծագել է 1816 թ., հենց սկզբին և նախապես ուներ մեկ նպատակ՝ հասնել գյուղացիության ազատագրության: Բայց շուտով ընկերության անդամների համար պարզ դարձավ, որ այդ բանը չի կարելի անել՝ առանց ոչնչացնելու ինքնակալությունը՝ ճորտատիրական կարգի այդ գլխավոր պաշտպանին: Այդ ժամանակ երկու նպատակները միավորվեցին: Գաղտնի ընկերության նախաձեռնողն էր գլխավոր շտաբի գնդապետ, 1812 թ. Հայրենական պատերազմի և արտասահմանյան արշավանքների մասնակից, 23-ամյա Ալեքսանդր Մուրավյովը: Նա կազմակերպիչների նախաձեռնող խմբին մասնակից դարձրեց ևս հինգ սպաների՝ Նիկիտա Մուրավյովին, իշխան Սերգեյ Տրուբեցկոյին, Մատվեյ և Սերգեյ Մուրավյով-Ապոստոլներին և Իվան Յակուշկինին: Նրանք բոլորն էլ «1812 թվականի զավակներն» էին, մարտական ընկերներ, որոնք սերտորեն կապված էին բարեկամությամբ, իսկ մասամբ նաև ազգակցությամբ: Շուտով միությանը հարեցին Պ. Ի. Պեստելը, Մ. Ս. Լունինը և ուրիշներ. իր գոյության երկու տարում ընկերությունն ունեցավ մինչև 30 մարդ: Շատ ջանք թափեցին կանոնադրությունը մշակելու համար, որը պարունակում էր նաև ծրագրային պահանջներ: Այն կազմել էր գլխավորապես Պեստելը: Կանոնադրությամբ կազմակերպությունն ստացավ նոր անվանում՝ Հայրենիքի իսկական և հավատարիմ զավակների ընկերություն: Կանոնադրության նախաբանը գրել է իշխան Իլյա Դոլգորուկովը: Նախաբանի հիմնական միտքն է՝ «բոլոր ուժերով աշխատել ընդհանուրի օգտին»՝ հանուն Ռուսաստանի բարօրության: Այդ նպատակին հասնելու համար հարկավոր է վերացնել ինքնակալությունը, այն փոխարինել ներկայացուցչական կառավարմամբ՝ սահմանադրական միապետությամբ և ոչնչացնել ճորտատիրական իրավունքը: Ալեքսանդր I-ի մահվան դեպքում հարկավոր է տապալել բացարձակ միապետությունը և ցարական կառավարությանը «ստիպել» հաստատելու ներկայացուցչական կառավարում: Հեղաշրջումը նախապատրաստելու նպատակով ընկերության անդամները պարտավորվել էին չթողնել ծառայությունը— անհրաժեշտ է ձգտել, որ վճռական պահին կազմակերպության անդամները զբաղեցրած լինեն զինվորական և քաղաքացիական նշանակալի պաշտոններ,— դա կհեշտացնի հեղաշրջումը: Հարկավոր է երկրում ստեղծել «հասարակական կարծիք» ճորտատիրությունն ու ինքնակալությունը վերացնելու օգտին: Որոշվել էր կամավոր անդամավճարներ մուծել «ըստ յուրաքանչյուրի կարողության», դրամական գումարները պահել կազմակերպության գանձապահի մոտ: Մտցվում էր անդամների երեք կարգ՝

«բոլյարներ», տղամարդիկ և եղբայրներ: Պայքարի նպատակները ամբողջու-
թյամբ գիտեին միայն առաջինները (մասոնության ազդեցությունը): Ընկերու-
թյունը կառավարում էր «Բոլյարների խորհուրդը»: Ենթադրվում էր ընդլայնել
ընկերության կազմը. մտածված կերպով հավաքագրել նոր անդամներ, նրանց
ընդունել խորհրդի համաձայնությամբ միայն: Կանոնադրությունը ընդունվել էր
1817 թ. հունվարին՝ հատուկ նիստում, որտեղ Պեստելը իր զեկուցման մեջ գո-
վաբանեց հեղափոխական Ֆրանսիայի երանությունը Հասարակական ապա-
հովության կոմիտեի ղեկավարությամբ, և դա տարաձայնություններ ու վեճեր
առաջացրեց: Հեղաշրջումը արագացնելու ցանկությունը և խիստ դժգոհությու-
նը Ալեքսանդր I-ի քաղաքականությունից, որը երկրում արմատավորում էր
արակչեևշչինա և, դեկաբրիստների համոզմամբ, արհամարհում էր Ռուսաստա-
նը (ցարը սահմանադրություն էր խոստացել Լեհաստանին, այլ ոչ թե ամբողջ
Ռուսաստանին), ընկերության մի քանի անդամների դրդեց հանդես գալ ցարին
սպանելու առաջարկությամբ: 1817 թ. այդ գործը կատարելու ցանկություն
հայտնեցին Ի. Յակուշկինը և մյուս անդամները, բայց Յակուշկինը չէր ցանկա-
նում «այդ պատիվը» զիջել ոչ ոքի: Սակայն ղեկավարության հիմնական կորի-
զը ցարասպանությանը չհամաձայնեց, գտնելով, որ դա չի հասցնի նպատակին՝
ներկայացուցչական սիստեմի հաստատմանն ու գյուղացիների ազատագրու-
թյանը: Վեճերի ժամանակ որոշվեց վերակառուցել կազմակերպությունը:
1818 թ. ծագեց նոր ընկերություն՝ «Բարօրության միությունը»:

Ընկերության հիմնական նպատակը մնում էր նույնը՝ ձգտել ազատագրելու
գյուղացիներին և մտցնելու ներկայացուցչական կառավարում: Բայց հեղա-
շրջման գլխավոր ուժը հայտարարվում էր «հասարակական կարծիքի» ստեղ-
ծումը երկրում, որը դեկաբրիստները համարում էին պատմության գլխավոր
շարժիչ ուժը: Կազմակերպությունը, որը միավորում էր Բարօրության միության
գաղտնի ղեկավարության տակ գտնվող գրական, մանկավարժական և այլ լե-
գալ գաղտնի ընկերությունների լայն ցանց, կոչված էր «հասարակական կար-
ծիքը» նախապատրաստելու՝ հօգուտ միության նպատակների: Նոր կազմակեր-
պությունը թվական տեսակետից աճեց, անցավ 200 մարդուց: Մշակվեց նաև
նոր կանոնադրություն, որն իր կազմի գույնի համար կոչվեց «Կանաչ գիրք»
(պատրաստ էր նրա միայն առաջին մասը, երկրորդը դեռ գրվում էր): Երկրորդ
մասում պետք է բացահայտվեր ընկերության հիմնական՝ գաղտնի նպատակը.
երբ նրա «բաժանմունքները», որոնք ցրված էին երկրով մեկ, «դառնան բազ-
մամարդ», կգա բացահայտ ելույթի ժամը՝ ցարական կառավարությունը տա-
պալելու, այն ներկայացուցչական կառավարմամբ փոխարինելու և գյուղացի-
ներին ազատագրելու նպատակով: Այդ գաղտնի նպատակի մասին հետաքըն-
նության ժամանակ իր ցուցմունքներում խոսեց ընկերության հիմնադիր Ալեք-
սանդր Մուրավյովը:

Ամենևին չի կարելի ասել, թե Բարօրության միությունը գործում էր ապար-
դյուն: Նա կատարեց մեծ աշխատանք՝ կազմակերպեց մի շարք ընկերություն-
ներ, իսկ արդեն գոյություն ունեցած մյուս ընկերությունները վերցրեց իր հո-
վանավորության տակ, հրատարակում էր գրքեր, որոնք զարգացնում էին առա-
ջավոր գաղափարներ, աշխատում էր, որ ցարական դատարաններում արդարա-
ցի վճիռներ կայացվեն ճնշվածների օգտին, կազմակերպում էր օգնություն ա-
ռանձին նահանգների սովյալներին և այլն, ազդեցություն էր գործում ժուռնալ-
ների վրա, ծրագրել էր «Россиянин XIX века» նոր, առաջադիմական ժուռ-
նալի հրատարակությունը, նամակներով ու զեկուցագրերով դիմում էր կա-
ռավարությանը՝ բողոքելով ճորտատիրական իրավունքի դեմ, ապացու-
ցելով այն վերացնելու անհրաժեշտությունը, հիմնում էր լանկաստերական
ուսուցման դպրոցներ, որոնք նպատակ ունեին արագ կերպով գրագիտություն
տարածել: Բարօրության միության գրական մասնաճյուղի՝ «Կանաչ լամպի»
ընկերության մեջ էր մտնում նաև երիտասարդ Ա. Ս. Պուշկինը: Բարօրության
միության անդամները անխոնջ ագիտացիա էին մղում լուսավորությունը «մա-
մբողների», «հարյուր տարով» ետ մնացած կարծրամիտ ազնվականների դեմ,
ճորտատիրական իրավունքի, դատարանների կաշառվածության, զավզանա-



յին հաշվեհարդարների, զինվորական բնակավայրերի և այն ամենի դեմ, ինչը,
նրանց տեսակետից, հնացել էր և արգելակում էր Ռուսաստանի զարգացումը:
Դարաշրջանը եռում էր նոր գաղափարներով, քննադատությունը խարխլում էր
հին հիմքերը: «Ընդհանուր կարծիքը գումարտակ չէ. նրան չես ասի՝ «զգա՛ստ»,
— ոչ առանց վախի սրամտում էին նրանք, ովքեր ականատես էին նոր պրո-
ցեսին:

Այդ ժամանակ մթնոլորտը շիկանում էր նաև Արևմտյան Եվրոպայում:
«Ժողովուրդների և ցարերի պայքարը», դեկաբրիստ Վ. Կյուխելբեկերի խոսքե-
րով ասած, ավելի ու ավելի որոշակիորեն էր դրսևորվում: Մի ամբողջ շարք եվ-
րոպական պետություններում 1818—1819 թթ. սկսվում էր հեղափոխական ի-
րադրություն, որը այնուհետև վերածվեց հեղափոխության:

1817 թ. Պորտուգալիայում բռնկեց պորտուգալական գնդերի և ժողովրդի
ապստամբությունը անգլիական օկուպանտների ու նրանց հրամանատար գենե-
րալ Բերեսֆորդի դեմ: 1820 թ. հունվարի 1-ին հակաֆեոդալական հեղափո-
խություն սկսվեց Իսպանիայում,— նախաձեռնությունը իրենց վրա վերցրին
զինվորական ուժերը՝ հրամանատարներ Ռաֆաել դել Ռիեգոյի և Անտոնիո
Կվիրոգայի (ավելի ճիշտ՝ Կիրոգայի) ղեկավարությամբ: Հեղափոխությունը
հաղթանակ տարավ. վերականգնվեց 1812 թ. սահմանադրությունը: Իսպանա-
կան շարժման հաջողությունները ոգեշնչեցին Պորտուգալիային՝ նույն 1820 թ.
օգոստոսին այստեղ բռնկեց հեղափոխություն, որի հետևանքով ստեղծվեց ժա-
մանակավոր կառավարություն. 1821 թ. Հիմնադիր կորտեսները ընդունեցին
սահմանադրություն իսպանականի օրինակով, վերացվեցին ֆեոդալական ար-
տոնությունները, հայտարարվեց եկեղեցական գույքի վաճառք, վերացվեց ինկ-
վիզիցիան: Հեղափոխական ալիքը անցավ Իտալիա, ապստամբեց Նեապոլը,
հեղափոխություն բռնկեց Պիեմոնտում (Իտալիան այդ տարիներին դեռևս միա-
վորված պետություն չէր): Ապստամբությունն ընդգրկեց Հունաստանը: Ռուսա-
կան ծառայության սպա Ալեքսանդր Իպսիլանտին միացավ ապստամբած հույ-
ներին և գլխավորեց նրանց պայքարը:

Այս բոլոր իրադարձությունները լավ հայտնի էին դեկաբրիստներին, հու-
զում և ոգեշնչում էին նրանց: Դեկաբրիստների ապստամբությունը միախառն-
վում է արթնացած Եվրոպայի հեղափոխական ընդհանուր պատկերին, ունի
նույն խոշոր պլանի հակաֆեոդալական նպատակներ: Դրանով է որոշվում դե-
կաբրիստների տեղը համաշխարհային-պատմական հեղափոխական շարժման
մեջ:

«...Յուրաքանչյուր դար ունի իր տարբերիչ գիծը: Ներկա դարը նշանավոր-
վում է հեղափոխական մտքերով,— հարցաքննության ժամանակ ասում էր
Պեստելը իր քննիչներին:— Եվրոպայի մի ծայրից մինչև մյուսը ամենուրեք
երևում է միևնույնը, Պորտուգալիայից մինչև Ռուսաստան, առանց բացառելու
որևէ երկիր, անգամ Անգլիան և Թուրքիան՝ երկու հակադրությունները: Նույն
պատկերն է ներկայացնում նաև ամբողջ Ամերիկան: Վերափոխման ոգին ստի-
պում է, այսպես ասած, ամենուրեք ալեկոծել մտքերը»:

Այդ իրադրության մեջ Բարօրության միությունը արդեն չէր համապատաս-
խանում առաջադրված խնդիրներին: Որոշվեց նորից վերակազմել ընկերությու-
նը: Նոր պայմաններում սաղմնավորվեցին ու զարգացան հանրապետական
գաղափարներ. սահմանադրական միապետությունը, որպես ներկայացուցչա-
կան կառավարման ձև, արդեն անբավարար էր թվում: 1820 թ. սկզբին Պետեր-
բուրգում կայացավ Բարօրության միության ղեկավար անդամների նիստը,
որտեղ Պեստելը զեկուցեց՝ ո՛րն է ավելի գերադասելի՝ սահմանադրական միա-
պետությունը, թե՞ հանրապետությունը թեմայով: Պեստելը առանց որևէ տա-
տանման հանգեց այն հետևության, որ կառավարման լավագույն ձևը հանրա-
պետականն է: Ապա հաջորդեց ժողովի մասնակիցների անվանական քվեար-
կություն՝ յուրաքանչյուրի դիրքորոշման հիմնավորմամբ: Բոլորն էլ արտա-
հայտվեցին հանրապետության օգտին: Նիկոլայ Տուրգենևի համար հարցը այն-
քան պարզ էր, որ նա չցանկացավ անգամ հիմնավորել և, քվեարկելով, ֆրան-
սերեն ասաց. «Պրեզիդենտ, առանց ավելորդ դատողությունների»: Այդ ժամա-

նակ Նիկիտա Մուրավյովը ևս կանգնած էր հանրապետական դիրքերում: Այսպիսով, դա Ռուսաստանի պատմության մեջ առաջին քվեարկությունն էր հանրապետության օգտին:

1821 թ. Բարօրության միությունը դադարեցրեց իր գոյությունը: Կազմակերպությունը «ցրելու» պատրվակով հեղափոխականներին հաջողվեց ազատվել անհուսալի անդամներից: Գրեթե միաժամանակ կազմակերպվեցին երկու գաղտնի ընկերություններ՝ նախ Հարավայինը՝ Պեստելի գլխավորությամբ (Պեստելը և գաղտնի ընկերության մի շարք անդամներ ծառայում էին Ուկրաինայում տեղաբաշխված 2-րդ բանակում), իսկ ապա Հյուսիսայինը, որը հարում էր Պետերբուրգին:

Պատրաստվելով հեղափոխական ելույթի, անհրաժեշտ էր, Պեստելի կարծիքով, ունենալ պատրաստի սահմանադրական նախագիծ. դա կօգներ խուսափելու բազմաթիվ վեճերից ու բախումներից բացահայտ ելույթի պահին: Այդպիսի մի նախագիծ ծրագրված էր վաղուց, Պեստելը և Նիկիտա Մուրավյովը նույնիսկ մտադիր էին այն գրել համատեղ: Բայց ավելի ուշ Մուրավյովը էվոլյուցիա ապրեց դեպի աջ և նորից դարձավ սահմանադրական միապետության կողմնակից, իսկ Պեստելը շարունակում էր մնալ հանրապետական դիրքերում: Նրանց նախագծերը իրարից հեռացան:

Երկու հեղինակներն էլ ավեցին դեկաբրիստական շարժման հիմնական՝ Ռուսաստանում ճորտատիրության և ինքնակալության վերացման հարցի լուծումների իրենց տարբերակները: Նիկիտա Մուրավյովը պաշտպանում էր չափավոր ծրագիր, Պեստելը պայքարում էր ավելի արմատական ուղու համար: Մուրավյովի սահմանադրական նախագիծը կրում էր ազնվականական դասակարգային սահմանափակության կնիքը: Բայց այդ նախագիծն անգամ, եթե կենսագործվեր, ճեղքվածք կբացեր ֆեոդալական-աբսոլյուտիստական կարգում և վերջնականապես կխարխլեր նրա հիմքերը: Ինչպես բազմիցս ընդգծել են մարքսիզմի հիմնադիրները, ֆեոդալիզմի մնացուկները մինչև վերջ վերացնել ավելի հեշտ է սահմանադրական, քան բացարձակ միապետության պայմաններում,— առաջինի դեպքում կարող էր ավելի լայն ծավալվել դասակարգային պայքարը:

Դեկաբրիստները՝ ազնվականական հեղափոխականները, այդպես էին մտադիր վերացնել ինքնակալությունը, ստեղծել նոր իշխանություն, հեղափոխական վերափոխման ենթարկել հասարակական հին կարգը:

Իսկ դեկաբրիստական լոզունգները ինչպե՞ս էին ընկալվում բուն ապստամբության ժամանակ: Գիտե՞ն արդյոք դրանց մասին զինվորները, որոնք իրենց հրամանատարների հետևից նետվում էին դեպի Սենատական հրապարակ: Այդ հարցին պատասխանում է դեկաբրիստ Նիկոլայ Բեստուժևի վկայությունը: Ապստամբության նախօրյակին հրաժարվելով զորքին թռուցիկներով դիմելու մտքից, դեկաբրիստները այն փոխարինեցին բանավոր պրոպագանդայով: Կոնստանտինին երդում տալուց հետո Նիկոլայ և Ալեքսանդր Բեստուժևները և Ռիլեևը գիշերները շրջում էին Պետերբուրգում, կանգ առնում ամեն մի ժամապահի մոտ, կանգնեցնում էին հանդիպած ամեն մի զինվորի և հաղորդում, որ նրանց խաբել են, ցույց չտալով հանգուցյալ ցարի կտակը, «որով ազատություն է տրված գյուղացիներին և զինվորական ծառայությունը կրճատվել մինչև 15 տարի» (ընդգծումը իմն է:— Մ. Ն.): Երկու գիշեր անընդմեջ դեկաբրիստները զրույցներ էին ունենում զինվորների հետ: «Չի կարելի պատկերացնել այն անհագությունը, որով զինվորները լսում էին մեզ, չի կարելի բացատրել այն արագությունը, որով մեր խոսքերը տարածվեցին զորքերի մեջ»: Ագիտատորներին ոչ ոք չմատնեց, թեև հրամանատարությունը քաղաքում արդեն հրաման էր արձակել «բռնել կասկածելիներին»: Իհարկե, ցարի իբր գաղտնի կտակի մասին հորինվածքը մի զիջում էր, որը բնորոշ էր ազնվականական հեղափոխականության համար, բայց հարկ չկա կասկածել դեկաբրիստների խոսքերի ագիտացիոն ուժի մեջ: Բնորոշ է նաև այն, որ Կ. Ֆ. Ռիլեևը և Ա. Ա. Բեստուժևը, պատրաստվելով ապստամբության, դեռ 1824 թ. երգեր էին հորինել ժողովրդի համար: Այդ երգերի թվում էր, օրինակ, հետևյալ բանաստեղծությունը, որ Գերցենը առաջին անգամ տպագրել էր 1859 թ «Պոլյարնայա զվեզդա»-ում:

Ա՜խ, ծանր է ինձ համար,
Երկրում իմ հարազատ:
Եվ, երևում է, դեռ մենք երկար ենք
Այս դաժան գերության մեջ
Կրելու հլու մեր բախտը դշխեմ:
Եվ դեռ շա՞տ է մեր ժողովուրդը ռուս
Մնալու կքած, ծառա տերերի,
Եվ դեռ շատ են մեզ
Անասունի պես
Առնել-ծախելու:
. . . . . . . . . . . . . . . . . . . .
Զույգ մորթի են նրանք քերթում մեզանից,
Ցանողը մենք ենք, հնձողը նրանք,
Եվ ազատությունը
Մեր ժողովրդի
Խեղդել են ուժով տերերն անողոք:
Բայց, ինչ խլել են քիրտ ուժով նրանք,
Նույն ուժով էլ մենք ետ կնվաճենք...

Սա ճորտատիրական իրավունքի մասին է: Մյուս երգը խոսում է ցարի մասին. այն Գերցենը հրապարակել է 1861 թվականին.

Եվ գնում է դարբինը
Իր դարբնոցից:
Փա՜ռք:
Տանում է դարբինը
Դանակ՝ երեք հատ:
Փա՜ռք:
Դանակն առաջին՝
Բոյարների ու մեծամեծների համար:
Փա՜ռք:
Դանակը երկրորդ՝
Տերտերների, կեղծ սրբերի համար:
Փա՜ռք:
Եվ աղոթքը շրթներին՝
Դանակը երրորդ՝ մեծ ցարի համար:
Փա՜ռք:

1825 թ. դեկտեմբերի 14-ի ապստամբության պլաններում կար մի կարևոր փաստաթուղթ՝ հեղափոխական Մանիֆեստը ռուս ժողովրդին: Դեկաբրիստները ենթադրում էին ներխուժել Սենատի նիստը, որը հավաքվելու էր Նիկոլայ I-ին երդում տալու համար, և հորդորներով, իսկ եթե հարկ լինի, ապա նաև զենքի ուժով ստիպել Սենատին՝ ստորագրել իրենց առաջարկած մանիֆեստը, այն լայնորեն տարածել ամբողջ երկրում, տապալել հին կառավարությունը, այն փոխարինել նորով՝ հեղափոխականով և գումարել «Մեծ ժողով» (Հիմնադիր ժողով), որը կորոշեր, թե կառավարման ինչպիսի ձև կընդունի Ռուսաստանը՝ հանրապետակա՞ն, թե՞ սահմանադրական-միապետական: Այդ Մանիֆեստում, որը ապստամբության ժամանակ գտնվում էր դեկաբրիստ Ս. Տրուբեցկոյի մոտ, առաջ էին քաշվում հետևյալ պահանջները. «ոչնչացնել նախկին կառավարությունը», ազատագրել գյուղացիներին («ոչնչացնել մարդկանց վրա տարածվող սեփականության իրավունքը»), բոլոր դասերի հավասարություն օրենքի առաջ զինապարտության հավասարեցում բոլոր դասերի միջև, զինվորական ծառայության կրճատում 10 տարով, զինվորական բնակավայրերի վերացում, «պալատի համար ժողովրդական ներկայացուցիչների ընտրության կարգի հաստատում, որոնք պարտավոր են ապագայի համար հաստատել գոյություն ունենալիք Կառավարման կարգը և Պետական օրենսդրությունը»:

Ինչպես հայտնի է, դեկաբրիստներին չհաջողվեց այդ պահանջները ներկայացնել Սենատին և ապստամբության օրը տարածել Մանիֆեստը։ Ապստամբությունը ջախջախվեց ցարական բանակի հրետանազարկերով և խեղդվեց զինվորների արյան մեջ։

Չեռնիգովյան գնդի ելույթը հարավում՝ Սերգեյ Մուրավյով-Ապոստոլի և Միխայիլ Բեստուժև-Ռյումինի հրամանատարությամբ, դեկաբրիստների ապստամբության շարունակությունն էր։ Այն բռնկեց 1825 թ. դեկտեմբերի 29-ին։ Դեկտեմբերի 31-ին Վասիլկով քաղաքի հրապարակում՝ ապստամբած գնդի առջև ընթերցվեց հեղափոխական «կատեխիզիսը»։ Կազմված լինելով հարցերի ու պատասխանների սովորական ձևով, այն նպատակամղված էր ինքնակալության տապալմանը, վկայելով նրա հեղինակների հանրապետական գաղափարախոսության մասին։ «Ինչի՞ համար է աստված ստեղծել մարդուն»— հարց է տրվում «կատեխիզիսում»։ Պատասխանն ասում էր. «Որպեսզի նա լինի ազատ ու երջանիկ»։ Իսկ ինչո՞ւ ռուս ժողովուրդը և ռուս զինվորները դժբախտ են։— «Այն պատճառով, որ ցարերը նրանցից խլել են ազատությունը»։ Ուրեմն, ցարերը աստծու կամքին հակառա՞կ են գործում։ Պատասխան. «...Ցարերը տանջում են միայն ժողովրդին»։ Իսկ ո՞ր կառավարությունն է համապատասխանում աստծու օրենքին։— «Այն կառավարությունը, որտեղ ցարեր չկան...»։ Ուրեմն՝ ի՞նչ անել։ «Կատեխիզիսը» համարձակ պատասխանում էր, որ հարկավոր է «զենք վերցնել», և կոչ էր անում «բոլորը միասին կռվի ելնել բռնակալության դեմ և վերականգնել հավատն ու ազատությունը Ռուսաստանում...»։ «Կատեխիզիսը» կարևոր նպատակ էր համարում ցարին տրվող երդումը փոխարինել հեղափոխությանը տրվող երդումով։

Միաժամանակ Մ. Բեստուժև-Ռյումինը գրեց ժողովրդին ուղղված մի պրոկլամացիա, որտեղ ազդարարվում էր ճորտատիրության անկման մասին. «Մենք մեզնից թոթափեցինք ստրկության շղթաները, որոնք հակառակ են քրիստոնեական օրենքին։ Այսուհետև Ռուսաստանը ազատ է»։

Երրորդ փաստաթուղթը՝ զորքին ուղղված պրոկլամացիան, զարգացնում էր «կատեխիզիսի» մտքերը։ Մեր առջև է մի անկասկածելի մտահղացում՝ ստեղծել միաժամանակ գործող ագիտացիոն փաստաթղթերի մի համակարգ։

1826 թ. հունվարի 3-ին Չեռնիգովյան գունդը մարտի մեջ մտավ իրեն զսպելու դուրս եկած ցարական զորքերի դեմ։ Ապստամբությունը ճնշվեց։

Ցարական հետաքննությունն սկսվեց դեկտեմբերի 14-ի երեկոյից։ Նիկոլայ I-ը ինքն էր մասնակցում հարցաքննություններին։ Ձերբակալություններն ընդունեցին մասսայական բնույթ։ Հետաքննության մեջ ներգրավվել և հայտնի «Այբուբենի» մեջ գրանցվել էր 579 մարդ։ Դրան հարկավոր է ավելացնել 624 զինվորների ձերբակալությունը, որոնց բռնել էին ապստամբությանը հաջորդած գիշերը և նույնպես բանտարկել Պետրոպավլովսկի ամրոցում (հետագայում նրանց թիվը աճեց)։ Հաշվի առնելով դեկաբրիստների գործով Ռուսաստանի հարավում կատարված սպաների ու զինվորների ձերբակալությունները, կարելի է ասել, որ 1825 թ. դեկտեմբերից մինչև 1826 թ. մարտը ձերբակալվել էր ավելի քան 500 սպա և 2.500 զինվոր։

Հետաքննության հիմնական ուղղությունը կանխակալ էր ու չափազանց նեղ. դրա համար գլխավորն էր դեկաբրիստների մտադրությունը՝ սպանել ցարին։ Քննչական կոմիտեի զեկուցագրից Նիկոլայ I-ի հրամանով հանվել էր այն ամենը, ինչ վերաբերում էր գյուղացիների ազատագրությանը, «հողերի բաժանմանը», զինվորական բնակավայրերը խառվելու մտադրությանը, զինվորների ծառայության ժամկետի կրճատմանը։ Նիկոլայ I-ը զգաց այդ մտադրությունների հատուկ վտանգավորությունը՝ ժողովուրդը չպետք է ճշմարտությունն իմանար։ Դրա հետ մեկտեղ հրամայված էր «գործերից հանել ու այրել բոլոր խռովիչ բանաստեղծությունները»։ Դրանց թվում էին նաև Ա. Ս. Պուշկինի ոչ քիչ թվով բանաստեղծությունները։ «...Գործող մարդկանց յուրաքանչյուրի թղթերում կան քո բանաստեղծությունները։ Դա կառավարության հետ բարեկամանալու վատ միջոց է»,— բանաստեղծին գրում էր Վ. Ա. Ժուկովսկին։

Նիկոլայ I-ը աշխատում էր որքան կարելի է շուտ անցկացնել դատավարությունը և որոշեց մեղադրյալներին դատարանում չհարցաքննել։ Դատական պրոցեսը վերածվեց ինչ-որ մի «ռեվիզիոն հանձնաժողովի» կողմից յուրաքանչյուր մեղադրյալի ձևական հարցաքննության՝ նրա ձեռքո՞վ են գրվել արդյոք հետաքննության ժամանակ տված ցուցմունքները, կամովի՞ն են արդյոք ստորագրվել, առերեսումներ եղել են արդյոք։ Դեկաբրիստների մեծ մասը նույնիսկ չէր էլ կասկածում, որ դրանով իսկ իրենց դատավճիռն է կայացվում։ Երկու օրում «հարցաքննվեց» 121 մեղադրյալ։

Հինգ դեկաբրիստներ՝ Պեստելը, Ռիլեևը, Կախովսկին, Սերգեյ Մուրավյով-Ապոստոլը և Բեստուժև-Ռյումինը հայտարարվեցին «կարգերից դուրս» և դատապարտվեցին միջնադարյան տանջալից մահվան՝ քառահատմամբ։ Նիկոլայ I-ը այնուամենայնիվ վախեցավ նման մահապատժով զարմացնել Եվրոպային և Գլխավոր շտաբի պետ Դիբիչի միջոցով գաղտնի ցուցում տվեց, թե ինքը համաձայն չէ այնպիսի մահապատժի, «որը կապված է արյունահեղության հետ»։ Դատավորները հասկացան ցարին, և հինգ մեղադրյալները դատապարտվեցին կախաղանի։ Մահապատժի ժամանակ, երբ դեկաբրիստների ոտքերի տակից դուրս գցեցին աթոռները, պարանները կտրվեցին և երեք «հանցագործները» (Ռիլեևը, Կախովսկին և Մուրավյով-Ապոստոլը), իրենց մարմնի և շղթաների ծանրությամբ կոտրելով բեմահարթակի տախտակները, ընկան փոսի մեջ։ Ուրիշ պարան չկար, ցանկացան ճարել մոտակա խանութներից, բայց առավոտյան վաղ բոլոր խանութները փակ էին, և մահապատժի ի կատար ածումը «ձգձգվեց»։ Մահապատիժը կրկնվեց, «և այս անգամ հաջող վերջացավ», ասում էր ավելի ուշ կրոնվերկի պետը։ Մնացած մեղադրյալները դատապարտվեցին ցմահ կամ տարբեր ժամկետներով աքսորվեցին Սիբիր՝ տաժանակրության կամ աքսորաբնակության։

«Բայց նրանց գործն ապարդյուն չանցավ»,— գրում էր դեկաբրիստների մասին Վ. Ի. Լենինը։ Դեկաբրիստները «օգնեցին արթնացնելու ժողովրդին»։

Ռուսաստանի ազատության առաջամարտիկներին փոխարինելու եկած հեղափոխական հետագա սերունդները պայքարի լոզունգների մեջ մտցրեցին դեկաբրիստների լոզունգները, որոնք հարստացվել էին ու հասցվել նոր բարձունքի։ Եվ ռազնոչինեցների, հեղափոխական դեմոկրատների հեղափոխական սերունդը օբյեկտիվորեն կրում էր հակաֆեոդալական այդ լոզունգները։ Եվ պրոլետարական հեղափոխականների սերունդը, որը պատմական ասպարեզ եկավ XIX դարի 90-ական թվականների երկրորդ կեսին և պայքարում էր սոցիալիզմի հաղթանակի համար, այդ լոզունգները մտցրեցին իրենց պահանջների մեջ։ «Մենք բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հարցերը լուծում էինք ոտքի վրա, անցողակի, որպես մեր գլխավոր և իսկական պրոլետարական-հեղափոխական, սոցիալիստական աշխատանքի «կողմնակի արդյունք»,— գրում էր Լենինը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության չորսամյա տարեդարձի առթիվ։

Եվ այժմ զարգացած սոցիալիզմի երկիրը հարգում է դեկաբրիստների՝ ինքնակալության և ճորտատիրական իրավունքի դեմ պայքար ծավալած առաջին խիզախների, մեր հայրենիքի ազատության առաջամարտիկների հիշատակը։

«Коммунист», № 17, 1975 г.

# ՄԱՐՏՆՉՈՂ ԵՐԳԻԾԱՆՔԻ ՄԵԾ ՎԱՐՊԵՏԸ

(Մ. Ե. ՍԱԼՏԻԿՈՎ-ՇՉԵԴՐԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Ն. Ա. ԳՈՆՉԱՐ-ԽԱՆՋՅԱՆ



Մարդկության դեպի ազատության, արդարության ու բարության իդեալները տանող ճանապարհին, հումանիզմի, դեմոկրատիզմի գաղափարների իրականացման համար նրա մղած դժվարին ու անհողդողդ պայքարում հատուկ, հիրավի, ազնիվ դեր են խաղում խոսքի կարկառուն այն վարպետները, այն գրողները, որոնք իրենց հանճարը, ստեղծագործական եռանդն ու ոգեշնչումը նվիրել են սոցիալական ու բարոյական չարիքի համարձակ և անողոք խարազանմանը, այդ չարիքի դեմ ծառացնելով ծիծաղի, երգիծանքի զորեղ ուժը:

Ռուս գրականության պատմության մեջ հենց այդպիսի վեհ ու ազնիվ դեր են խաղացել հումանիստ գրող և հեղափոխական դեմոկրատ, հանճարեղ երգիծաբան Սալտիկով-Շչեդրինի ստեղծագործությունները. երգիծաբան, որի անունը ռուս կլասիկ ռեալիզմն իրավամբ դնում է Ռաբլեի ու Սվիֆտի աշխարհահռչակ անունների կողքին:

«Նա վիթխարի գրող է,— Շչեդրինի մասին ասել է Գորկին,— ...Զարմանալի է նրա ստեղծագործական թափի լայնությունը... Վիթխարի է նրա երգիծանքի նշանակությունը ինչպես իր ճշմարտացիությամբ, նույնպես և այն ուղիների գրեթե մարգարեական կանխատեսման զգացումով, որոնցով պետք է ընթանար և ընթացավ ռուս հասարակությունը... Առանց Շչեդրինի օգնության անհնար է հասկանալ Ռուսաստանի՝ XIX դարի երկրորդ կեսի պատմությունը»[1]:

Միխայիլ Եվգրաֆովիչ Սալտիկովի գրական կենսագրությունն սկսվում է XIX դարի 40-ական թվականներին, երբ նա հրապարակում է իր առաջին վիպակները՝ Հակասությունները և Խճճված գործը: Երիտասարդ Սալտիկովը, որն անցել էր Բելինսկու հեղափոխական-դեմոկրատական գաղափարների դպրոցը, մոտ էր Պետրաշևսկու խմբակին, կրել էր ֆրանսիացի մեծ ուտոպիստների սոցիալիստական տեսությունների ու ձգտումների ազդեցությունը, և իր այս առաջին իսկ երկերում, չընդունելով իրեն

[1] **М. Горький.** История русской литературы. М., 1939, стр. 270, 273—274.



շրջապատող իրականությունը, մերկացնելով ինքնակալական-ճորտատիրական Ռուսաստանի ճնշող մթնոլորտը, արտահայտում է իր համակրանքը ընչազուրկների նկատմամբ և ուղիներ որոնում՝ հաղթահարելու գոյություն ունեցող իրավիճակը:

Սալտիկովի գրվածքներում և, մանավանդ, Խճճված գործ վիպակում, որը լույս էր տեսել Ֆրանսիայի՝ 1848 թ. փետրվարյան հեղափոխությունից անմիջապես հետո, ռեակցիայի գաղափարախոսները տեսան «վտանգավոր մտածելակերպ» և «կործանիչ» ձգտում՝ տարածելու այն գաղափարները, որոնք արդեն ցնցել էին ողջ Արևմտյան Եվրոպան: Մեկ ամիս անց գրողը բանտարկվում և, «նորին բարձրության հրամանով», ծառայության է աքսորվում հեռավոր ծայրագավառ Վյատկա խուլ քաղաքը: Սալտիկովը Պետերբուրգ կարողացավ վերադառնալ միայն 1856 թվականին, երբ Նիկոլայ I-ի մահից և Ղրիմի պատերազմում կրած պարտությունից հետո ինքնակալությունն ստիպված եղավ մեղմացնել քաղաքական ռեժիմը և սկսել ճորտատիրական իրավունքի վերացման նախապատրաստումը:

Մոտ ութամյա աքսորը բռնի կերպով ընդհատեց Սալտիկովի սկսած բեղմնավոր գրական գործունեությունը: Դժվարացան նաև նրա գաղափարական, հասարակական-քաղաքական զարգացման պայմանները: Գրողի համար ծանր էր տանել գավառական հասարակության ու նրա բարքերի սպանիչ հետամնացությունը, գձուծությունն ու ճղճիմությունը: «Ես տառապում եմ թե՛ բարոյապես, թե՛ ֆիզիկապես,— գրում էր նա եղբորը,— և չգիտեմ՝ ինչի՞ ընդունակ կլինեմ, եթե շարունակվի իմ հոգու այս գերությունը»: Բայց որքան էլ ծանր էին այդ «գերության» ու հարկադիր ծառայության տարիները Վյատկայում, դրանք Սալտիկովի համար, իր իսկ հետագա խոստովանությամբ, «կյանքի մեծ դպրոց էին», որ հարստացրին նրան ռուսական իրականության կոնկրետ ու բազմակողմանի իմացությամբ, բնակչության ամենատարբեր խավերի՝ չինովնիկների, վաճառականների, քաղքենիների, գյուղացիների կյանքի, կենցաղի, հոգեբանության ընկալմամբ: Եվ այս ամենը սքանչելի պտուղներ տվեց նոր երկերում, որոնցով հանդես եկավ գրողը Պետերբուրգ վերադառնալուց հետո: Նախառեֆորմյան տարիների հասարակական կյանքի բուռն վերելքի, գաղափարա-քաղաքական մթնոլորտի աշխուժացման, մամուլում օպոզիցիոն և նույնիսկ հեղափոխական ոգու դրսևորման պայմաններում, աքսորում ստացած կենսական հարուստ տպավորությունների հիման վրա, Սալտիկովն ստեղծում է իր Նահանգական ակնարկներ հիանալի գիրքը, որից և սկիզբ է առնում նրա մարտական, խորապես ճշմարտացի և մշտապես արթուն, ազնիվ երգիծանքը: Նահանգական ակնարկները տպագրվում են 1856—1857 թվականներին «Ն. Շչեդրին» կեղծանունով, որն ընդմիշտ դառնում է նրա գրական անունը:

«Ընդհանուր գործին ծառայելու շատ ուղիներ կան,— գրում էր Շչեդրինը Նահանգական ակնարկների ներածականում,— բայց համարձակվում եմ ենթադրել, որ չարիքի, կեղծիքի և արատի բացահայտումը նույնպես անօգուտ չէ, մանավանդ որ դրա նախապայմանն է լիակատար կարեկցանքը բարուն ու ճշմարտին»: Նման խոսքեր ազդարարող գիրքը պարզ ցույց էր տալիս, թե հատկապես ի՛նչ չարիք, կեղծիք ու արատ նկատի ուներ դրա հեղինակը: Նրա սուր, խայթիչ երգիծանքն ուղղված էր Ռուսաստանի ողջ պետական ռեժիմից ծնված հասարակական չարիքի, արատների դեմ, որոնք թաքնված էին ընդհանուր «իրավիճակում», այն կեղծիքի ու կեղծավորության դեմ, որոնք անպատկառորեն գործադրում էին հասարակության իշխող խավերը:

Նահանգական ակնարկներում Սալտիկով-Շչեդրինը խստորեն դատապարտում, մերկացնում էր իշխանությունների կամայականությունը, նրանց արհամարհական վերաբերմունքը իրավազուրկ, հալածված մասսայի նկատմամբ: Երգիծական դիմանկարների շարքում, ժողովրդին անամոթաբար խաբող ու կողոպտող դատարկապորտների, գրպարտիչների, կաշառակերների, հարստահարիչների կերպարների միջոցով նա ճշմարտացի ու վառ ներկայացրել է գավառական ողջ չինովնիկությունը: Եվ այդ բոլոր բռնավորներին ու պորտաբույծներին Շչեդրինը պատկերել է ոչ թե որպես «մի քանի» կամ «առանձին» զազիր, բարոյազուրկ մարդիկ, այլ՝ որպես բռնապետական ու բարբարոսական կենսակարգի բնական ու անխուսափելի ծնունդ, մասսայական արգասիք:

Ռուսական հեղափոխական դեմոկրատիայի առաջնորդները՝ Չերնիշևսկին ու Դոբրոլյուբովը, անմիջապես զգացին և իրենց հոդվածներում ընդգծեցին Շչեդրինի գրքի այս սկզբունքային տարբերությունը այն ժամանակվա լիբերալ-մերկացնող գրականության լայն հոսանքից, որն իր զայրույթն ուղղում էր «առանձին» երևույթների դեմ, քննադատում մասնակի թերությունները: «Ազնիվ ու սքանչելի» անվանեց Չերնիշևսկին Շչեդրինի սատիրական առաջին գիրքը իր Նահանգական ակնարկներին նվիրված հոդվածում, որը 1857 թ. տպագրվեց «Современник» ամսագրում, իսկ հեղինակին նա բնութագրեց որպես «թախծոտ ու վրդովված» գրող: «Ոչ ոք,— գրել է նա,— ավելի դա-

ըը խոսքով չի պարսավել մեր հասարակական արատները, առավել անողոքությամբ չի ներկայացրել մեզ մեր հասարակական խոցերը»: Երգիծաբանի վառ, կենսականորեն ճշմարտացի պատկերներն ու տիպերը Չերնիշևսկին լայնորեն օգտագործել է նախառեֆորմյան պայքարի վերլուծության և հեղափոխական գաղափարների պրոպագանդման համար: Թե հասարակական ինչպիսի մեծ նշանակություն էր տալիս նա Շչեդրինի գրքին, վկայում է նրա հետևյալ ամփոփիչ գնահատականը. «Նահանգական ակնարկները մենք համարում ենք ո՛չ միայն գրական սքանչելի երևույթ, այդ գիրքը ռուսական կյանքի պատմական փաստերից է»:

Չերնիշևսկու՝ Շչեդրինին տված բնութագիրն ու գնահատականը իր հոդվածում հաստատել ու լրացրել է Դոբրոլյուբովը: Նա հատուկ ուշադրություն է նվիրել Շչեդրինի՝ մանր ու չքավոր չինովնիկների հումանիստական պատկերմանը և բարձր գնահատել երգիծաբանի ստեղծագործության այդ հատկանիշը: Հանձին Նահանգական ակնարկների հեղինակի՝ նա տեսնում էր ժողովրդին պաշտպանող անմիջական դաշնակցի: «Պ-րն Շչեդրինի ողջ ժխտումը վերաբերում է մեր ժողովրդի աննշան փոքրամասնությանը,— գրում էր քննադատը:— ...Իսկ ժողովրդի մեջ պ-րն Շչեդրինի անունը, երբ այն հայտնի կդառնա նրան, միշտ կարտասանվի հարգանքով ու երախտագիտությամբ. նա սիրում է այդ ժողովրդին...»: Գրողի ստեղծագործական ուղու սկզբնական փուլի դոբրոլյուբովյան այս խորաթափանց բնութագիրը, որը բացահայտում է Շչեդրինի վերաբերմունքը ժողովրդի նկատմամբ և նրա երգիծանքի գաղափարական հիմքերը, բնորոշ եղավ նրա հետագա ողջ ստեղծագործության համար ևս, որքան էլ ջանային վիճարկել այն լիբերալներն ու հետադիմականները, երեսպաշտորեն մեղադրելով մեծ երգիծաբանին ժողովրդին ծանակելու, «յուրայիններին գանահարելու» մեջ:

Նահանգական ակնարկները ո՛չ միայն ի հայտ բերին հեղինակի գեղագրական տաղանդի ստեղծագործական անսպառ ուժը, այլև մեկընդմիշտ կանխորոշեցին Սալտիկով-Շչեդրինի՝ իբրև մարտնչող երգիծաբան-դեմոկրատի գրական գործունեության բնույթը: Այս ուղղությամբ գրողի հետագա գաղափարական զարգացման համար անսահման բարերար եղավ նրա մտերմությունը Չերնիշևսկու և Դոբրոլյուբովի հետ: 1860 թվականից Սալտիկովը դառնում է նրանց զինակիցը «Современник» հանդեսում, իսկ Դոբրոլյուբովի մահից և Չերնիշևսկու ձերբակալությունից հետո, լինելով այդ մարտական հանդեսի խմբագրության անդամ, Նեկրասովի հետ գլխավորում է այն՝ ձգտելով իրականացնել իր գաղափարական ուսուցիչների պատգամները: «Современник»-ի էջերում այդ տարիներին տպագրվում են Սալտիկով-Շչեդրինի նոր ակնարկներն ու պատմվածքները, որոնք կազմում են նրա հաջորդ երկու գրքերը՝ Անմեղ պատմվածքները (1857—1863) և Արձակ երգիծանքը (1859—1862): Այս գրքերն ուշագրավ են նրանով, որ դրանցում առաջին անգամ գրողը ներկայացնում է ճորտատիրական հասարակարգի պատկերները, ճորտ գյուղացների և մոլի ճորտատեր-կալվածատերերի ցայտուն ու կատարյալ կերպարները: Նահանգական ակնարկների համեմատությամբ, այս գրքերում այլ ուղղություն է ստանում նաև չինովնիկության մերկացման թեման: Ստորին ու միջին չինովնիկների փոխարեն երգիծաբանի թիրախն են դառնում նահանգական բյուրոկրատիայի բարձրագույն ներկայացուցիչները, դրա հետ մեկտեղ առավել սուր, առավել խարազանող են դառնում նաև բնավորությունների՝ ցարիզմի պետական ադմինիստրացիան խորհրդանշող տիպերի պատկերման եղանակները:

Արձակ երգիծանք գրքի հիմնական մասն է կազմում «սարսաղաշենյան» շարքը: Դրանում առաջին անգամ ստեղծվում է ամեն տեսակ տխմարներով բնակեցված «Սարսաղաշեն» (Գլուպով) քաղաքի կերպարը, ի հայտ է գալիս ինքնակալական-ստրկատիրական ողջ ռեժիմը խարանող շչեդրինյան գեղարվեստական այդ ամենաթունոտ փոխաբերությունը: «Սարսաղաշենյան» շարքի պատմվածքներում գրողը հետևողականորեն զարգացնում է այն միտքը, թե ստրկատիրական հին աշխարհը «մահամերձ է», թե հասել է նոր, առաջադիմական հասարակական գաղափարների կենսագործման ու հաղթանակի ժամանակը, թե դեմոկրատական գաղափարների ու վերափոխումների ուժով, լուսավորչական, պրոպագանդիստական ոգեշունչ գործունեությամբ կկործանվեն ճորտատիրության ու ինքնակալության ամրոցները: Սակայն իրադարձությունների ընթացքը շուտով համոզեց Սալտիկովին, որ գաղափարական գերազանցությունը հակառակորդի նկատմամբ դեռևս չի ապահովում հաղթանակը սոցիալական ու քաղաքական կյանքում, որ ինքը սխալվել է ամենամոտ ապագայի իր լավատեսական գնահատմամբ, և սարսաղաշենցիների շարքի «վերջին գրույցում»՝ Կապլունները ակնարկում, Շչեդրինն ստիպված էր խոստովանել. «Չսխալվենք. բռնությունը դեռ չի վերացել, չնայած խարխլվել, քայքայվել է, հոգեվարքի ժամին այն դեռ կպարզի ջղաձգությունից խեղված իր ձեռքերը». «բռնությունը դեռ չի վերացել, իսկ իդեալները դեռ հեռու



են»: Սարսաղաշենը և սարսաղաշենցիները չէին մեռել: Ռուսական իրականության մեջ իր ողջ հրատապությամբ, սրությամբ ու մասշտաբայնությամբ հարատևում էր դրանց դեմ մղվող պայքարի պրոբլեմը: Մշտապես գտնվելով այդ պայքարի առաջավոր դիրքերում՝ Սալտիկով-Շչեդրինը 60-ական թվականների վերջերին կրկին վերադառնում է ռուսական միապետության մարմնավորմանը՝ Սարսաղաշեն քաղաքին, և կործանիչ հարված հասցնում նրան՝ սոցիալ-քաղաքական երգիծանքի չգերազանցված գլուխգործոցում՝ իր հանրահայտ Մի քաղաքի պատմությունը ստեղծագործության մեջ:

Կառավարությունը 1866 թվականին արգելեց «Современник»-ը: Գրաքննության դաժան ճնշման պայմաններում այդ հանդեսի հեղափոխական-դեմոկրատական ավանդույթները շարունակեց «Отечественные записки» հանդեսը, որը գլխավորում էր Սալտիկով-Շչեդրինը՝ մեծ բանաստեղծ-քաղաքացի Նեկրասովի հետ միասին: Ստեղծագործական աշխատանքից բացի Սալտիկովը շատ ժամանակ էր նվիրում խմբագրական գործին: Հանդեսի շուրջը նա համախմբում ու դաստիարակում էր գրական լավագույն առաջավոր ուժերին: Ցարական գրաքննության մշտարթուն աչքը մեծ դժվարություններ էր հարուցում հանդեսի աշխատանքում: «Ամսագրային գործը,— գրում էր Նեկրասովը 1875 թվականին,— մեզ մոտ միշտ դժվար է եղել, իսկ այժմ ավելի է սաստկացել: Սալտիկովն այն վարում էր ո՛չ միայն արիաբար, այլև անձնվիրությամբ, և մենք էլ մեր կարյաց չափ ջանում էինք հասնել նրան: Մեծ եռանդով ու ոգևորությամբ, ոգու վիթխարի կորովով և վճռական գործնականությամբ էր Սալտիկովն իրականացնում առաջավոր հանդեսի ղեկավարի դերը նաև իր գլխավոր զինակցի՝ Նեկրասովի մահից հետո (1877):

«Отечественные записки» հանդեսում աշխատած տարիները՝ 1868-ից մինչև նրա արգելումը՝ 1884 թվականը, Սալտիկովի գրական գործունեության ամենաբեղուն, ամենափայլուն շրջանն է: 1868 թ. հանդեսի էջերում սկըսում են տպագրվել Ժամանակի կանխանշանները և Գավառայինի նամականի ստեղծագործությունները, որոնք սերտորեն առնչվում էին «Современник»-ում տպագրված Մեր հասարակական կյանքը հրապարակախոսական հոդվածների շարքի հետ: Այդ երկու ստեղծագործությունն էլ երգիծանքով ներկայացնում են 60-ական թվականների վերելքին հաջորդած ռեակցիայի սկզբնական շրջանի ռուս իրականության երևույթները: Ի հակադրություն բյուրոկրատ և լիբերալ գրչակների, որոնք բերկրանքից շնչահեղձ ապացուցում էին, թե Ռուսաստանը վիթխարի հաջողությունների է հասել առաջընթացի ճանապարհին, Շչեդրինն անողոք ճշմարտացիությամբ ցույց է տալիս, թե ինչպես է ցամաքել, աղքատացել հասարակական կյանքը, որքա՜ն բացահայտորեն են գաղափարները վերածվել լոկ բառերի, որքա՜ն եսամոլ, չնչին ու ստոր, անարգ ու «թեթևաքաշ» են դարձել ռեակցիայի հորձանուտն ընկած մարդիկ, որոնք ամե՛ն ինչ մշտապես ի սպաս են դնում իրենց նյութական, կարիերիստական, «մորթապաշտական» շահերին: Երգիծաբանը խայթող ծաղրի է ենթարկում թե՛ ռեֆորմների աննշանությունը, թե՛ լիբերալների երեսպաշտությունը: «Ո՞ր հարցն է ամենից առաջ զբաղեցրել «աճպարարների» մտքերը,— հարցնում է Շչեդրինը, հեգնական այդ «աճպարարներ» անվամբ կոչելով զեմստվոյի բյուրոկրատներին:— Մեկը մյուսին ֆոնդեր մատակարարելու հարցը: Հազարը՝ ինձ, հազարը՝ քեզ. այս է առաջին ճիչը, առաջին շարժումը: Հարց է ծագում. ե՞րբ և ո՞ր բյուրոկրատն է որևէ կերպ փորձել առարկել դրա դեմ, ե՞րբ և ո՞ր բյուրոկրատը հալումաշ չի եղել մի ավելորդ հազարի մասին մտածելիս, ե՞րբ և ո՞ր բյուրոկրատը համոզված չի եղել, թե Ռուսաստանը մի կարկանդակ է, որին կարելի է մոտենալ և անարգել կծել: Երբե՛ք և ո՛չ-ոք»:

Ռուսաստանը «կարկանդակի» պես խժռող բյուրոկրատիան է սպանիչ երգիծանքի առարկան 60-ական թվականներին սկսված Պոմպադուրներ և պոմպադուրուհիներ գեղարվեստական շարքի. այն այդպես է կոչվում Ֆրանսիայի թագավոր Լյուդովիկոս XV-ի շահամոլ ու թեթևսոլիկ, անսահման իշխանություն ունեցող սիրուհու անունով: Ի դեպ, այդ թագավորն էր ասել՝ «Ինձնից հետո՝ ջրհեղեղ»: Շչեդրինի կերտած «պոմպադուրների» կերպարներն օժտված են տիպականության վիթխարի ուժով: Տիպականացման շչեդրինյան մեթոդին բնորոշ է երևույթի գերակշռող հատկության վերհանումը, ինչպես ինքն է ասում՝ «երևույթն իր տիպիկ հատկանիշներով և ոչ թե մանրամասներով ու շեղումներով, որոնք, անշուշտ, չպետք է անտեսվեն, բայց ամենևին իրավունք չունեն մթագնելու երևույթի հիմնական էությունը»: Շչեդրին երգիծաբանը «երևույթի հիմնական էությունը» բացահայտելիս, գեղարվեստական կերպարը կերտելիս վարպետորեն օգտագործում է հիպերբոլան: Իր ներկայացրած սոցիալական տիպի մեջ եղած ողջ, նույնիսկ նոր ծլարձակող, հազիվ նշմարվող բացասականը նա զարգացնում է ծայրահեղության չափ, հասցնում ֆանտաստիկ չափերի, ընթերցողին ցույց տալու համար չարիքի ողջ նողկալիությունը, «անանց անարգանքի» մատնելու չարիքը: Շչեդրինյան երգիծանքի այդ հատկությունը մի առանձին ուժով ի հայտ է գալիս «սարսա-

ղաշենցիների» ու «պոմպադուրների» մասին գրված պատմվածքների աշխարհից ծնված Մի քաղաքի պատմության (1869—1870) ահռելի գրոտեսկում:

Մեր սարսաղաշենյան գործերը ակնարկում Շչեդրինը հայտնում է, թե Սարսաղաշեն քաղաքի պատմությունն առնետները կերել են. իսկ այժմ այն, իբր, գտնվել է Սարսաղաշենի արխիվում, բայց այն կրծել են առնետները և ծրտոտել ճանճերը: Մեր առջև է մի տարեգրություն, որտեղ, հեղինակի հավաստիացմամբ, ուղղված է միայն հնացած, ծանր ոճը: Տարեգրությունն սկսվում է Սարսաղաշենի նախապատմական ժամանակներին նվիրված ավանդապատումով. այնուհետև ընթերցողն անցնում է 1731—1825 թվականներն ընդգրկող պատմական ժամանակներին, երբ, ինչպես Շչեդրինն է ասում՝ «պատմությունը դադարեցրել էր իր ընթացքը» (այս խոսքերով հեղինակը բացահայտորեն ակնարկում է Նիկոլայ I-ի գահակալությունը, որն սկսվել էր դեկաբրիստների մահապատժով):

Մեր սարսաղաշենյան գործերը ակնարկում Շչեդրինը բացականչում է. «Ո՞վ դուք, որ դեռ հավատում եք Սարսաղաշենի պատմության հնարավորությանը, ասացե՛ք ինձ, հնարավո՞ր է արդյոք այնպիսի պատմություն, որի բովանդակությունը լիներ մշտական անվերջանալի վախը»: Մի քաղաքի պատմությունը երկում նա, ասես, պատասխանում է այդ հարցին և ցույց տալիս, որ ռուսաստանյան ինքնակալական կարգերում հնարավոր չէ ոչ մի կատարյալ «պատմություն», այսինքն՝ կատարյալ հասարակական ու պետական կյանք: Գրողը գործադրում է մերկացման բոլոր միջոցները ինքնակալության գործիչների նկատմամբ նողկանքի զգացում հարուցելու համար: Այդ նրան հաջողվում է Ցուցակ քաղաքացիների գփխում, որի համառոտ տեղեկությունները նախորդում են Սարսաղաշեն քաղաքի «լավագույն» տիրակալների «քաջագործություններին» նվիրված հաջորդ գլուխներում շարադրված հանգամանալի նկարագրությանը: Սարսաղաշենի քաղաքապետների շքերթը բացում է Բրուդաստի-Օրգանչիկը, որ մարմնավորում է կառավարական բռնակալության հիմնական հատկանիշները: Գլխի փոխարեն Բրուդաստու ուսերին դնելով «քար ու քա՛նդ կանեմ», «չե՛մ հանդուրժի» անընդհատ կրկներգող պրիմիտիվ երաժշտական գործիքը՝ «օրգանչիկը», Շչեդրինն սպանիչ ծաղրով բացահայտում է ցարական բարձրաստիճան պաշտոնյայի բթությունն ու վայրագությունը: Գեղարվեստական չափազանցման, կերպարի ֆանտաստիկ սրման, երգիծական գրոտեսկի, եզոպոսյան լեզվի մեծ վարպետն ստեղծելով՝ «հանուն լուսավորության պատերազմներ» մղող, բարեհուսության պահակ, երթավարժեցումների հրամանատար, զանազան արվարձանների վրա մշտապես արշավող քաղաքապետ Բորոդավկինի կերպարը, ծաղրել է Նիկոլայ I-ին: Ալեքսանդր I-ի հատկանիշներն են մարմնավորում «տռփասեր Թամար իշխանուհու ժառանգի»՝ նրբազեղ շարժուձևով քաղաքապետ Միքալաձեի և «Կիպրիդայի երկրպագու» պորտաբույծ Էրաստ Գրուստիլովի կերպարները. ահա և խճողված գլխով քաղաքապետ Պրիշչը («Պզուկը») և, վերջապես՝ Արակչեևի «երկվորյակ», սոսկալի «ապուշ» Ուգրյում-Բուրչեևը, մի մարդ, որ երազում էր զորանոց դարձնել ողջ աշխարհը, միաձևություն մտցնել ամեն ինչում, բռնակալ, որի օրոք «պատմությունը դադարեցրեց իր ընթացքը» և «գրական գործունեությունն այլևս մատչելի չէր նույնիսկ արխիվարիուսներին»: Ուգրյում-Բուրչեևի գրոտեսկային կերպարը ցույց է տալիս, թե ինչպիսի՛ զայրույթ ու արհամարհանք է տածել գրողը ցարիզմի նկատմամբ և ինչպես էր կարողանում անարգանքի սյունին գամել ժողովրդին թշնամի իշխանությունը:

Իրավազուրկ մարդկանց պաշտպանելով ուգրյում-բուրչեևներից, կարեկցելով ճնշված ժողովրդին, Շչեդրինը, միաժամանակ, խարազանում էր մասսաների քաղաքական պասսիվությունը, նրանց չհավատալն իրենց հնարավորություններին, ջանում ծիծաղի ուժով օգնել ժողովրդին՝ ձերբազատվելու «պետասիրությունից», դարավոր ճնշումից ծնված ստրկական հոգեբանությունից, ձգտում արթնացնել նրա քաղաքացիական ինքնագիտակցությունը: Հեղինակի տխուր խորհրդածումները «մինչև այժմ, ասես, պատմության սահմաններից դուրս համարվող, այսպես կոչված, ամբոխի», ինքնակալական ռեժիմի լծի ողջ ծանրությունն իր վրա կրող ռուս ժողովրդի ճակատագրի ու վարքի մասին որոշ քննադատների առիթ են տվել մեղադրելու Սալտիկովին ժողովրդին ծաղրելու մեջ: Ի պատասխան այդ մեղադրանքների, Շչեդրինն իր՝ խմբագրությանն ուղղված նամակում գրել է. «Ժողովրդին ծաղրելու վերաբերյալ թյուրիմացությունը ծագում է նրանից, որ իմ գրախոսը պատմական ժողովրդին, այսինքն՝ պատմության բեմում գործող ժողովրդին չի տարբերում դեմոկրատիզմի գաղափարները մարմնավորող ժողովրդից: Դրանցից առաջինը գնահատվում և կարեկցանքի է արժանանում ըստ իր գործերի: Եթե նա կերտում է բորոդավկիններ և ուգրյում-բուրչեևներ, ապա կարեկցանքի մասին խոսք անգամ լինել չի կարող. եթե նա դրսևորում է անգիտակից վիճակից



դուրս գալու ձգտում, ապա միանգամայն օրինական է կարեկցանքը նրա նկատմամբ, բայց այդ կարեկցանքի աստիճանը, այնուամենայնիվ, պայմանավորված է դեպի գիտակցությունը տանող ճանապարհին գործադրված ջանքերի չափով: Իսկ դեմոկրատիզմի գաղափարները մարմնավորող «ժողովրդին» չի կարելի չկարեկցել թեկուզ լոկ այն բանի համար, որ նրա մեջ են ամեն մի անհատական գործունեության սկիզբն ու վախճանը»:

Վաթսունական թվականների ռեալ իրադրությունը չէր կանխագուշակում ժողովրդի համբերության մոտալուտ սպառումը, այն միայն հիմք էր տալիս ենթադրելու, թե անսպառ չէ այդ համբերությունը, թե այն կարող է ավարտվել տարերային պոռթկումով: Հենց այդ էր ակնարկում շչեդրինյան այս գործի հանգուցալուծումը՝ Ուգրյում-Բուրչեևին քշող-տանող մրրկի սիմվոլիկ պատկերը վեպի վերջում:

Մեր քաղաքի պատմությունը ինչեց և՛ որպես միապետության կործանման ահավոր կանխագուշակություն, և՛ որպես ակտիվ պայքարի կոչ նրա դեմ, և՛, միաժամանակ, նախազգուշացում տարերային ապստամբության կործանիչ հետևանքների:

Յոթանասունական թվականներին Շչեդրինը գրում է իր հռչակավոր վեպը՝ Պարոնայք Գոլովլյովները— ռուսական քննադատական ռեալիզմի հանճարեղ ստեղծագործություններից մեկը: Շարունակելով Գոգոլի Մեռած հոգիների թեման և ավանդույթները՝ Շչեդրինն իր վեպում անխնա խարազանում է Ռուսաստանում կալվածատերերի տիրապետությունից ծնված սոցիալական չարիքը և կայացնում ճորտատիրության անողոք դատավճիռը: Կալվածատիրական դասակարգի քայքայումը գրողը ցույց է տալիս ազնվական մի ընտանիքի բարոյական այլասերման և ֆիզիկական անհետացման պատմության միջոցով: Այդ վեպում գրողի զենքը ոչ թե ծիծաղն է, այլ վարպետորեն արված հոգեբանական խոր վերլուծությունը: «Գոլովլյովյան» աշխարհից ծնվող սոցիալ-բարոյական արատների ցայտուն արտահայտությունն է վեպի կենտրոնական դեմքը՝ արյունախում Իուդուշկայի հրեշավոր կերպարը. բարեմիտ ճառերով քողարկվող այդ գիշատիչը, կեղծավորությամբ բարեկամ ձևացող մատնիչը, մեղրածոր դատարկախոսությամբ նենգորեն դիմակավորված այդ սոցիալական պորտաբույծն ու բարոյական վիժվածքը ոտնակոխ է անում մարդկայնության բոլոր նորմերը: Որպես հոգեբանական տիպ, Իուդուշկան մարմնավորում է սեփականատերերի ու շահագործողների հոգեբանության ամենանողկալի, բայց և ամենակենսունակ հատկանիշները, մարմնավորում կեղծավորության ու մատնության ողջ էությունը, դրանով իսկ դառնալով իրոք համամարդկային ընդհանրացում: Իուդուշկան դարերի համար կերտված կերպար է, գրողի գեղարվեստական ամենամեծ նվաճումներից մեկը:

Եթե Պարոնայք Գովլովլյովները վեպը Շչեդրինի ստեղծագործության բարձրագույն նվաճումն է սոցիալ-կենցաղային հոգեբանական վեպի ժանրում, ապա Ժամանակակից իդիլիան (1877—1883), Մի քաղաքի պատմության հետ միասին, երգիծական քաղաքական վեպի փայլուն օրինակ է: Լինելով Շչեդրինի ոչ առաջին, ոչ էլ վերջին հարվածը ռեակցիային, Ժամանակակից իդիլիան՝ այս փայլուն երկը, անողոքությամբ և երգիծական մերկացման արտակարգ վարպետությամբ խարանում է կառավարական ռեակցիան, ինչպես և դրա կործանիչ ազդեցությունը ռուսական հասարակության ամենալայն խավերի վրա: Վեպը գրվել է այն պահին, երբ ինքնակալությունը, նարոդովոլեցների նկատմամբ դատաստան տեսնելով, նորանոր զոհեր էր պահանջում: Երկրում իշխում էին տեռորը, լրտեսությունը, մատնիչությունը. այդ ամենի պատճառով հասարակությունը խուճապի էր մատնվել, տարածված էին լիբերալ մտավորականության մասսայական դավաճանությունը, շողոքորթությունն ու հարմարվողականությունը: Մի խոսքով, այդ մի շրջան էր, երբ, Շչեդրինի դիպուկ արտահայտությամբ, սրիկան դարձել էր ժամանակի հերոսը:

Այս ամենն իր ցայտուն արտացոլումն է գտել վեպում: Շչեդրինն այստեղ ծաղր ու ծանակի է ենթարկում ոստիկանական փութաջանությունից խելակորույս պետերին, վեպն ավարտելով Հերիաթ ջանասեր պետի մասին հանրահայտ գրվածքով: Նա անարգանքի սյունին է գամել ռեակցիայի բարոյազուրկ «հերոսներին», նրանց ընդհանրացված պատկերը կերտելով սրիկայի մասին գրված Մտքերի տիրակալը ֆելիետոնում: Հանձին իրենց կաշվի փրկության մասին մտածող երկու «իդեալական-բարեմիտ անասունների»՝ վեպում վառ պատկերված է ահաբեկված լիբերալների կերպարը: Եվ խեղկատակային կատակերգության՝ մարդկային կերպարանքը կորցրած հերոսների կողքին երևան է գալիս մոլեգնող ռեակցիայի զոհը դարձած մարտիկների իրոք մարդկային ողբերգությունը (հեքիաթ Չարաբաստիկ խարակաձկան դատի մասին), և պետերի ու նորագույն ցեղի գիշատիչների կողմից կողոպտված գյուղի աշխատավորների ողբերգությունը:

Ժամանակակից իդիլիայի գեղարվեստական յուրօրինակությունն ստեղծվել է հումորի, ֆանտաստիկայի և եզոպոսյան այլաբանության

միասնությամբ: Այդ ստեղծագործության մեջ երգիծաբանի սրամտությունը հորդում է գետի նման, և հումորը փայլում է իր բոլոր գույներով ու երանգներով: Օրվա քաղաքական հրատապ խնդրին նվիրված ժամանակակից իդիլիայում վարպետության բարձրագույն աստիճանի է հասցված եզոպոսյան այլաբանությունը, որի օգնությամբ երգիծաբանը հաղթանակ է տանում գրաքննության նկատմամբ, ծաղրում և վրեժ է լուծում նրանից դաժան ճնշման համար:

Ստեղծագործական ուղու վերջին շրջանում Շչեդրինի ստեղծած Հեքիաթներ գիրքը (1883—1886) երգիծաբանի ամենափայլուն և ամենահանրահայտ ստեղծագործություններից է: Շչեդրինը հեքիաթի ժանրի օգնությանն է դիմել, քանի որ այն հնարավորություն է ընձեռում «կոնսպիրացնելու» գաղափարա-քաղաքական սուր մտահղացումները և ուղի է բացում դեպի ընթերցողների ավելի լայն խավերը: Ժողովրդական մասսաների համար առավել մատչելի և նրանց կողմից սիրված այդ ձևի մեջ Սալտիկովը դնում է իր երգիծանքի գաղափարա-թեմատիկ ողջ հարստությունը: Շոշափված հարցերի բազմազանությամբ և սոցիալական տիպերի պատկերմամբ հեքիաթների գիրքը կարևոր տեղ է գրավում Շչեդրինի ժառանգության մեջ՝ կազմելով գրողի ստեղծագործության գեղարվեստական սինթեզը: Գաղափարական հարուստ բովանդակությունն այստեղ արտահայտված է հանրամատչելի և վառ գեղարվեստական ձևով, որը ներառնում է ժողովրդաբանաստեղծական լավագույն ավանդույթները: Շչեդրինյան հեքիաթները գրված են պարզ, սեղմ ու արտահայտիչ, իսկական ժողովրդական լեզվով, բառերն ու կերպարները, ասես, վերցված են ժողովրդական հեքիաթներից ու ավանդապատումներից, առածներից ու ասացվածքներից, ժողովրդի կենդանի խոսվածքից: Սակայն երգիծաբանը չի ընդօրինակում ֆոլկլորային նմուշները, այլ ազատ և ինքնուրույն ստեղծագործում է դրանց հիման վրա ու դրանց ոգով: Նրա սքանչելի հեքիաթներում համադրվում, իր ողջ ուժով երևան է գալիս զուտ շչեդրինյան գրելաձևը, նրա արտահայտչամիջոցների ու ոճաձևերի բազմազանությունը, դիմանկարի երգիծական տիպականացման, երկխոսության, բնանկարի ստեղծման նրա անկրկնելի վարպետությունը, նրա հորդաբուխ հումորը, կյանքի ռեալիստական պատկերման համար հիպերբոլայի, ֆանտաստիկայի, այլաբանության հմուտ օգտագործումը: Թագավորներին ու նրանց մեծատոհմիկ աստիճանավորներին խարանող ու արհամարհական սարկազմ (Արջը կուսակալ, Արծիվը մեկենաս), պորտաբույծ ազնվականների կայտառ ծանակում (Այն մասին, ինչպես գյուղացին երկու գեներալ կերակրեց, Վայրի կալվածատերը), սոցիալական անհավասարության անողոք մերկացում և խոր ցավ ու տագնապ տառապյալ ու հնազանդ աշխատավորի բախտի, ժողովրդի ճակատագրի համար (Քնձռոտ ձին). անընդգրկելի է Շչեդրինի հեքիաթների աշխարհը, անմահ են դրանցում ստեղծված կերպարները:

Սալտիկով-Շչեդրինը մահացել է 1889 թվականին: Նրա կյանքը եղել է համակ պայքար և ոգեշունչ ստեղծագործություն: Դրա վկայությունն այն երկու սքանչելի գրքերն են, որոնք գրողն ստեղծել է իր կյանքի վերջին, երբ ծանր, տանջալից հիվանդությունը ջլատում էր նրա սպառվող ուժերը: Այդ գրքերից մեկը՝ Կյանքի մանրուքները, լի է ողբերգականությամբ և լուսաբանում է, Շչեդրինի խոսքերով ասած՝ «խեղված մարդկանց պաշտպանության թեման». այն համակված է գաղափարազուրկ գոյության, ստրկական հնազանդության և պասիվության դեմ ուղղված բողոքով, կոչ է անում դուրս գալ «կյանքի մանրուքների գերությունից, հանուն մարդկային վեհ իդեալների գիտակցական կենսագործման»: Մյուսը Պոշեխոնյան եղելություններ գիրքն է, որն արտացոլում է տխուր, ծանր անցյալը և հավատը գալիք սերունդների նկատմամբ: Հասարակության չարիքն ու արատները մերկացնող մեծ Շչեդրինը բարիք ու լույս էր ցանկանում մարդկանց և մահից առաջ գրված Պոշեխոնյան եղելություններում, դիմելով մանուկներին՝ «գալիք պատմական ճակատագրի տնօրեններին», նա գրում է. «Մի՛ մխրճվեք ներկայի մանրամասների մեջ... այլ ձեր մեջ դաստիարակեք գալիքի իդեալները, քանի որ դրանք յուրատեսակ արեգակի շողեր են, առանց դրանց կենարար ազդեցության, երկրագունդը քար կդառնար: Մի՛ թողեք, որ քարանան ձեր սրտերը, ջանացեք նշմարել գալիքի հեռանկարներում կայծկլտացող լուսավոր կետերը»:

Սալտիկով-Շչեդրինի անունն ու ստեղծագործությունը վիթխարի հռչակ ու սեր էին վայելում ռուսական հասարակության առաջավոր շրջաններում: Շչեդրինին բարձր էին գնահատում նրա հռչակավոր ժամանակակիցներ Նեկրասովը, Տուրգենևը, Գոնչարովը, Տոլստոյը: Տոլստոյը գտնում էր, որ Շչեդրինի մոտ կա «այն ամենը, ինչ պետք է» ժողովրդի սերը նվաճելու համար՝ «հակիրճ, հզոր, կատարյալ լեզու», «կայտառ ծիծաղ», «ժողովրդի իրական շահերի ըմբռնում»: Շչեդրինը,— ասում էր Տուրգենևը,— «խոր հետք է թողել մեր գրականության մեջ», ստեղծել է իր մարգը, որտեղ նա «անվիճելի վարպետ է, առաջին մարդը»:



Շչեդրինի ստեղծագործությունը, դեռևս նրա կենդանության օրոք, լայն արձագանք է գտել նաև հայ մտավորականության շրջանում: Գրողի այս կամ այն երկի լույսընծայման վերաբերյալ հաղորդումներում, դրանց մասին հայտնված կարծիքներում ու քննադատական մի շարք մեծ ու փոքր հոդվածներում «Մշակը» ընթերցողների ուշադրությունն էր հրավիրում մեծ երգիծաբանի վրա: Սակայն Շչեդրինի ստեղծագործությունը, ինչպես հարկն է, մասսայականացվել, հայ ընթերցողի սեփականությունն է դարձել սովետական կարգերի հաստատումից հետո:

Շչեդրինի գրական գործունեությունը վիթխարի ազդեցություն է գործել Ռուսաստանի հասարակական կյանքում. նրա քաղաքական երգիծանքը հիանալի զենք էր հեղափոխականների համար, նրա սուր խոսքն ակտիվ օգնում էր ռուս մարքսիստներին՝ սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման տարիներին նրանց մղած քաղաքական պայքարում: Շչեդրինյան գաղափարներն ու կերպարները բազմիցս օգտագործել և փայլուն կերպով մեկնաբանել է Վ. Ի. Լենինը իր մի շարք աշխատություններում. այլ գրողներից շատ ավելի հաճախ նա դիմում էր մեծ երգիծաբանի երկերին: Իր աշխատություններում Լենինն առավել հաճախ էր դիմում Իուդուշկա Գոլովլյովի կերպարին: Ընչաքաղց Իուդուշկայի հետ նա համեմատում էր ցարական կառավարությունը, որը բարձր քաղաքականության նկատառումներով է քողարկում սովյալից վերջին պատառը խլելու՝ հուդայական իր ձգտումը, համեմատում էր բյուրոկրատիային նրա հետ, որն ամենավտանգավոր երկերեսանի Իուդուշկայի նման «Ժողովրդասիրական ֆրազների թզենու տերևով հմտորեն թաքցնում է արակչեևյան իր բաղձանքները», բուրժուական կալվածատիրոջը՝ «...ռոմանտիզմի ու մեծահոգության մի ամբողջ դոկտրինայով իր ներքին էությունը թաքցնելու ունակությամբ»: Լենինի աշխատություններում մենք հանդիպում ենք և՛ կադետ Իուդուշկային, և՛ լիբերալ Իուդուշկային, և՛ հեղափոխության դավաճաններ Իուդուշկա Տրոցկուն, Իուդուշկա Կաուցկուն, և՛ կեղծավորների շատ տարատեսակների, որոնց ճառերը «...ջրի երկու կաթիլի պես նման են անմահ Իուդուշկա Գոլովլյովի անմահ ճառերին»: Լենինը շատ անգամ է օգտագործել նաև շչեդրինյան Հեքիաթների կերպարները: Քնձռոտ ձիում նա նշել է մարդու զարթոնքի «...համաշխարհային պատմական, վիթխարի նշանակությունը»: Նա խարանում էր սևհարյուրակայիններին, որպես «վայրի կալվածատերերի», և մերկացնում «վայրի կալվածատիրոջ» կրքերը 1905 թվականի կալվածատիրական լիբերալիզմում: Լիբերալների հետ դաշինքի ձգտող մենշևիկներին նա բնութագրում էր որպես «գերիմաստուն խարակաձկներ». հիշելով սալտիկովյան իդեալիստ ծածանին՝ նա գրում է. «...քանի դեռ դեմոկրատիան ունի քաղաքական ծածաններ, ապրելու բան կունենան նաև լիբերալիզմի գայլաձկները»:

Լենինը բոլշևիկյան մամուլին խորհուրդ էր տալիս հետևողականորեն պրոպագանդել Շչեդրինի ստեղծագործությունը: «Լավ կլիներ առհասարակ ժամանակ առ ժամանակ «Правда»-ում հիշել, մեջբերումներ կատարել և լուսաբանել Շչեդրինին և նարոդնիկական «հին» դպրոցի մյուս գրողներին»,— գրում էր նա 1912 թվականին «Правда»-ում զետեղված Վիտիմսկու (Մ. Օլմինսկու) Կուլտուրական մարդիկ և անմաքուր խիղճը հոդվածի առթիվ:

Շչեդրինի ստեղծագործությունը ջերմորեն սիրում էր նաև մարքսիստ քննադատ, սովետական կուլտուրայի ականավոր գործիչ Ա. Վ. Լունաչարսկին: Ռուս մեծ գրողի ստեղծագործական հարուստ և ազնիվ գործունեությանը նվիրված այս ակնարկն ավարտենք Սալտիկով-Շչեդրինի 100-ամյակի առթիվ (1926) Լունաչարսկու ելույթի հետևյալ խոսքերով.

«Իսկ այժմ ես կուզեի, որ այս տողերը կարդացողը պատկերացներ Շչեդրինի դիմանկարը— այն, որից ձեզ է նայում երկարամորուք ծերուկը: Ընկալե՛ք այդ դիմանկարը ամենայն խորությամբ: Իհարկե, Շչեդրինը հիվանդ էր... բայց ֆիզիկական հիվանդություններից մարդու դեմքը այդքան ոգեշունչ տառապանք չի արտահայտում: Ինչպիսի՜ խստություն, դատավորի ինչպիսի՜ աչքեր: Ինչպիսի՜ յուրահատուկ, աննկուն, կատարյալ բարություն է ցայտում այս ամենից: Որքա՜ն մեծ է տառապանքը, որ կնճիռներ է ակոսել այդ իսկական մարտիրոսի դեմքին: Գրենք այդ անունը մարդկության իսկական մարտիրոսների ցանկում... և Շչեդրինի գրած ընտիր ստեղծագործությունները թող դառնան ամեն մի գրադարանի անսասան սյուները: Չէ՛ որ եթե Շչեդրինը որոշ առումով թերևս դժվարին է, ապա շատ հեշտ է, երբ նա մեզ հետ է: Մի՛ կարծեք, թե շփլածածկ ունքերով այս հիվանդ ծերուկը՝ խայթող աչքերով այդ մարդը, վշտոտ դատավորը խրթին քարոզ կկարդա ձեր գլխին, ո՛չ, անսահման ուրախ, խիստ սրամիտ մարդ է նա, մեծագույն «կատակաբան», այնպիսի ծիծաղի վարպետ, որից մարդը իմաստուն է դառնում»:

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՆԽՈՆՋ ՄԱՐՏԻԿԸ

(ՎԻԼՀԵԼՄ ՊԻԿԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ԲԱՆՎՈՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ, ՄԻՋԱԶԳԱՅԻՆ բանվորական շարժման երևելի գործիչ, Գերմանիայի կոմունիստական կուսակցության, Գերմանիայի սոցիալիստական միացյալ կուսակցության հիմնադիրներից ու ղեկավարներից մեկը, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության առաջին պրեզիդենտ՝ այսպիսին է բանվոր դասակարգի գործի ակտիվ ու անձնուրաց մարտիկ Վիլհելմ Պիկի կյանքի փառավոր ուղու կարճ և համառոտ բովանդակությունը:

Անմոռանալի է Վիլհելմ Պիկի կերպարը բոլոր նրանց համար, ովքեր երբևէ տեսել ու լսել են նրան, մեծ հեղափոխականին, սովետական ժողովրդի անկեղծ բարեկամին: Տողերիս հեղինակին, աշխատանքի բերումով ԳԴՀ-ում եղած տարիներին, նույնպես բախտ է վիճակվել տեսնել և լսել մեծ ինտերնացիոնալիստին, պետական և հասարակական խոշոր գործչին: Հիշում եմ, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության կազմակերպման երրորդ տարեդարձի տոնակատարության առթիվ նրա այցելությունը Կարլ-Մարքս-Շտադտ (Հեյմնիտց), այն ժամանակ գերմանական երիտասարդական միության ղեկավար Էրիխ Հոնեկերի հետ: Դա 1952 թ. հոկտեմբերի 7-ին էր: Կարլ-Մարքս-Շտադտը՝ ԳԴՀ-ի արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկը, այդ օրը անսովոր գեղեցկացել էր: Աննկարագրելի էր հատկապես բանվոր-երիտասարդների՝ ջահերով շքերթը, որի առաջին շարքում քայլում էր 76-ամյա պրեզիդենտը: Մարդկանց աչքերում կարելի էր կարդալ անկեղծ վստահությունը և խոր ու ջերմ հարգանքը իրենց ղեկավարի հանդեպ, որը նրանց հետ կիսում էր Գերմանիայի պատմության մեջ առաջին բանվորա-գյուղացիական պետության ըստեղծման ու գոյության երրորդ տարեդարձի ուրախությունը:



Հիշողությանս մեջ վառ է նաև պրեզիդենտի փայլուն ելույթը Զիգմար-Շենաուի հանքագործների կուլտուրայի պալատում: Դիմելով հանքագործներին և երիտասարդներին, նա կոչ էր անում նրանց՝ աշխատել անձնվիրաբար, կառուցել նոր, երջանիկ կյանք, սիրել սովետական երկիրը և սովորել նրա ժողովրդից, որը առաջինն է կանգնել սոցիալիզմի ուղու վրա ու ստեղծել ժողովուրդների իսկական ինտերնացիոնալ բարեկամության հասարակություն: Նա ընդգծում էր, որ ՍՍՀՄ-ի փորձը և բանվոր դասակարգի մարքս-լենինյան քաղաքականությունը ընդօրինակելով միայն կարելի է լիովին վերացնել ֆաշիզմի թողած արատներն ու այլանդակությունները, հաղթահարել դժվարությունները: Պրեզիդենտը պահանջում էր երիտասարդներից, առաջին հերթին երիտասարդ բանվորներից՝ սովորել և խոր յուրացնել նոր հասարակարգի կառուցման մարքս-լենինյան ուսմունքը: Նա հատուկ նշանակություն էր տալիս գերմանական և սովետական մասնագետների համատեղ համերաշխ աշխատանքին, որ կատարում էին նրանք այդ ժամանակ պատերազմից քայքայված երկրի տնտեսության վերականգնման նպատակով: Վիլհելմ Պիկը հետևողական պրոլետարական հայրենասեր էր, սովետական ժողովրդի նվիրված բարեկամ: Նա ցանկանում էր, որ նորաստեղծ ԳԴՀ-ն դառնա սոցիալիստական ծաղկող հանրապետություն՝ Սովետական Միության հետ իսկական բարեկամությամբ ու եղբայրությամբ կապված: Կուսակցական ու պետական գործչի իր ողջ տաղանդը նա ծառայեցրեց հանուն այդ նվիրական նպատակների:

Վիլհելմ Պիկը մահացավ 1960 թ. սեպտեմբերի 7-ին: Նա հասցրեց տեսնել ամուր ոտքերի վրա կանգնող և զարգացման սոցիալիստական ուղին մտնող Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, նրա առաջին տնտեսական հաջողությունները, Սովետական Միության և սոցիալիստական համագործակցության երկրների հետ ամրապնդվող բարեկամությունն ու համերաշխությունը:

Վիլհելմ Պիկը ծնվել է 1876 թ. հունվարի 3-ին, Հուբեն (Նիդեր Լաուզից) քաղաքում, բանվորի ընտանիքում: Ավարտելով ժողովրդական հանրակրթական դպրոցը, սովորում է ատաղձագործություն և դառնում բանվոր-ատաղձագործ:

Բանվոր դասակարգի վրա կապիտալի ուժեղացող ճնշումն ավելի է բարձրացնում հեղափոխական ալիքը Գերմանիայում՝ դասակարգային պայքարի մեջ ներքաշելով նորանոր ուժեր: Հենց այդ ժամանակ էլ հեղափոխական պայքարի իր առաջին քայլերն է կատարում երիտասարդ Պիկը՝ մասնակցելով բանվորական մասսայական ցույցերին: 1894 թ. տասնութամյա Պիկը մտնում է փայտամշակողների գերմանական արհեստակցական միության մեջ: Այստեղ նա համոզվում է, որ կեղեքիչների դեմ մղվող պայքարում պրոլետարիատը, դասակարգային ամուր կազմակերպությունից բացի, ուրիշ զենք չունի: Ծանոթանալով Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության ծրագրին, 1895 թ. նա ընդունվում է այդ կուսակցության շարքերը:

Իր քաղաքական գործունեության առաջին իսկ օրերից Վ. Պիկը հանդես է բերում մասսաներին կազմակերպելու արտասովոր ընդունակություն: Արդյունաբերական Բրեմեն քաղաքում, լինելով կուսակցության և արհեստակցական միության ակտիվ աշխատող, նա մի շարք տարիներ ղեկավարում է բանվորական գործադուլային շարժումները: Ի դեմս նրա, բանվորները տեսնում էին շահագործողների դեմ մղվող պայքարում իր դասակարգին նվիրված, սկզբունքային, ազնիվ և անաչառ մարտիկի: Այդ տարիների հեղափոխական գործունեության պրակտիկան երիտասարդ կուսգործիչների առջև դնում էր նրանց տեսական պատրաստության հարցը: Պիկը նույնպես լրջորեն զբաղվում է ինքնակրթությամբ և բավականին հիմնավոր ուսումնասիրում միջազգային պրոլետարիատի մեծ առաջնորդներ Մարքսի և Էնգելսի աշխատությունները:

Նոր, XX դարի մուտքով Պիկը պարզորոշ տեսնում է, թե ինչպես է փոխվում կապիտալիզմի բնույթը, կենտրոնացվում կապիտալը, ուժեղացվում պրոլետարիատի շահագործումը, թե ինչպես է տենդորեն ռազմականացվում Գերմանիան, պատրաստվում համաշխարհային սպանդի: Դրա դեմ իր բողոքի ձայնն է բարձրացնում և նա: Սակայն Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը, որը կանգնած էր ռեֆորմիզմի և կայզերական կարգերի հետ հաշտվողական դիրքերում, հաշվի չի նստում նման բողոքների հետ:

1906 թ. հուլիսին Վ. Պիկը ընտրվում է Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության բրեմենյան կազմակերպության քարտուղար: Դա մի ժամանակաշրջան էր, երբ առաջին ռուսաստանյան հեղափոխության ազդեցության տակ և հենց Գերմանիայում քաղաքական իրադարձությունների զարգացման ընթացքում ԳՍԴԿ-ի շարքերում սկսեց ձևավորվել նրա ձախ թևը: Ի տարբերություն աջ սոցիալ-դեմոկրատների, որոնք աստիճանաբար ավելի ու ավելի էին հեռանում մարքսիզմից, ձախերը պայքարում էին հեղափոխական դիրքեր վերադառնալու համար: Չբաժանելով գերմանական սոցիալ-դեմոկրատների աջ ղեկավարների կարծիքը, Պիկը վճռականորեն կանգնում է ձախերի դիրքերում, որոնց ղեկավարում էին Կ. Լիբկնեխտը, Ռ. Լյուքսեմբուրգը, Կ. Ցետկինը, Ֆ. Մերինգը, և որոնց հետ ինքը սերտ կապված էր:

Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության 1908,1909, 1912 թթ. համագումարներում Վիլհելմ Պիկը հանդես է գալիս կուսակցության վարչության օպորտունիստական քաղաքականության դեմ: Դասակարգային կայունության համար բանվորական մասսաների աչքում նրա հեղինակությունն ավելի է բարձրանում, և նա դառնում է սոցիալ-դեմոկրատական կուսակցության ճանաչված ղեկավարներից մեկը: 1910 թ. Պիկը ընտրվում է կուսակցության վարչության՝ լուսավորության գծով կենտրոնական հանձնաժողովի երկրորդ քարտուղար, միաժամանակ կատարելով կենտրոնական կուսակցական դպրոցի քարտուղարի պարտականությունը: Քաղաքական աշխատան-

քի 10—15 տարիների ընթացքում, շնորհիվ իր հսկայական աշխատասիրության, Պիկը հաջողությամբ յուրացնում է դասակարգային պայքարի տեսությունը:

Ռուսաստանում հեղափոխական նոր վերելքի շրջանում բուռն հուզումներ է ապրում նաև Գերմանիան: Երկրում հասունացած ճգնաժամից դուրս գալու ելքը կայզերական Գերմանիան տեսնում էր համաշխարհային պատերազմի նախապատրաստվելու մեջ: Այդ ժամանակ գերմանական կառավարությունը բնակչության մասսայական ուսուցում է անցկացնում, ավելացնում է զենքի թողարկումը, բանակի սպառազինումը, ակտիվացնում է ռազմական հետախուզությունը, ուժեղացնում ռազմա-ծովային նավատորմը, բարձրացնում բանակի մոբիլիզացիոն պատրաստությունը և, աշխարհում լարված քաղաքական մթնոլորտ ստեղծելու նպատակով, պրովոկացիոն ակտեր կազմակերպում երկրագնդի տարբեր ծայրերում:

Գերմանական ժողովրդի լավագույն զավակները հանդես են գալիս կայզերական կառավարության այդ ավանտյուրիստական քաղաքականության դեմ: Վ. Պիկը օպոզիցիոն դիրք է գրավում շովինիստական մոլուցքով արբեցած սոցիալ-դեմոկրատների նկատմամբ, իսկ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին (1914—1918 թթ.) պայքարում է ԳՍԴԿ-ի շովինիստական քաղաքականություն վարող լիդերների դեմ, որոնք, մոռանալով բանվոր դասակարգին տված «Պատերազմին՝ պատերազմ» հայտարարելու մասին իրենց հավաստիացումները, այժմ կոչ էին անում «Ամեն ինչ ենթարկել պատերազմին», «Պատերազմը հասցնել մինչև հաղթական ավարտը»: Չվախենալով այն ժամանակվա ռեպրեսիաներից և խիստ պատժաօրենքներից, Վ. Պիկը պատերազմի առաջին իսկ օրերից կուսակցական, արհմիութենական և երիտասարդական կազմակերպություններում ելույթներով հանդես է գալիս կառավարության շովինիստական և զավթողական քաղաքականության, պատերազմի հակաժողովրդական էության դեմ: Այդ ելույթներն աննկատ չեն մընում ոստիկանության կողմից, որը հակապատերազմական «դավադիրների» դեմ պայքարում քիչ հեղափոխական մարտիկների չձերբակալեց: Պիկը նույնպես գտնվում էր գաղտնի հսկողության ներքո:

Քաղաքական իրադրությունը Գերմանիայում պահանջում էր ստեղծել հեղափոխական մարտական կազմակերպություն: Գերմանական բանվորական շարժման նշանավոր գործիչ Կ. Լիբկնեխտի հետ Վ. Պիկը դառնում է «Սպարտակի միության» հիմնադիրներից մեկը: Պատերազմի տարիներին ԳՍԴԿ-ի ձախ թևը բանավոր և տպագիր ակտիվ պրոպագանդա էր վարում ընդդեմ պատերազմի՝ ժողովրդական մասսաներին բացահայտելով դրա անարդարացի և հակաժողովրդական բնույթը: Մի շարք տեղերում գերմանական ձախերին հաջողվում է կազմակերպել աշխատավորների բացահայտ ելույթներ՝ ընդդեմ մոնոպոլիստական բուրժուազիայի, կայզերական կառավարության քաղաքականության և պատերազմի: Այդ հակապատերազմական միջոցառումներին եռանդուն մասնակցում էր և Վ. Պիկը: 1915 թ. մայիսի 28-ին Բեռլինում ռայխստագի առջև կանանց հակապատերազմական ցույցի ժամանակ նա, որպես այդ ցույցի կազմակերպիչ, ձերբակալվում է: Հինգ ամիս բանտում մնալուց հետո ուղարկվում է ռազմաճակատ՝ առաջավոր գիծ: Այստեղ ավելի խորը համոզվելով պատերազմի անարդարացիության և անմտության մեջ, նա հակապատերազմական ակտիվ ագիտացիա է տանում զինվորների շրջանում, իսկ 1917 թ., Ռուսաստանում հեղափոխական իրադարձությունների ազդեցության տակ՝ հրաժարվում է զինվորական ծառայությունից: Այդ հանդուգն արարքի համար զինվորական իշխանությունները նրան ձերբակալում են՝ ռազմա-դաշտային տրիբունալին հանձնելու համար: Բայց Վ. Պիկին հաջողվում է փախչել և թաքնվել հետապնդումից:

Վիլհելմ Պիկն ամբողջ սրտով ողջունեց Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակը և դրա առաջին իսկ օրից ընդմիշտ կանգնեց ռուսական պրոլետարիատի և սովետական իշխանության կողմը՝ գտնելով, որ Հոկտեմբերյան հեղափոխության շարունակությունը Գերմանիայում «սարերի ետևում չէ»: Ապահովագրված չլինելով բանտարկությունից՝ նա 1918 թվականի հունվարին տարագրվում է Հոլանդիա, որտեղ մտերմանում է գերմանական մյուս վտարանդիների հետ և նրանց միջոցով աշխատակցում է գերմանական հակաիմպերիալիստական «Կամպֆ» («Պայքար») ժուռնալին, միաժամանակ սերտ կապ պահպանում «սպարտակցիների» հետ:

Շարունակվող պատերազմն ավելի ու ավելի էր մոտեցնում Գերմանիայի վերահաս աղետը: Տնտեսական դժվարությունները, մարդկային և նյութական կորուստները, արագորեն իջնող կենսամակարդակը, պարտությունները ռազմաճակատներում, Սովետական Ռուսաստանից ստացվող և բանվոր դասակարգին ոգևորող լուրերն ավելի էին շիկացնում հեղափոխական իրադրությունը Գերմանիայում: Նման պայմաններում իսկական հեղափոխականին դժվար էր այլևս հեռու գտնվել հայրենիքից, և 1918 թ. հոկտեմբերի 26-ին նա վերադառնում է Գերմանիա, ամենաակտիվ մասնակցություն ունենում Նոյեմբերյան հեղափոխությանը:



Այդ հեղափոխության հաղթանակը հավատ է ներշնչում գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության ձախ ուժերին բանվոր դասակարգի արդարացի գործի նկատմամբ: Մյուս երկրների առաջավոր հեղափոխական ուժերի օրինակով գերմանական «սպարտակցիներն» իրենց ձեռքն են վերցնում բանվոր դասակարգի նոր տիպի կուսակցության ստեղծման նախաձեռնությունը: 1918 թ. վերջին Բեռլինում հրավիրվում է Գերմանիայի կոմունիստական կուսակցության (ԳԿԿ) առաջին հիմնադիր համագումարը: Դրա նախապատրաստման և անցկացման աշխատանքներին Կ. Լիբկնեխտի, Ռ. Լյուքսեմբուրգի, Կ. Ցետկինի հետ միասին ակտիվ մասնակցություն է ունենում և Վ. Պիկը: Համագումարում նա ընտրվում է Կենտկոմի անդամ և անփոփոխ մնում մինչև 1946 թ., այսինքն մինչև Գերմանիայի սոցիալիստական միացյալ կուսակցության ստեղծումը:

Լինելով կուսակցության կենտրոնական ղեկավար օրգանի անդամ, Վ. Պիկը պայքարում է Գերմանիայի կոմունիստական կուսակցությունն իսկական հեղափոխական, մարքսիստական նոր տիպի կուսակցության վերափոխելու համար: Նոյեմբերյան հեղափոխությանը հաջորդած տարիներին նա, որպես կոմկուսի ներկայացուցիչ ընտրվելով ինքնակառավարման տարբեր օրգաններում, ամենուր անցկացնում է իր կուսակցության քաղաքական գիծը: Իսկ այդ գործում նրան օգնում են պայքարի տարիներին կուտակված մեծ փորձը, տեսական լավ պատրաստվածությունը և բանվորական ներըմբռնումը: Քսանական թվականների սկզբի բարդ պայմաններում, երբ աջ սոցիալ-դեմոկրատները դավաճանեցին նոյեմբերյան հեղափոխության գործին, Պիկը պրուսական լանդտագի, Բեռլինի մունիցիպալիտետի, պրուսական պետական խորհրդի և ռայխստագի ամբիոններից արիաբար մերկացնում է սոցիալիստ-դավաճանների քաղաքականությունը, գերմանական և միջազգային իմպերիալիզմի մեքենայությունները: Կոմունիստ մարտիկը պառլամենտական ամբիոնը հմտորեն օգտագործում է նաև աշխատավորների քաղաքական լուսավորության ու մոբիլիզացման, կոմունիստական կուսակցության նպատակների և առաջիկա խնդիրների պրոպագանդման, սովետական ժողովրդի հետ անխախտ բարեկամություն հաստատելու նպատակով:

Այդ տարիներին Վ. Պիկը, Գերմանիայի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հանձնարարությամբ, հաճախ գալիս է Սովետական Միություն, անձամբ ծանոթանում է Վ. Ի. Լենինի հետ, ականատես լինում այն հսկայական խանդավառությանը, որով տոգորված սովետական ժողովուրդը քայլ առ քայլ հաղթահարում է ցարիզմի, քաղաքացիական կռիվների ու ռազմական ինտերվենցիայի ծանր հետևանքները և դնում սոցիալիստական հասարակարգի հիմքերը:

Իր հետևողական ինտերնացիոնալիստական դիրքորոշմամբ Վիլհելմ Պիկը մեծ հարգանք ու հեղինակություն է ձեռք բերում նաև միջազգային բանվորական շարժման մեջ: Մոտ 30-ամյա փորձով նա գիտեր, որ իր երկրում բանվորական հեղափոխական շարժման պայքարը կարող էր հաջող լինել միայն այն դեպքում, եթե սերտորեն կապվեր միջազգային բանվոր դասակարգի պայքարի հետ: Նա, ինչպես Էռնեստ Թելմանը, գտնում էր, որ վճռականը միջազգային բանվորական շարժման մեջ Սովետական Միության առաջավոր դերի ճանաչումն է, նրա հետ ԳԿԿ-ի եղբայրական կապերի մշտական ամրապնդումը, գերմանական ու սովետական ժողովուրդների միջև բարեկամական հարաբերությունների հաստատման անխոնջ ձգտումը:

Որպեսզի ավելի հաջողությամբ պայքարի Գերմանիայում իմպերիալիզմի, միլիտարիզմի և ֆաշիզմի դեմ, ինտերնացիոնալիստ հայրենասերը միշտ ձգտում էր յուրացնել մյուս կոմունիստական և բանվորական կուսակցությունների փորձը: Որպես Գերմանիայի կոմունիստական կուսակցության ներկայացուցիչ, Վ. Պիկը մասնակցում է եղբայրական կոմունիստական կուսակցությունների շատ համագումարների և միջազգային հանդիպումների: Պիկի նկատմամբ միջազգային հեղափոխական շարժման վստահության արտահայտությունը եղավ այն փաստը, որ նա 1928 թ. Կոմունիստական ինտերնացիոնալի IV կոնգրեսում ընտրվեց Կոմինտերնի գործադիր կոմիտեի (ԿԻԳԿ) կազմում, իսկ 1931 թ.՝ դարձավ ԿԻԳԿ-ի նախագահության և քաղաքական քարտուղարության անդամ:

1930 թ. վերջերից մինչև 1932 թ. կեսերը Վիլհելմ Պիկը, որպես Կոմինտերնի գործկոմում Գերմանիայի կոմունիստական կուսակցության մշտական ներկայացուցիչ, գտնվում էր Մոսկվայում: Այդ, ինչպես նաև հետագա տարիներին նա շրջագայում է Սովետական Միության շատ մարզերում, հանդես է գալիս ժողովներում և միտինգներում, այցելում Կարմիր բանակի զորամասեր, հրապարակում հոդվածներ սովետական թերթերում: Որոշ ժամանակ նա հանդիսանում էր Մոսկվայում միջազգային լենինյան դպրոցի ռեկտորը: Հենց այդ շրջանում էլ Պիկն ավելի մոտիկից է տեսնում այն հսկայական աշխատանքները, որ կատարում էին Սովետական Միության կոմունիստական կուսակցու-

թյունն ու բանվոր դասակարգը երկրի վերակառուցման նպատակով: Նա ականատես է լինում ինդուստրացմանը, գյուղատնտեսության կոլեկտիվացմանը, կուլտուրական հեղափոխությանը, ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի ապահովմանը:

Կոմունիստական ինտերնացիոնալի գործադիր կոմիտեում աշխատելու տարիներին Վիլհելմ Պիկը շարունակում է ամենասերտ կապ պահպանել իր կուսակցության և գերմանական բանվոր դասակարգի հետ: Նա ակտիվ պայքար է մղում ֆաշիզմի դեմ՝ ամեն հնարավոր բան անելով ֆաշիստական դարչնագույն ժանտախտի դեմ գերմանական աշխատավորների միացյալ մարտական ճակատ ստեղծելու համար: Սակայն նորից սոցիալ-դեմոկրատների դավաճանությունը խանգարում է կոմունիստների անկեղծ ու ազնիվ ձգտումների իրականացմանը: Բանվոր դասակարգի պառակտվածությունը, Գերմանիայի կոմկուսի հանդեպ սոցիալ-դեմոկրատների անհաշտ դիրքը հեշտացնում են ֆաշիստների կողմից իշխանության զավթումը: Դրանից հետո ծայր են առնում կոմունիստների համատարած բանտարկություններն ու հետապնդումները, ԳԿԿ-ի, հետևաբար և Վ. Պիկի համար, նորից սկսվում է խոր ընդհատակյա պայքարի ժամանակաշրջան: 1933 թ. մարտի 3-ին հիտլերականները ձերբակալում են Է. Թելմանին: Ընդհատակյա Կենտկոմը, որ շարունակում էր ղեկավարել ֆաշիզմի դեմ կուսակցության պայքարը, Վիլհելմ Պիկին ընտրում է ԳԿԿ Կենտկոմի նախագահ: Կուսակցության համար այդ ծանր ու դաժան փորձության տարիներին Վ. Պիկը եռանդուն ու անձնուրաց աշխատանք է տանում, որպեսզի բանվոր դասակարգի միացյալ ճակատի և հակաֆաշիստական լայն ժողովրդական ճակատի կազմակերպմամբ կյանքի կոչվի հասարակական այն ուժը, որն ի վիճակի է կործանել ֆաշիստական դիկտատուրան և ստեղծել հակաֆաշիստական դեմոկրատական Գերմանիա: Հակաֆաշիստական դիմադրությանը արդյունավետ ղեկավարություն ապահովելու նպատակով կոմունիստական կուսակցությունը Վ. Պիկին 1933 թ. մայիսին վտարանդում է Գերմանիայից: Նա Ֆրանց Դալեմի և Վիլհելմ Ֆլորենի հետ միասին մտնում է ԳԿԿ-ի արտասահմանյան ղեկավարության կազմի մեջ, որը, Կոմունիստական ինտերնացիոնալի և մյուս եղբայրական կուսակցությունների օգնությամբ, Փարիզից շարունակում է գլխավորել կուսակցական ընդհատակյա աշխատանքը:

Նոր պայմաններում Գերմանիայի կոմունիստական կուսակցության տակտիկայի ու ստրատեգիայի մշակման հարցում մեծ նշանակություն ունեցավ Կոմինտերնի VII կոնգրեսը, որի հաջող նախապատրաստման և անցկացման գործում Գ. Դիմիտրովի, Դ. Մանուիլսկու, Պ. Տոլյատտիի և միջազգային բանվորական շարժման մյուս գործիչների հետ, կարևոր դեր խաղաց և Վիլհելմ Պիկը: Նա հանդես եկավ Կոմինտերնի գործկոմի հաշվետու զեկուցմամբ, որը մերկացնող լուրջ փաստաթուղթ դարձավ ընդդեմ իմպերիալիզմի, ֆաշիզմի և պատերազմի: Այդ կոնգրեսում Վ. Պիկը նորից ընտրվեց Կոմինտերնի գործադիր կոմիտեի նախագահության և քաղաքական քարտուղարության անդամ:

Կոմինտերնի VII կոնգրեսի արդյունքները Գերմանիայի կոմունիստական կուսակցությունը քննարկեց իր կոնֆերանսում, որը տեղի ունեցավ Մոսկվայի մոտ 1935 թ. հոկտեմբերին, բայց Գերմանիայի բանվորական շարժման մեջ մտավ Բրյուսելյան կոնֆերանս կոնսպիրատիվ անվամբ: Այդ կոնֆերանսում արտասանած ճառում Վ. Պիկը, հենվելով միջազգային բանվորական շարժման փորձի և Կոմինտերնի VII կոնգրեսի որոշումների վրա՝ նորից խնդիր է դնում ստեղծել հակաֆաշիստական ժողովրդական ճակատ:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին Վ. Պիկը, ինչպես վայել էր կոմունիստ-ինտերնացիոնալիստին, աներկմտորեն կանգնում է ՍՍՀՄ-ի կողմը և պաշտպանում Սովետական Միության արդարացի ազատագրական պատերազմը ֆաշիստական Գերմանիայի դեմ: Նա պատերազմում ՍՍՀՄ-ի հաղթանակի մեջ էր տեսնում ֆաշիստական բռնակալությունից գերմանական ժողովրդի ազատագրման հիմնական պայմանը:

Սովետական բանակի կողմից հիտլերյան ֆաշիզմի ջախջախումից հետո, ԳԿԿ Կենտկոմը մոբիլիզացրեց գերմանական ժողովրդի բոլոր դեմոկրատական ուժերը՝ ֆաշիզմի հետևանքները վերացնելու, երկիրը դեմոկրատացնելու և նացիզմը լիկվիդացնելու մասին դաշնակից տերությունների Պոտսդամի կոնֆերանսի որոշումները կատարելու համար:

Ձգտելով հաղթահարել բանվոր դասակարգի պառակտումը, ամրապնդելով կոմունիստների և շարքային սոցիալ-դեմոկրատ բանվորների միասնական ճակատը, որը ստեղծվել էր դեռ պատերազմի տարիներին և հակաֆաշիստական միասնական պայքարի ընթացքում, Գերմանիայի կոմունիստական կուսակցությունը, Վ. Պիկի գլխավորությամբ, կարողացավ ավելի մերձենալ սոցիալ-դեմոկրատների կուսակցությանը, և մեծ աշխատանք էր տանում մարքսիստական սկզբունքների հիման վրա ԳԿԿ-ն ու ԳՍԴԿ-ն մեկ միասնական կուսակցության մեջ միավորելու համար: Այդ գործում խոշոր ավանդ ներդրեց անձամբ Վ. Պիկը:

Բանվորական երկու կուսակցությունների միավորումը տեղի ունեցավ 1946 թ. ապրիլին, Գերմանիայի սոցիալիստական միացյալ կուսակցության (ԳՍՄԿ) առաջին հիմնադիր համագումարում: Դա շրջադարձային իրադարձություն էր գերմանական բանվորական շարժման պատմության մեջ, որի համար երկար տարիներ պայքարում էր Վ. Պիկը: Համագումարում նա, ինչպես և Օ. Գրոտևոլը ընտրվեցին ԳՍՄԿ-ի նախագահներ: Նրանք ուժեր չխնայեցին կուսակցությունը մարքս-լենինյան հիմունքներով ամրապնդելու, կուսակցական շինարարության ասպարեզում ՍՄԿԿ-ի փորձը օգտագործելու համար:

Այդ տարիներին Վ. Պիկը Վ. Ուլբրիխտի, Է. Հոնեկերի, Օ. Գրոտևոլի և մյուս նշանավոր գործիչների հետ մեծ հոգատարություն է հանդես բերում կադրերի ընտրության և տեղաբաշխման, նրանց մարքս-լենինյան դաստիարակության, կուսակցության շարքերը բանվոր դասակարգի լավագույն ներկայացուցիչներով համալրելու նկատմամբ: 1946—1949 թթ. ԳՍՄԿ-ն, Վ. Պիկի և Օ. Գրոտևոլի գլխավորությամբ, պայքար էր տանում միասնական խաղաղասեր դեմոկրատական Գերմանիա ստեղծելու համար: 1949 թ. հոկտեմբերին կազմավորվում է Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը՝ առաջին բանվորա-գյուղացիական պետությունը գերմանական հողում: Ժողովուրդը միաձայն նորաստեղծ հանրապետության նախագահ է ընտրում Վիլհելմ Պիկին: Այդ բարձր պոստում նա ուժ ու եռանդ չի խնայում հանրապետությունում սոցիալիստական վերափոխումներ իրագործելու համար:

Վ. Պիկը միշտ հանդես էր գալիս գերմանական և սովետական ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման օգտին, այն դիտելով որպես աշխարհում խաղաղության պահպանման և ԳԴՀ-ի ծաղկման ու բարգավաճման կարևոր երաշխիք:

ԳՍՄԿ-ն և ԳԴՀ-ի կառավարությունը ըստ արժանվույն են գնահատել Վ. Պիկի ծառայությունները: Գերմանիայի հողում առաջին բանվորա-գյուղացիական պետության ստեղծման և ամրապնդման գործում ակնառու ավանդի համար 1951 թ. նրան շնորհվել է Աշխատանքային հերոսի կոչում: ԳՍՄԿ ԿԿ-ի VIII գումարման XIV պլենումը Վ. Պիկի ծննդյան 100-ամյակի առթիվ ընդունած մանիֆեստ-դիմումում մեկ անգամ ևս ընդգծում է, որ նա մարմնավորում էր գերմանական հեղափոխական բանվոր դասակարգի լավագույն գծերը, որ նրա կյանքի ուղին ու 60-ամյա պայքարը գերմանական և միջազգային բանվորական շարժման մեջ օրինակ է հանդիսանում ԳԴՀ-ում զարգացած սոցիալիստական հասարակարգ կառուցող յուրաքանչյուր աշխատավորի համար:

Վ. Պիկի մահը խոր վիշտ պատճառեց նաև բոլոր սովետական մարդկանց, որոնք հանձին նրան կորցրին իրենց մեծ բարեկամին: Այդ առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության Կենտկոմին, ԳԴՀ-ի Ժողովրդական պալատի նախագահությանը, ԳԴՀ-ի Մինիստրների խորհրդին, դեմոկրատական Գերմանիայի ազգային ճակատի ազգային խորհրդին հղած ցավակցության մեջ նշվում է. «Ընկեր Վիլհելմ Պիկի վախճանը սգում են ողջ աշխարհի աշխատավորները, որոնց շահերի պաշտպանությանը նա նվիրեց պրոլետարական հեղափոխականի իր հիանալի կյանքը:

Ընկեր Վիլհելմ Պիկը, լինելով հավատարիմ մարքսիստ-լենինյան, մեծ ներդրում կատարեց համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության և համախմբվածության ամրապնդման գործում: Անփոփոխ կերպով գտնվելով ԳԴՀ-ի պրեզիդենտի պոստում, նա իր բոլոր ուժերը, կրակոտ եռանդը նվիրեց Մարքսի, Էնգելսի, Լենինի մեծ գաղափարների կենսագործման, ԳԴՀ-ում սոցիալիզմի կառուցման, միասնական խաղաղասեր դեմոկրատական Գերմանիայի ստեղծման պայքարին:

Սովետական մարդիկ ընկեր Վիլհելմ Պիկին ճանաչում են իբրև ֆաշիզմի և միլիտարիզմի դեմ անխոնջ մարտիկի, խաղաղության գործի մարտիկի: Իբրև հեղափոխական և հակաֆաշիստ, նա ամեն ինչ անում էր ֆաշիստական բռնակալության նկատմամբ հաղթանակի ժամը մոտեցնելու համար, դա դիտելով որպես խաղաղ դեմոկրատական ուղիով Գերմանիայի զարգացման վճռական պայման: Ընկեր Վիլհելմ Պիկը հաստատուն կանգնած էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերում, ժողովուրդների բարեկամության ամրապնդման անխոնջ մարտիկ էր, Սովետական Միության հավատարիմ ու անկեղծ բարեկամը և անգնահատելի ավանդ մուծեց գերմանական ու սովետական ժողովուրդների բարեկամական ու եղբայրական հարաբերությունների զարգացման և ամրապնդման գործում» («Պրավդա», 9 սեպտեմբերի 1960 թ.):

Հիրավի, Վիլհելմ Պիկն իր կյանքով և հեղափոխական գործունեությամբ արժանի էր նման բարձր գնահատականի: Նրա պայծառ հիշատակը երբեք չի խամրի սովետական մարդկանց սրտերում:

Շ. Ա. ՊՈՂՈՍՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

# ԴՐԱՍՏԱՄԱՏ ՏԵՐ-ՍԻՄՈՆՅԱՆ

(ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ՔՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐԻ ՍԿԻԶԲԸ դարձավ համաշխարհային պատմության նոր փուլի նախամուտք, երբ Վ. Ի. Լենինը և նրա ստեղծած ու գլխավորած կուսակցությունը գիտականորեն հիմնավորեցին և Ռուսաստանում կենսագործել սկսեցին ժողովուրդների ազատագրության վիթխարի խնդիրը: Բեկումնային այդ ժամանակաշրջանը ծնեց տաղանդավոր մարդկանց մի սերունդ, որոնց համար ո՛չ քաղցը, ո՛չ բանտն ու աքսորը, ո՛չ անձնական դժբախտությունը սարսափելի չէին: Այդ սերունդը ծառացավ սոցիալական անարդարության դեմ, ժողովուրդներին հանեց դասակարգային պայքարի: Այդ սերնդի մեջ էր նաև Դրաստամատ Տեր-Սիմոնյանը:

Դրաստամատ Տեր-Սիմոնյանն անցավ հազիվ 43 տարվա ճամփա, բայց ապրեց բազմիմաստ ու հրապուրիչ, գեղեցիկ ու դժվարին կյանք: Նա փոթորկոտ դարաշրջանի ծնունդ էր: Երերում էր դարը և անխուսափելիորեն փուլ էր գալու, որից անհրաժեշտաբար պիտի ծնվեր նոր դարաշրջանը՝ սոցիալիզմը: Այդպիսի պայմաններում տասնութամյա պատանին զինվորագրվեց կոմունիստական կուսակցությանը: Դա 1913 թվականին էր:

Դրաստամատ Աքսանազի Տեր-Սիմոնյանը ծնվել է 1895 թ. հուլիսի 29-ին, Սպիտակում (նախկին Համամլու), գյուղացու ընտանիքում: Ութ տարեկան էր նա, երբ ընտանիքը փոխադրվեց Թիֆլիս: Այստեղ նա ընդունվեց Ներսիսյան դպրոց, որն ավարտեց 1912 թվականին:

Զինված որոշակի գիտելիքներով, նա այնուհետև մեկնում է Կիև, ուր վերելք էր ապրում բանվորական շարժումը: Էքստեռն ավարտելով տեղի գիմնազիան, Դ. Տեր-Սիմոնյանն ընդունվում է Կիևի առևտրական ինստիտուտի տնտեսագիտական բաժինը:

Կիևում նա ավելի մոտիկից է շփվում մարքսիստական աշխարհայացքի տեր մարդկանց հետ, ծանոթանում քաղաքական-տնտեսական գիտություններին, ընդգրկվում ուսանողական հեղափոխական կազմակերպությունների մեջ:

1913 թ. ամռանը նշվում էր ուկրաինական ժողովրդի ազատագրության խորհրդանիշ, բանաստեղծ Տարաս Շևչենկոյի մահվան 100-ամյա տարելիցը: Ուսանողական առաջադիմական ուժերը, օգտվելով բարենպաստ պայմաններից, կազմակերպում են քաղաքական ցույցեր, որոնցում մասնակցում էին նաև Կիևի հայ ուսանողները, նրանց թվում և Դրաստամատ Տեր-Սիմոնյանը: Այս միջավայրում պատանին է՛լ ավելի է կոփվում, ձեռք բերում հեղափոխականի հմտություն, տիրապետում պայքարի նոր եղանակների, կոնսպիրացիայի սկզբունքներին: Ոստիկանությունը գանահարում և բանտարկում է նրան: Ազատվելով բանտից՝ նա չի դադարեցնում պայքարը, հանդես է գալիս հայ ուսանողների ժողովներում և հավաքույթներում՝ իմպերիալիստական տերությունների զավթողական քաղաքականությունը մերկացնող ճառերով, քննադատում հայ բուրժուազիայի քաղաքական սնանկությունը:

Սկսվել էր առաջին համաշխարհային պատերազմը: Փոխվել էր քաղաքական մթնոլորտը: 1914 թ. վերջերին Դ. Տեր-Սիմոնյանին զորակոչում են ցարական բանակ: 1915 թվականին նրան ուղարկում են ռազմաճակատ, ապա՝ քաղաքական հայացքների համար, փոխադրում տուզանային գունդ: Իրադարձությունները նպաստում են նրա արագ հասունացմանը:

Բռնկվում է 1917 թ. փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխությունը: Կուսակցությունը Դ. Տեր-Սիմոնյանին տալիս է նոր, պատասխանատու առաջադրանքներ: Հարավարևմտյան ռազմաճակատում նա զգալի գործ է կատարում կուսակցական կազմակերպություններ ստեղծելու և նրանց գործունեությունը բարելավելու համար: Լինելով զինվորների կոմիտեի նախագահ՝ նա մասնակցել է մի շարք զինվորական կոնֆերանսների և համագումարների, պաշտպանել բոլշևիկյան կուսակցության գիծը:

Նկատի առնելով Դ. Տեր-Սիմոնյանի բոլշևիկ լինելը և քաղաքական անբարեհուսությունը՝ 1917 թ. օգոստոսին հրամանատարությունը նրան փոխադրում է Սիբիր, պահեստային գումարտակ: Այստեղ էլ Դ. Տեր-Սիմոնյանը դիմավորում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը և նետվում մեծ պայքարի ասպարեզ, մարտնչում Օմսկի հեղափոխական մարտիկների ջոկատներում, դառնում նրանց աչքի ընկնող հրամանատարներից մեկը: Երեք օր տևող փողոցային մարտերում բոլշևիկների ղեկավարությամբ բանվորներն ու զինվորները տանում են արժանի հաղթանակ: Տեր-Սիմոնյանը դառնում է Օմսկի կայազորի կուսհանձնաժողովի նախագահ և զինվորական օկրուգի զինկոմիսար: Նրան ընտրում են Օմսկի բանվորների և զինվորների դեպուտատների սովետի կազմում:

1918 թ. նա արդեն Մոսկվայում էր. աշխատում էր Հայկական գործերի կոմիսարիատի հրատարակչական բաժնում: Կարճ ժամանակ անց կուսակցությունը նրան ուղարկում է զինվորական ծառայության: Աշխատելով կարմիր բանակի մատակարարման կենտրոնական վարչությունում՝ աննկուն բոլշևիկը հրահանգչի իր պաշտոնում շատ գործ է անում նաև բանակի մատակարարումը բարելավելու համար: Այնուհետև նրան գործուղում են Ուկրաինա՝ Կիև, իսկ այդտեղից էլ՝ Օդեսա, ուր նա ղեկավարում է նոր կազմակերպված ինտերնացիոնալիստների հայկական կոմունիստական սեկցիան, որի մեջ մտնում էին նաև այնտեղ ապրող վրացի կոմունիստները:

1919 թվականի օգոստոսին Դ. Տեր-Սիմոնյանը կրկին Մոսկվայում էր: ՌԿ(բ)Կ Կենտկոմը Աստրախանի վրայով, Կասպից ծովով նրան ուղարկում է Անդրկովկաս՝ անլեգալ աշխատանքի: Թիֆլիսում նա ստանձնում է Անդրերկրկոմի բոլշևիկյան մի քանի լրագրերի խմբագրի պարտականությունը: Այդ շրջանում Դ. Տեր-Սիմոնյանը գրում է հրապարակախոսական հոդվածներ, որոնց մի մասը այսօր էլ չի կորցրել իր պատմական նշանակությունը:

1920 թ. հունվարի 18—19-ին Երևանում, անլեգալ պայմաններում, գումարվեց Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին կոնֆերանսը, որին մասնակցում էր 22 պատգամավոր: Կոնֆերանսն ընտրեց ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտե (Արմենկոմ), որի կազմի մեջ մտավ նաև Դրաստամատ Տեր-Սիմոնյանը:

1920 թ. մայիսի 7-ին «Վարդան զորավար» գրահագնացքում տեղի ունեցավ Արմենկոմի և Ալեքսանդրապոլի, Կարսի, Սարիղամիշի, Ղազախի, Քյավթառլուի ու Ղարաքիլիսայի կազմակերպությունների համատեղ նիստ, որին մասնակցում էր և Դրաստամատ Տեր-Սիմոնյանը: Հենց այդ նշանավոր նիստում էլ ստեղծվեց Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտե, որի անդամ ընտրվեց նաև նա: Դրաստամատ Տեր-Սիմոնյանը անձնվիրաբար մասնակցեց Մայիսյան հերոսական ապստամբությանը, դարձավ նրա ղեկավարներից մեկը:

Հայաստանում հաղթանակեց սովետական իշխանությունը: 1921 թ. հունվարի 21-ին ՀՍՍՀ հեղկոմը որոշեց բարելավել անապաստան երեխաների դրությունը: Սովետական Հայաստանի կառավարությունն ստեղծեց որբերի պաշտպանության արտակարգ կոմիսարի պաշտոն, որը վստահեց սոցիալական ապահովության ժողկոմ Դ. Տեր-Սիմոնյանին: Պետական բոլոր հիմնարկությունները պարտավոր էին ամեն տեսակ օգնություն ցույց տալ արտակարգ կոմիտեին՝ որբերի ապրուստի, ուսման և դաստիարակության գործը կազմակերպելու համար: Ամեն ինչ արվում էր՝ նորմալ հունի մեջ դնելու ժողովրդի կյանքը: Բայց 1921 թ. սկսվեց փետրվարյան ավանտյուրան:

Որպես առանձին Անդրկովկասյան բանակի ռազմահեղափոխական խորհրդի լիազորի տեղակալ և Զանգեզուրի արտակարգ կոմիսար, Դ. Տեր-Սիմոնյանը ղեկավարեց դաշնակ բանդիտների մնացորդների լիկվիդացիան, վայելելով տեղական բնակչության սերն ու համակրանքը:

Երկիրը լծվեց ստեղծարար աշխատանքի: 1922 թ. դեկտեմբերի 7-ին, արդեն որպես Երևանի քաղաքային սովետի գործկոմի նախագահ, նա ստորագրեց Վ. Ի. Լենինին ուղղված ողջույնի նամակը՝ հավաստիացնելով, որ Երևան քաղաքի խորհուրդը ամուր կկանգնի Սովետական ֆեդերացիայի պրոլետարիատի նվաճած դիրքերում:

Դ. Տեր-Սիմոնյանի կենսագրության ուշագրավ էջերից է աշխատանքը սփյուռքահայության շրջանում: 1928 թ. կուսակցությունը նրան գործուղում է արտասահման՝ Ֆրանսիայում հայկական «Երևան» թերթը խմբագրելու համար: Նրա անձնական հմայքը, ժուռնալիստական ու կազմակերպական հմտությունը, կոմունիստական սկզբունքայնությունը ֆրանսահայ հասարակայնության մեջ է՛լ ավելի են բարձրացնում Սովետական Հայաստանի հեղինակությունը, հայրենիքի հետ կապում բազմաթիվ տարագիրների:

Լինելով զարգացած ու հարուստ գիտելիքների տեր մարդ՝ Դ. Տեր-Սիմոնյանն իր ժողովրդին ցանկանում էր տեսնել առավել բարվոք վիճակում: Նրա որոնող խառնվածքը ելք էր գտնում մշակութային զանազան պրոբլեմների հաջող լուծման համար:

1932 թ. ՀԿԿ Կենտկոմը որոշում է ստեղծել հայկական հանրագիտարան: «Խորհրդային Հայաստան» թերթում Դ. Տեր-Սիմոնյանը հանդես է գալիս հատուկ հոդվածով, պարզաբանում հանրագիտարանին վերաբերող մի շարք գիտա-մեթոդական խնդիրներ, առաջ քաշում էական հարցեր, նշում լուծման ուղիները: Այո՛, նա ինքն էր հայկական հանրագիտարանի նախաձեռնողներից մեկը, նրա առաջին խմբագիրը:

Դ. Տեր-Սիմոնյանը զգալի ծառայություններ է մատուցել մշակութային արժեքների պահպանման և նրանց պրոպագանդման ասպարեզում, հանդես եկել անցյալի գրական արժեքները թերագնահատելու դեմ, ցույց տվել, որ առանց դարերի ընթացքում ստեղծված ավանդույթների ստեղծագործական զարգացման հնարավոր չէ կերտել նոր ժամանակաշրջանի գրականությունն ու արվեստը:

Դ. Տեր-Սիմոնյանը շնորհալի հրապարակախոս էր: Նրա գրչին են պատկանում Կարլ Մարքս աշխատությունը, ուր կերտված է մարդկության մեծագույն հանճարներից մեկի դիմանկարը՝ մանկական տարիներից մինչև I ինտերնացիոնալը: Կենսագրական այս ուրվագիծը վկայում է մարքսիզմի նրա խոր իմացությունը:

1961 թ. «Հայաստան» հրատարակչությունը լույս ընծայեց Դրաստամատ Տեր-Սիմոնյանի հոդվածների ժողովածուն,ուր կա ևս մի հետազոտություն, դարձյալ նվիրված Կարլ Մարքսին՝ «Մարքսը և արվեստը» վերնագրով: Առանձին հոդվածներ են նվիրված Միքայել Նալբանդյանին, Մարիետա Շահինյանին, Նար-Դոսին, Վահան Տերյանին, Աթաբեկ Խնկոյանին և ուրիշների: Պարզորոշ երևում է, որ Դրաստամատ Տեր-Սիմոնյանը գիտի գրականության և արվեստի տեսության հարցերը, իմացությամբ է քննում այս կամ այն գրողի ստեղծագործությունը:

Գրողների համամիութենական I համագումարում հայ գրականության մասին զեկուցեց ՀՍԳ միության վարչության նախագահ Դրաստամատ Տեր-Սիմոնյանը: Այդ զեկուցման մեջ արժեքավորն այն էր, որ սովետահայ գրողների ստեղծագործությունները քննարկվում էին հայ գրականության անցած ողջ պատմական զարգացման առնչությամբ: Առանձնապես հանգամանալի է խոսել նաև Եղիշե Չարենցի մասին, նրան համարելով հետհոկտեմբերյան հայկական պոեզիայի ամենախոշոր ներկայացուցիչը, «Երկիր Նաիրի» վեպը գնահատելով որպես դարաշրջան բացող ստեղծագործություն: Համագումարում գրականագետը վերլուծական ջերմ խոսքեր է ասել Ակսել Բակունցի, Ստեփան Զորյանի, Գուրգեն Մահարու, Մկրտիչ Արմենի, Վահան Թոթովենցի մասին: «Այն, ինչ ստեղծել է Հայաստանի սովետական գրականությունը տասներեք տարում, երաշխիք և հիմք է տալիս կարծելու, որ հայ գրողները վիթխարի ստեղծագործական պոտենցիա ունեն: Նրանք իրենց այդ պոտենցիան կդրսևորեն՝ իրենց ձեռքում ամուր պահելով մարքսիզմ-լենինիզմի ջահը, համընթաց քայլելով բանվոր դասակարգի հետ, կոմունիստական մեծ կուսակցության ղեկավարությամբ» (Դ. Տեր-Սիմոնյան, Հոդվածներ, էջ 250):

Հոկտեմբերյան հեղափոխությունը ծնեց բազմաթիվ փայլուն անհատականություններ, հրահեղուկի պես ժայթքեց ժողովրդական իմաստությունը: Ասպարեզ իջան տաղանդներ, որոնք փայլատակեցին կյանքի մի շարք բնագավառներում: Դրաստամատ Տեր-Սիմոնյանը դրանցից մեկն էր: Նա և՛ տնտեսագետ էր, և՛ կուսակցական ու պետական գործիչ, և՛ հրացանը ձեռքին կռվող հրամանատար, և՛ խմբագիր-հրապարակախոս, և՛ գրականագետ ու մշակույթի վաստակավոր աշխատող: Հետաքրքրական են նրա հոդվածները նաև արվեստի ու մշակույթի մասին. «Բոմարշեն և Ֆիգարոյի ամուսնությունը», «Մեր թատերական արվեստի մասին», «Սովետական Հայաստանի օպերան», «Հայաստանի կերպարվեստագետները և ճարտարապետները 13 տարում»:

Դեռևս 30-ական թվականների սկզբին նա գտնում էր, որ, օրինակ, Մարտիրոս Սարյանը գեղանկարչության մեջ համաշխարհային դեմք է և անհրաժեշտ է նրան նվիրված հայերեն, ռուսերեն և եվրոպական լեզուներով գրքեր, մենագրություններ և ալբոմներ լույս ընծայել, մի գործ, որ կատարվեց տասնամյակներ հետո:

Դ. Տեր-Սիմոնյանի բազմաբնույթ գործունեության էջերից է նաև մանկավարժական աշխատանքը: 1934—1936 թթ. նա եղել է Երևանի պետական համալսարանի դասախոս, ղեկավարել «Լենինիզմի և կուսպատմության» ամբիոնը, զգալի գործ կատարել ուսանողության գաղափարական դաստիարակության ասպարեզում:

Դրաստամատ Տեր-Սիմոնյանը վարել է մի շարք պատասխանատու պաշտոններ. եղել է կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեի քարտուղար, կապի, այնուհետև՝ լուսավորության ժողկոմ, Հայաստանի գրողների միության վարչության նախագահ, արվեստի գործերի վարչության պետ և այլն: Ընտրվել է ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ, եղել է ՀՍՍՀ և Անդրֆեդերացիայի կենտգործկոմների անդամ:

Այսպիսով, Դրաստամատ Տեր-Սիմոնյանը՝ քաղաքական ու պետական ականավոր գործիչը, պաշտպանելով գրականության և արվեստի կուսակցականությունն ու գաղափարայնությունը, լինելով գեղեցկի ջատագով, բազմակողմանի զարգացած մարդ, որոշակի հետք է թողել Սովետական Հայաստանի պատմության մեջ:

Մի ցանկություն միայն. ժամանակը չէ՞ մենագրություններ հրատարակել ո՛չ միայն Դրաստամատ Տեր-Սիմոնյանի, այլև նրա մի շարք անվանի սերնդակիցների կյանքի ու գործի մասին: Դրանք ոչ միայն հարգանքի տուրք կլինեն մեր երախտավորների նկատմամբ, այլև ազդակ կդառնան սերունդների դաստիարակության կարևոր գործում:

Մ. Գ. ՄԵԼՔՈՆՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու

ներ, տեխնիկներ, գյուղատնտեսության մասնագետներ, գիտության և կուլտուրայի գործիչներ, ծառայողներ, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներ:

Պրակտիկան ցույց է տվել, որ կենսափորձով ու հարուստ գիտելիքներով օժտված ավագ սերնդի և երիտասարդ ընկերների ուժերի զուգակցումը բարձրացնում է աշխատանքի մակարդակը, տալիս է դրական արդյունք:

Ժողովածուի նյութերում մեծ տեղ է հատկացված կուսակցության մեջ ընդունելության հարցերի և կոմունիստների անձնական գործի նախնական քննարկմանը: Այդ մասին նշված է ՍՄԿԿ Լիպեցկի մարզի Գրյազինսկու քաղկոմին առընթեր կուսհանձնաժողովի նախագահ Պ. Ի. Մերինովի, Լատվիայի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսհանձնաժողովի անդամ Է. Յա. Անիտոի, կուսակցության Կրասնոյարսկի երկրկոմին և Չելյաբինսկի մարզկոմին առընթեր կուսհանձնաժողովների նախագահներ Ն. Պ. Գուդիլինի, Ա. Մ. Սամոխվալովի և այլոց հոդվածներում:

Կուսակցության շրջկոմներին և քաղկոմներին առընթեր կուսհանձնաժողովների հիմնական ֆունկցիաներից մեկը կուսակցության մեջ ընդունելության հարցերի նախնական քննարկումն է: Հանձնաժողովները պարտավոր են անշեղորեն ղեկավարվել կուսշարքերի որակական բարելավման մասին ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների ցուցումներով:

Ինչպես հայտնի է, կուսշարքերի ընդունելության հարցերով զբաղվում են սկզբնական կուսկազմակերպությունները և կուսկոմիտեների կազմակերպական բաժինները: Սակայն ընդունելության գործերի նախնական քննարկումը կատարվում է կուսակցական հանձնաժողովներում:

Հանձնաժողովների անդամները չեն սահմանափակվում ընդունելության գործերի փաստաթղթերի ճշգրտության ձևակերպման ստուգմամբ, ընդունվողների հետ տարվող զրույցներով, այլ ձգտում են վերլուծել առանձին կուսկազմակերպությունների աշխատանքն ընդունելության գործում, պրակտիկորեն օգնում են նրանց, համապատասխան կուսկոմիտեների առջև դնում հասունացած հարցեր:

Կուսհանձնաժողովների ծառայությունն այն է, որ նրանց աջակցությամբ մեր կուսակցության շարքերն են ընդունվում սովետական հասարակարգի, իրոք, լավագույն, առաջավոր մարտիկներ, որ կուսակցության սոցիալական կազմի մեջ անշեղորեն աճում են բանվոր դասակարգի դերն ու տեսակարար կշիռը:

Կուսհանձնաժողովների աշխատողների մյուս կարևոր խնդիրը կոմունիստների անձնական գործերի քննարկումն է: Այդ բնագավառում հանձնաժողովի անդամները պետք է ցուցաբերեն ուշադրություն, հոգատարություն և անաչառություն: Ժողովածուի նյութերն այդ առումով ունեն շատ ուսանելի օրինակներ, հետաքրքրական մտքեր:

Զբաղվելով անձնական գործերով, կուսհանձնաժողովի աշխատողը հաճախ ստիպված հանդես է գալիս քննիչի (որն ուսումնասիրում է բողոքարկողի առարկումները, ստուգում և վերստուգում փաստերը), պաշտպանի (որը փնտրում է մեղմացուցիչ հանգամանքներ) և, վերջապես, դաստիարակողի (որը ձգտում է օգնել մարդուն՝ խորապես զգալու և ընկալելու կատարված սխալը) դերերում:

Հավանության է արժանի շատ կուսհանձնաժողովների ձգտումը՝ հանգամանորեն, տեղում պարզելու անձնական գործի ծագման պատճառները, ուսումնասիրելու իրավիճակը այս կամ այն կուսկազմակերպությունում, ձեռնարկության, հիմնարկության կոլեկտիվում: Այդ տեսակետից ժողովածուում շատ ուսանելի օրինակներ կան: Դրանք վկայում են, որ անձնական գործերի քննարկումից բխող հարցերի վերլուծությունը և ընդհանրացումը բարենպաստ ազդեցություն են թողնում դաստիարակչական աշխատանքի բովանդակության, կուսակցական կարգապահության ամրապնդման վրա:

ՍՄԿԿ Կենտկոմի 1967 թ. հունիսի 30-ի որոշումը՝ «Մարզկոմներին, երկրկոմներին և միութենական հանրապետությունների Կենտկոմներին առընթեր կուսակցական հանձնաժողովների մասին», այդ հանձնաժողովներին պարտավորեցրել է կուսակցական մարմինների համապատասխան բաժինների հետ միասին ստուգել կուսակցության անդամ թեկնածուների կողմից ՍՄԿԿ ծրագրի և կանոնադրության, կուսակցական և պետական կարգապահության, կուսակցական բարոյական նորմերի խախտումների մասին դիմում-բողոքները:

Այդ որոշման կենսագործումը կուսկոմիտեներից և կուսհանձնաժողովներից պահանջում է մշակել ստուգման մեթոդներ ո՛չ միայն առանձին կոմունիստների կյանքին և աշխատանքին համապատասխան, այլև տվյալ կոլեկտիվի տնտեսական և արտադրական բնագավառին վերաբերող փաստերի կապակցությամբ: Այս առումով ուշագրավ են Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմին, ՍՄԿԿ Մոսկվայի մարզկոմին, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսհանձնաժողովների նախագահներ Լ. Ի. Նայդեկի, Մ. Գ. Յագիկովի, Մ. Բ. Բուկենովի և այլոց հոդվածները: Դրանցում հեղինակները փոխանակում են այդ հանձնաժողովների աշխատանքի փորձը՝ աշխատավորների դիմում-բողոքների ստուգման, կուսկոմիտեների բյուրոների հարցերի նախապատրաստման, հսկողության ֆունկցիայի իրականացման վերաբերյալ:



Կուսհանձնաժողովների կատարած խոր, համակողմանի ստուգումներն օգնում են կուսկոմիտեներին՝ արագորեն վերացնելու տնտեսական գործունեության մեջ տեղ գտած թերությունները, նպաստում են կարգավորելու հաշվառման ու հաշվետվության վիճակը, ապահովելու նյութական արժեքների պահպանությունը և այլն:

Դիմում-բողոքների ստուգման, կուսկոմիտեների բյուրոների հարցերի նախապատրաստման ժամանակ կուսհանձնաժողովները հետևողականորեն ղեկավարվում են կոմունիստների պատասխանատվության բարձրացման, կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության պահպանման վերաբերյալ կուսակցության ցուցումներով: Վճռականորեն դատապարտվում են պաշտոնն ի չարը գործադրելն ու պետական միջոցների վատնումները, անազնվությունն ու կեղծությունը, աչքակապությունն ու խարեբայությունը, հարբեցողությունն ու խուլիգանությունը, զրպարտությունն ու անբարոյականությունը և կուսակցական բարոյական նորմերի այլ խախտումները:

Ղեկավարվելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով՝ կուսկոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները կատարելագործում են դաստիարակչական աշխատանքը, ուժեղացնում պահանջկոտությունը կոմունիստների նկատմամբ, ավելի խիստ և անաչառ են անդրադառնում կուսակցական ու պետական կարգապահության և կոմունիստական բարոյականության նորմերի խախտումներին: Այդ աշխատանքում ամենագործուն կերպով մասնակցում են կուսհանձնաժողովները՝ կուսակցական կոմիտեների ակտիվ օգնականները:

Ժողովածուի վերջում հրապարակված է կուսակցության շարքերի ընդունելության և կոմունիստների անձնական գործերի քննարկման վերաբերյալ կոնսուլտացիա, որը, անշուշտ, ավելի արժեքավոր է դարձնում ժողովածուն:

Ժողովածուն լավ ուղեցույց է կուսաշխատողների և կուսակցական ակտիվի համար:

**Ն. Ա. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ**

ներկայացրել է ավելի ամբողջական ու բազմակողմանի, հանգել նոր եզրակացությունների: Այստեղ նոր են միջգյուղային հողաշինարարության, հողային որոշ վեճերի կարգավորման, նէպի պայմաններում կայուն հողօգտագործում ստեղծելու և այլ հարցեր: Ագրարային հարցում Ղազախեցյանն առաջադրել է մի շարք նոր տեսակետներ ու եզրակացություններ: Այսպես, նա գրում է, որ «Սովետական Հայաստանի 1921—1922 թթ. ագրարային վերափոխումների փորձը բավարար տվյալներ չի տալիս գյուղում սոցիալիստական հեղափոխական միջոցառումների մասին խոսելու համար»: Հեղինակը ժխտում է գրականության մեջ արմատավորված այն տեսակետը, թե իբր 1921—1922 թթ. միաժամանակ կիրառվում էին և՛ բուրժուա-դեմոկրատական, և՛ սոցիալիստական հեղափոխական միջոցառումներ: Քննադատելով այդ թեզը, նա նշում է, որ դրանով մեխանիկորեն կրկնում ենք այն, ինչ 1918—1919 թթ. տեղի էր ունենում Սովետական Ռուսաստանում:

Առարկելով որոշ հեղինակների, Վ. Ղազախեցյանը գտնում է, որ ոչ թե 1926—1929 թվականներին, այլ դրանից հետո է, որ աշխատավոր գյուղացիությունը հիասթափվում է «հավասարության» (հողը հավասար բաժանելու) սկզբունքից և աստիճանաբար անցնում սոցիալիստական հողօգտագործմանը, կոլտնտեսություններին: Նա միաժամանակ իրավամբ նշում է, որ սոցիալիստական հողօգտագործմանն անցնելը գլխավորապես պայմանավորված էր ոչ թե «հավասարությունից» Հայաստանի աշխատավոր գյուղացիության հիասթափությամբ, այլ մանր, անհատական տնտեսություններից խոշոր, հանրային տնտեսություններին անցնելու օրինաչափ պատմական պրոցեսով:

Մեր պատմա-տնտեսագիտական գրականությունը գրեթե չի անդրադարձել գյուղացիության պատմության խիստ էական՝ նախակոլտնտեսային գյուղացիության սոցիալ-տնտեսական զարգացման հարցերին, որոնք առաջին անգամ գիտական մեկնաբանություն են ստանում տվյալ աշխատության մեջ: Նկատենք, որ սոցիալ-տնտեսական զարգացման վերաբերյալ աղբյուրները ու վիճակագրական տվյալները համեմատաբար քիչ են և մասամբ ոչ լրիվ հավաստի: Հաղթահարելով դժվարությունները և մշակելով այդ հարցի վերաբերյալ գոյություն ունեցող նյութերն ու վիճակագրական տվյալները, հեղինակը տվել է 20-ական թվականների հայ գյուղի սոցիալ-տնտեսական զարգացման, սոցիալական շերտավորման և գյուղացիության սոցիալ-դասակարգային կառուցվածքի պատկերը, հանգել այն եզրակացության, որ գյուղը զարգանում էր սովետական գյուղին բնորոշ նույն օրինաչափությամբ՝ աճում էր միջակի տեսակարար կշիռը, կրճատվում էր չքավորների ու կուլակների թիվը: Սակայն հայ գյուղի զարգացումն ուներ նաև իր յուրահատկությունները: Գյուղատնտեսության մասսայական կոլեկտիվացման նախօրյակին միջակը դեռևս չէր հասցրել դառնալ այնպիսի կենտրոնական դեմք, ինչպիսին էր նա Սովետական Միության շատ շրջաններում: Դրա հետ միասին, բնականաբար, բարձր էր չքավոր գյուղացիության տեսակարար կշիռը, որը հեղինակը բացատրում է սակավահողությամբ, գաղթականության հոծ զանգվածների և հողազուրկ գյուղացիների առկայությամբ, ինչպես նաև արտադրամիջոցների խիստ անբավարարությամբ:

Հայտնի է, որ անցման ժամանակաշրջանի պատմության մեջ կարևոր տեղ է գրավում տնտեսական կացութաձևերի հարցը, որը, սակայն, սովետահայ պատմա-տնտեսագիտական գրականությունը պատշաճ ձևով չի լուսաբանել: Քննադատելով այն տեսակետը, ըստ որի 1921 թ. Հայաստանում գոյություն ունեին տնտեսական միայն երեք՝ սոցիալիստական, մանրապրանքային և կապիտալիստական կացութաձևեր, հեղինակն իրավացիորեն նշում է. «Հայաստանի և մասնավորապես գյուղի սոցիալ-տնտեսական դրության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ 20-ական թվականների սկզբին բավական տարածված էր նաև նահապետական, բնատնտեսային կացութաձևը, ընդ որում շատ շրջաններում այն նույնիսկ գերիշխում էր ապրանքայինի նկատմամբ: Այնպես որ՝ նէպին անցնելու ժամանակ Հայաստանում գոյություն ունեին ոչ թե երեք, այլ չորս կացութաձևեր, Իսկ հինգերորդ կացութաձևը՝ պետական կապիտալիզմը, գրեթե բացակայել է»:

Սովետական գյուղի անցումը սոցիալիզմի ուղին ընթացել է նէպի պայմաններում: Սակայն նէպի պրոբլեմը սովետահայ պատմագրության մեջ մնում է բաց, դեռևս լիովին չհետազոտված: Ինչպես նշում է Վ. Ղազախեցյանը, առանձին հեղինակներ, խոսելով նոր տնտեսական քաղաքականության մասին, գրեթե կանգ չեն առել այն հարցի վրա, թե Հայաստանում ինչպե՞ս է կենսագործվել նէպը և ինչպիսի՞ ազդեցություն է ունեցել սոցիալ-տնտեսական հարաբերությունների զարգացման ընթացքի վրա, որո՞նք են նրա փուլերը: Տվյալ աշխատության մեջ այդ հարցերը շոշափվել են առանձին պարագրաֆներում, կապված գյուղացիության պատմության հետ: Քննադատելով այն տեսակետը, ըստ որի նէպի ներգործման ուժը 1925 թվականից արդեն սպառված է համարվում, Վ. Ղազախեցյանը իրավամբ նշում է, որ նէպը որոշակի դեր է խաղացել ո՛չ միայն գյուղատնտեսության վերականգնման, այլև նրա զարգացման հետագա տարիներին, ընդհուպ մինչև 1929 թվականը: Համատարած կոլեկտիվացման հետ կապված՝ նէպի գործողության սահմանները խիստ նեղանում ու սահմանափակվում են, իսկ 30-ական թվականների կեսերից, երբ ավարտվում է անցման շրջանը և հաղթանակում է սոցիալիզմը, այն արդեն որևէ դեր չէր խաղում:

Աշխատության արժանիքներից է նաև այն, որ այստեղ լայն պլանով ու համակողմանիորեն ներկայացվում է նախակոլտնտեսային հայկական գյուղի հասարակական-քաղաքական կյանքը, որը մինչ այդ անհրաժեշտ լուսաբանում չէր ստացել: Փաստական հարուստ նյութի հիման վրա հեղինակը քննարկում և լուսաբանում է գյուղում գործող քաղաքական ու հասարակական (կուսակցական, սովետական, կոմերիտական, արհմիութենական) կազմակերպությունների կատարած մեծ աշխատանքը, ցույց է տալիս աշխատավոր գյուղացիության հասարակական-քաղաքական ակտիվության աճը, նրա ջերմ վերաբերմունքը դեպի սովետական իշխանությունը:

Կապիտալիզմից սոցիալիզմին անցումը կատարվել է դասակարգային երկարատև ու սուր պայքարի պայմաններում: Այդ պայքարի հարցերին ևս մեծ տեղ է հատկացվել աշխատության մեջ:

Չնայած մեր պատմագրությունը զգալի նվաճումներ ունի կուլտուրական հեղափոխության հարցերի ուսումնասիրության բնագավառում, այնուամենայնիվ, 20-ական թվականների հայկական գյուղում ծավալված կուլտուրական մեծ շինարարության պատմությունը առանձին չի հետազոտվել: Հեղինակը հատուկ պարագրաֆ է հատկացրել այդ հարցին:

Գրքի վերջին գլուխը վերաբերում է գյուղատնտեսության կոլեկտիվացմանը (լենինյան կոոպերատիվ պլանը, գյուղատնտեսական կոոպերացիայի զարգացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացման սկիզբը): Սրանք մեր պատմագրության մեջ համեմատաբար լավ ուսումնասիրված հարցեր են, որոնց քննարկումը հեղինակի կողմից ավելի է ամբողջացրել և հարստացրել պրոբլեմի մշակումը: Ընդ որում, այստեղ նույնպես Վ. Ղազախեցյանն ունի նոր հարցադրումներ ու տեսակետներ:

Աշխատությունը զերծ չէ թերություններից: Նշենք դրանցից մի քանիսը: Աշխատավոր գյուղացիության սոցիալական ազատագրումն ու նրա արմատական վերափոխումը, նոր կյանքի կառուցումը տեղի են ունեցել բանվոր դասակարգի ղեկավարությամբ ու օգնությամբ, այսինքն այդ երկու աշխատավոր դասակարգերի դաշինքի ուժով: Սակայն, որքան էլ տարօրինակ է, դաշինքի հարցերը անհրաժեշտ տեղ չեն գտել աշխատության մեջ: Հեղինակն ավելի մեծ տեղ պետք է հատկացներ նաև կուլտուրական հեղափոխությանը, որը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, համարվում էր գյուղացիության սոցիալիստական վերափոխման վճռական պայմաններից մեկը:

Գրքում կան անհաջող ձևակերպումներ, որոնք կարող են սխալ հետևությունների հանգեցնել: Այսպես, 31-րդ էջում հեղինակը գրում է. «Ռուսաստանի գյուղացիության կողմից պաշտպանվող հողի սոցիալիզացիայի պահանջը մտցվեց սովետական իշխանության հողային դեկրետի մեջ՝ այն պատճառով, որ դա բխում էր գյուղացիության շահերից»: Ինչպես հայտնի է, հողի սոցիալիզացիայի պահանջը էսէռների ծրագիրն էր, որն իրականում չէր արտահայտում գյուղացիության արմատական շահերը: Բայց այն մտցվեց հողի մասին դեկրետի մեջ միայն այն պատճառով, որ պաշտպանվում էր գյուղացիության կողմից: 18—19-րդ էջերում հեղինակը սոցիալիստական հեղափոխական միջոցառումների բովանդակությունը հանգեցրել է միայն կուլակության ունեզրկմանը: 37-րդ էջում փաստորեն այն միտքն է հայտնվում, որ 20-ական թվականներին մեր երկրում մնացել էին երկու դասակարգեր՝ բանվոր դասակարգը և գյուղացիությունը: Իսկ ի՞նչ եղավ գյուղական բուրժուազիան՝ կուլակությունը, որը որպես դասակարգ լիկվիդացվեց 30-ական թվականներին, համատարած կոլեկտիվացման ժամանակ...

Նշված և այլ կարգի թերությունները ու անճշտությունները մասնակի բնույթ են կրում և, անշուշտ, ստվեր չեն գցում տվյալ աշխատության վրա, որը լուրջ ներդրում է սովետահայ պատմագրության մեջ, սովետական գյուղացիության պատմության գիտական մշակման գործում:

Ս. Ս. ԱՄԻՐՅԱՆ

## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

# Լրագիրը օգնում է, կազմակերպում, ոգևորում

ԼՐԱՑԱՎ ՔԱՋԱՐԱՆԻ՝ Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի կուսկոմիտեի, դիրեկցիայի, արհմիութենական և ԼԿԵՄ կոմիտեների օրգան «Քաջարան» բազմատպաքանակ լրագրի 25 տարին: Լրագրի ավելի քան 1.270 համարները ներկայացնում են մի հերոսական պատմություն՝ պղնձամոլիբդենային կոմբինատի ու Քաջարան քաղաքի կառուցողների, ընդերքի հարստությունները պեղողների, հայրենիքի հզորության ու բարգավաճման համար մաքառող լեռնագործների հերոսական աշխատանքը:

1950 թվական: Նոր քաղաք կառուցող շինարարների ու լեռնագործների բյուրավոր հոգսեր: Ամենուր զգացվում է աշխատող ուժի պակաս, տիրապետում է ձեռքի աշխատանքը, չկան փոխադրամիջոցներ, համապատասխան սարքավորումներ: Դժվարին այդ օրերին լրագիրը քաջալերել, ոգեշնչել է անդուլ աշխատավորին, բացահայտել թերությունները, ցույց տվել դրանց հաղթահարման ուղիները: Քաջարանցիների համար աշխատանքային սխրանքների տարի էր այդ թվականը. շահագործման հանձնվեց ֆլոտացիոն ֆաբրիկան, երկնասլաց երկու լեռները պարզեցին իրար իրենց ձեռքերը, ճոպանուղին միացրեց իրարից 1.500 մետր հեռու գտնվող այդ լեռները...

1951 թվականի նոյեմբերի 29-ին, Հայաստանում սովետական կարգերի հաստատման տարելիցին, Քաջարանի կոմբինատը երկրին տվեց մոլիբդենի բարձրորակ խտանյութի առաջին կիլոգրամները:

«Քաջարան»-ի էջերում տպագրվել են ոգեշնչող հոդվածներ, գողտրիկ ակնարկներ ու բանաստեղծություններ՝ նվիրված հանքագործների քաղաքը կառուցողներին:

Հրապարակումների միջոցով լրագիրը բարձրացրել է լեռնագործ կոմունիստների պատասխանատվությունը, օգնել՝ մշակելու գիտատեխնիկական նորանոր պրոբլեմներ, իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը, ավելացնելու պղնձի ու մոլիբդենի խտանյութի թողարկումը: Թերթը հրապարակել է հոդվածներ կոմբինատի բազմազգ կոլեկտիվի գյուտարարական ու նորարարական լավագույն աշխատանքների, հատկապես հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատորներ Մարգար Բաղլանյանի, Դարվին Հասրաթյանի, Սուրեն Վարդանյանցի, Հայկ Պողոսյանի, Երվանդ Գևորգյանի, Իվան Մերոշնիկովի, Դիմիտրի Պիվինի, Ալյոշա Գևորգյանի, Զինաիդա Կոշկինայի, Օլյա Դոլգունովայի, Եբեմ Գևորգյանի, տեխնիկական գիտությունների թեկնածուներ, կոմբինատի նախկին դիրեկտոր Ֆրունզե Պետրոսյանի, այժմյան դիրեկտոր Համլետ Ոսկանյանի, գլխավոր ինժեներ Բորիկ Մկրտչյանի և շատ ուրիշների մասին, որոնց առաջարկները կոմբինատին բերել են միլիոնավոր ռուբլիների օգուտ:

Արտադրության վերելքին մեծ չափով օգնում են լրագրի հրապարակումները, մշտական հանդիպումները ակտիվ թղթակիցների հետ, խորհրդակցություններն ու քննարկումները, ընթերցողների կոնֆերանսները, նրանց առաջարկություններին ժամանակին ընթացք տալը:

Լեռնագործների հերոսական աշխատանքը պսակվեց հաղթանակով: 1957 թ. համամիութենական մրցությունում կոմբինատն առաջին անգամ հաղթող ճանաչվեց և արժանացավ երկրորդ մրցանակի:

1959—1966 թթ. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթերորդ հնգամյակում կոմբինատի արտադրանքն ավելացավ 3,5 անգամ. նախատեսված ժամկետից շուտ պլանները կատարելու համար Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատը 1966 թ. մայիսի 16-ին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով, արժանացավ Լենինի շքանշանի: Հայաստանի ծանր արդյունաբերության առաջին ձեռնարկությունն էր այն, որ նվաճեց այդ բարձր պարգևը: Լրագիրն այս կարևոր իրադարձությանը նվիրեց հատուկ համարներ, որոնք նրա 25-ամյա համալիրի լավագույն էջերից են:

Կոմբինատի առաջավոր լեռնագործներից շատերն են թղթակցում լրագրին: «Քաջարանի» էջերում հաճախ տպագրվում են պատվավոր լեռնագործ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, էքսկավատորավար Սերգեյ Հառությունյանի ոգեշունչ բանաստեղծություններն ու ակնարկները, հետաքրքրական հոդվածներն ու ինֆորմացիաները: Ավելի քան քսան տարի նա ղեկավարում է «Քաջարան» թերթի թըղթակցական կետը: Ժուռնալիստ-էքսկավատորավարը միաժամանակ հասարակական ակտիվ աշխատող է, Քաջարանի քաղաքային սովետի դեպուտատ, լեռնագործների մշակույթի պալատի վարչության անդամ: Որպես ՍՍՀՄ ժուռնալիստների միության վարչության անդամ, Սերգեյ Հարությունյանը մեծ երախտիք ունի Քաջարանի կոմբինատի արտադրամասերի ըստորին մամուլի կազմակերպման գործում: Քաջարանի լեռնագործների մասին նրա գրած թղթակցություններին հաճախակի հանդիպում ենք ո՛չ միայն շրջանային ու հանրապետական, այլև միութենական մամուլում և եղբայրական մյուս հանրապետությունների թերթերում ու ամսագրերում:

«ՔԱՋԱՐԱՆ»-ը կարևոր դեր է խաղում աշխատավորներին կոմունիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում: Լրագիրը հետևողականորեն պրոպագանդել է լեռնագործների հայրենասիրական նախաձեռնությունները, ներկայացրել սոցիալիստական մրցության արդյունքները, մասսայականացրել առաջավորների փորձը, արտադրապրոցեսների կատարելագործման, ինտենսիվացման ու ավտոմատացման ասպարեզում ձեռք բերված հաջողությունները:

Թերթն ընթերցողներին հանգամանորեն ծանոթացրել է սոցիալիստական աշխատանքի հերոս, էքսկավատորավար Արտաշես Պետրոսյանի, Լենինի շքանշանակիր ֆլոտատոր Պայծառ Աբրահամյանի, խորփորման հաստոցավարներ Էդվարդ Համբարձումյանի, Վազգեն Ավետիսյանի, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Արկադի Ոսկանյանի, ավտովարորդներ Օնիկ Ավետիսյանի, Վազգեն Հակոբյանի, էքսկավատորավարներ Արծրուն Առաքելյանի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Պավլուշա Դավթյանի և այլ կոմունիստների կյանքին ու աշխատանքային գործունեությանը, նպատակ ունենալով նրանց օրինակով դաստիարակել կոլեկտիվի անդամներին:

Կոլեկտիվի բարեխիղճ աշխատանքն արժանացել է կուսակցության և կառավարության արժանի գնահատականին: Ավելի քան 35 անգամ կոմբինատը հաղթող է ճանաչվել և իր ձեռքում պահել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի, ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշները:

Լրագիրն առավել ուշադրություն է նվիրել իններորդ հնգամյա պլանի կատարման ընթացքի լուսաբանմանը, համակողմանի ներկայացրել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման համար ծավալված ամենօրյա պայքարը:

Կոմբինատի կոլեկտիվից 48 բանվորներ հնգամյակն ավարտել են երկուսուկես տարում, 375 բանվոր-լեռնագործներ աշխատում են տասներորդ հնգամյակի երկրորդ տարվա հաշվին: Կոմբինատի կոլեկտիվը, որին երկար տարիներ ղեկավարում էր տեխնիկական գիտությունների թեկնածու, ՍՄԿԿ XXIV համագումարի պատգամավոր Ֆրունզե Պետրոսյանը (այժմ Հայաստանի գունավոր մետալուրգիայի վարչության պետ) հնգամյակի պլան-պարտավորությունները կատարել է բարձր ցուցանիշներով և 15 անգամ հաղթող ճանաչվել համամիութենական ու հանրապետական սոցիալիստական մրցությունում:

Լրագրի այս տարվա համարներում աչքի են զարնում ՍՄԿԿ XXV համագումարի պատվին ծավալված մրցության վերաբերյալ նյութերը: Ի պատիվ համագումարի՝ աշխատանքային հերթափոխի կանգնած կոմբինատի կոլեկտիվն ընդունել է լրացուցիչ պարտավորություններ, կոչ արել շրջանի արդյունաբերական, շինարարական ձեռնարկությունների կոլեկտիվներին՝ ամեն ինչ անել համագումարն արժանի գործերով դիմավորելու համար:

«Քաջարանը» պարբերաբար անդրադառնում է կոմբինատի կոլեկտիվի մրցությանը Կոլա թերակղզու «Նիկել» արտադրամիավորման, Կաբարդինա-Բալկարական Ինքնավար Հանրապետության Տրնաուզի լեռնամետալուրգիական, Ադրբեջանական ՍՍՀ Դաշքեսանի լեռնահարստացուցիչ, Ալավերդու և Ղափանի պղնձահանքային կոմբինատների կոլեկտիվների հետ, հրապարակում դրա արդյունքները:

Աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-մասսայական ու գաղափարական աշխատանքների պատշաճ կազմակերպումը թերթի մշտական մտահոգության առարկան է: Նրա էջերում այդ թեմաներով պարբերաբար հանդես են եկել կոմբինատի ղեկավարները, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների քարտուղարները, քաղուսուցման խմբակների պրոպագանդիստները, կոմբինատի տնտեսագիտական երկամյա համալսարանի

ունկնդիրներն ու դասախոսները: Լրագիրը մեծ տեղ է տալիս աշխատավորների կուլտուրական հանգստի կազմակերպմանը, աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավմանը, այդ գործում նկատվող թերությունների բացահայտմանն ու վերացմանը: Գրական երեկոների, աշխատանքի վետերանների հետ կազմակերպված հանդիպումների, մեծարման հանդիսությունների ներկայացմամբ լրագիրն արտացոլում է քաղաքում ձեռնարկվող կուլտուրական միջոցառումները: Թերթի էջերում պատշաճ տեղ ունեն Հոգատարություն սովորող երիտասարդների նկատմամբ, Ծնողական համալսարանի աշխատանքը, Ամեն ինչ երեխաների համար, Ինչպես են ձեզ սպասարկում վերտառությունները:

ԱՅՍ ՕՐԵՐԻՆ, ԵՐԲ համաժողովրդական պայքար է ծավալվել ՍՄԿԿ XXV և Հայաստանի կոմկուսի XXVI համագումարներն աշխատանքային փայլուն հաջողություններով դիմավորելու համար, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի վաստակաշատ կոլեկտիվը նս լարել է ուժերը՝ առաջադրված խնդիրները պատվով կատարելու, իր աշխատանքային կենսագրությունը հայրենանվեր գործերով հարստացնելու նպատակով: Մեծ են և կոմբինատի բազմատպաքանակ լրագրի (խմբագիր՝ Թ. Հասրաթյան) անելիքներն այս ասպարեզում:

Այս հնգամյակը որակի հնգամյակ է. ամենքը ամենուր պետք է ջանան հասնել բարձր որակի: Որակը, ամեն լավագույնը կյանքում ստեղծու է մարդը, նոր մարդը, որի ձևավորման պրոցես ականատեսներն ենք մենք: Ահա ինչու լրագ րը չպետք է սահմանափակվի մարդուն միայ աշխատանքում ներկայացնելով. ընթերցողի հետաքրքրում է մարդը տարբեր հանգամանք ներում, տարբեր իրադրություններում— աշխ տանքում, կոլեկտիվում, ընտանիքում, հասար կական վայրում, ընկերական հարաբերութ ներում:

Քսանհինգամյա Քաջարանն այժմ հս ամենատարբեր բնագավառներում ս մտավորականներով, արտադրության ս ված բանվորական կադրերով: Եթե լեռն ների լեզվով արտահայտվենք, ապա դա այն հրաշալի հանքանյութն է, որից լրագիրը պարտավոր է կռելիրթղթակցական ակտիվը: Տասներորդ հնգամյակը Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվի առջև նոր, է՛լ ավելի մեծ ու պատասխանատու խնդիրներ է դրել:

Ընդլայնելով հեղինակային ակտիվը, կատարելագործելով ստեղծագործական կոլեկտիվի պրոֆեսիոնալ վարպետությունը, «Քաջարանը» պատվով կկատարի իր դերը այդ խնդիրների իրականացման ասպարեզում:

«Քաջարանին» ցանկանք նորանոր հաջողություններ, առավել բեղմնավոր ու բազմաբովանդակ գործունեություն:

Ա. Հ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ



Адрес редакции: 375033 Ереван- 33. Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 05417 Պատվեր 2823 Թղթի չափսը 70×108 1/16, Տիրաժ 14.000 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 19/I-1976 թ.

ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. ԼՈՒՆԱՉԱՐՍԿԻ— Պատմվածքներ Լենինի մասին: *Մ.*, «Политиздат», *1975:*

Գ. Զ. ՄՈՒԽԻՆԱ— Սոցիալիստական հեղափոխությունը և պետությունը: Պրոլետարիատի դիկտատուրայի պետության հարցի մշակումը Վ. Ի. Լենինի կողմից Հոկտեմբերի և նրա նվաճումների ամրապնդման համար մղած պայքարի շրջանում. *1917 թ. մարտից 1918 թ. մարտ: Մ.*, «Мысль», *հրատ., 1975:*

Ն. Ի. ԱԶԱՐՈՎ— Վ. Ի. Լենինը քաղաքականության՝ որպես հասարակական երևույթի մասին: *2-րդ լրացվ. հրատ.: Մ.*, «Высшая школа», *հրատ., 1975:*

Ե. Գ. ԺՈՒԿՈՎԱ— Լենինյան «Искра»-ի ինտերնացիոնալ կապերը: *Մ.*, «Знание» *հրատ., 1975:*

Վ. Ի. ԶՈՒԵՎ— Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը. միասնության տնտեսական և քաղաքական ասպեկտները: *Մ.*, «Межд. отнош.» *հրատ., 1975:*

Ս. Մ. ՅԱԼԿՈՎԻՉ— Ռուսաստանի և Լեհաստանի պրոլետարիատը համատեղ հեղափոխական պայքարում *(1907—1912): Մ.*, «Наука» *հրատ., 1975:*

Ռ. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— ՍՄԿԿ արտաքին քաղաքականության դասակարգային բնույթը: *Մ.*, «Знание» *հրատ., 1975:*

Ա. Ն. ԼԵՈՆՏԵՎ— Գործունեություն: Գիտակցություն: Անձնավորություն: *Մ.*, «Политиздат», *1975:*

Զ. ՊՈՒԽՈՎԱ— Սոցմրցությունը բանվորական կոլեկտիվում: *Մ.*, «Профиздат», *1975:*

Ա. Ի. ՌՈԳՈՎ— Հանուն սոցիալիզմի էկոնոմիկայի ղեկավարումը ՍՄԿԿ կողմից: *Մ.*, «Политиздат», *1975:*

Ա. ԳՐԵՉԿՈ— Կարպատների վրայով: *«Հայաստան» հրատ., 1975:*

Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Մեծ Հայրենականի ճամփաներով: *«Հայաստան» հրատ., 1975:*

Գ. ՍԱՐԿԻՍՈՎ— Հանցագործության կանխման սոցիալական սիստեմը *(ռուսերեն): «Հայաստան» հրատ., 1975:*

Քաղաքատնտեսություն: *Արտադրության կապիտալիստական եղանակ: Դասագիրք բուհերի համար: «Հայաստան» հրատ., 1975:*

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Սովետական Հայաստանի տեղական արդյունաբերությունը: *«Հայաստան» հրատ., 1975:*

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ, Ս. ԳԱԼՍՏՅԱՆ, Թ. ՂԱՐԱԳՅՈՒԼՅԱՆ— Լեզվաբանական բառարան: *Ե., ԳԱ հրատ., 1975:*

Ա. ԱՐՇԱՐՈՒՆԻ— Ձեռագրերի աշխարհում: *«Հայաստան» հրատ., 1975:*

Ավ. Իսահակյանը Ալ. Բլոկի թարգմանությամբ *(հայերեն և ռուսերեն): «Հայաստան» հրատ., 1975:*

Հ. ԱԲԵՂՅԱՆ— Իսահակյանը և ժողովրդական էպոսը: *Ե., ԳԱ հրատ., 1975:*

Սոցիալիստական արտադրության կառավարումը *(տեսության և պրակտիկայի հարցեր): Ղեկավար կառավարչական կադրերի համար: 2-րդ լրացված հրատ.: Մ.*, «Экономика» *հրատ., 1975:*

ՍՍՀՄ-ում արդյունաբերական արտադրանքի վաճառքի կազմակերպումն ու պլանավորումը: *Մ.*, «Экономика» *հրատ., 1975:*

Կ. Մ. ՎԱՐՇԱՎՍԿԻ— Գիտաշխատողների աշխատանքի կազմակերպումը: *Մ.*, «Экономика» *հրատ., 1975:*

Վ. Ս. ԿՈՒՐՈՏՉԵՆԿՈ— Նյութա-տեխնիկական մատակարարումը տնտեսավարման նոր պայմաններում: *Մ.*, «Экономика» *հրատ., 1975:*

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԶՈԴՈՂ ՀՍԿԱՆ

*Խարկովի Կիրովի անվան տուրբինների գործարանում բանում է ծրագրային կառավարմամբ աշխատող էլեկտրազոդիչ նոր սարքավորում, որի վրա կարելի է մշակել 100 տոննանոց դետալներ: Այն խոշորագույնն է երկրում:*

*Էլեկտրոնիկայով ղեկավարվող զոդող ավտոմատի էլեկտրոդները մեծ ճշգրտությամբ աշխատում են նույնիսկ երեք սանտիմետրից պակաս լայնության փորակներում:*

## ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ՍՈՍԻՆՁ

*Սոֆիայում ստեղծվել է ոչ թունավոր ցիանակրիլային սոսինձ, որը բուժում է այրվածքներ, կանխում ատամների կարիեսը, կտրվածքների ժամանակ դադարեցնում արյունահոսությունը: Վիրաբույժներն այն այժմ օգտագործում են թոքերի և լյարդի բարդ վիրահատությունների ժամանակ: Այդ սոսինձն սկսել են կիրառել նաև սարքաշինության մեջ, օպտիկական գործարաններում, ռադիոէլեկտրոնիկական լաբորատորիաներում: Այն սոսնձում է ապակյա, ռետինե, կերամիկական և կիսահաղորդիչ նյութեր:*

## ՏԱՔԱՑՎՈՂ ՄԱՅԹԵՐ

*Սառցակալած մայթերն ու ճանապարհները հավասարապես վտանգավոր են և՛ հետիոտնի, և՛ մեքենաների համար: Հաճախ սառած փողոցներում լցնում են աղախառն ավազ, որից տուժում է բուսականությունը, ժանգոտում են մեքենաները: Այժմ Մոսկվայում տաքացվում են մայթերը: Տաքացումը կատարվում է կա՛մ մոտակա շենքերի ջերմացանցերում տաքացված օդի, կա՛մ ջեռուցող էլեմենտից ստացված հոսանքի միջոցով: Նոր մեթոդի արդյունավետությունն ակնհայտ է:*

## ԲԺՇԿԻ ՕԳՆԱԿԱՆԸ

*Հունգարական «Մեդիկոր» ֆիրման թողարկում է էլեկտրոնային դյուրակիր սարք, այսպես կոչված՝ «բժշկի օգնական», որը կարելի է տեղավորել ոչ մեծ ճամպրուկի մեջ: Այն հնարավորություն է ընձեռում բժշկին, ցան ցած պայմաններում— տանը, գնացք[illegible], ավտոբուսում, ինքնաթիռում, շտապ ախտորոշելու հիվանդությունը:*

*Այդ ախտորոշիչի օգնությամբ բժիշկն առանց լաբորատորիայի և բժշկական միջին անձնակազմի օգնության շատ կարճ ժամանակամիջոցում կարողանում է ստանալ և վերծանել էլեկտրակարդիոգրաման, էլեկտրաէնցեֆալոգրաման, չափել արյան ճնշումը, մարմնի ցանկացած մասի ջերմաստիճանը, վերլուծել շնչառական օրգանների աշխատանքը, կատարել արյան անալիզ և անցկացնել մի շարք անհրաժեշտ այլ հետազոտություններ: Երբ հետազոտվող պարամետրերը շեղվում են սահմանված նորմայից, ապա սարքն անմիջապես դրա վրա է հրավիրում բժշկի ուշադրությունը:*

## ԻՆՔՆԱԹԱՓ ՊԼԱՏՖՈՐՄ

*Բռնոյի միջազգային շինարարական տոնավաճառում ոսկե մեդալի են արժանացել չեխ վագոնաշինարարների՝ սովետական մասնագետների համագործակցությամբ ստեղծված երկաթուղային ինքնաթափ պլատֆորմները. դրանք ունեն 105 տոննա բեռնատարողություն և շատ հարմար են կլիմայական ցանկացած պայմաններում լեռնային հանքատեսակների փոխադրման համար:*

## ԼԱԶԵՐԱՅԻՆ ՀԵՐՁԱԴԱՆԱԿ

*Ամերիկյան «Լեյզեր ինդաստրիզ» ֆիրման սկսել է թողարկել «Շարպլան—791» վիրալազերային սարքը, որն օգնում է վիրաբույժներին՝ վիրահատություններ կատարել՝ արյան նվազագույն կորստով (արյունահոսությունը պակասում է 89 տոկոսով): Սարքն աշխատում է հերձադանակի նման՝ զուգակցված այրող բաղադրամասով: Քանի որ ստեղծված ջերմությունն ունի նաև ախտահանիչ ազդեցություն, սարքի կիրառումը նվազեցնում է նաև ինֆեկցիայի անցման հնարավորությունը:*